*ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ*

# ՊԱՏՄԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ

Ի ԼՈՅՍ ԱԾԵԱԼ

ԲԱՂԴԱՏՈՒԹԵԱՄԲ ՁԵՌԱԳՐԱՑ

*Ի ՁԵՌՆ*

**Գ. ՏԷՐ-ՄԿՐՏՉԵԱՆ, ՍՏ. ՄԱԼԽԱՍԵԱՆՑ, ՍՏ. ԿԱՆԱՅԵԱՆՑ, Մ. ԱԲԵՂԵԱՆ,**
**Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ ԵՒ ԱՅԼՈՑ**

ԸՆԴ ՎԵՐԱԿԱՑՈՒԹԵԱՄԲ

Ս Տ. Մ Ա Լ Խ Ա Ս Ե Ա Ն Ց



**ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ. ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ.**

## ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ



*ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ՄԱՄՆԱԺՈՂՈՎ.*

**ԷՋՄԻԱԾԻՆ—ՏՓՂԻՍ.**

ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ

Մ. ԱԲԵՂԵԱՆ ԵՒ Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ.

ԾԱԽԻՒՔ ՏԵԱՌՆ ՍՈՒՔԻԱՍԱՑ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՊԱՐԶԵԱՆՑ.

Տ Փ Ղ Ի Ս
ԱՐԱԳԱՏԻՊ ՄՆԱՑԱԿԱՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆՑԻ
ՊՈՒՇԿԻՆԵԱՆ ՓՈՂՈՑ, 3.
1913.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

## I.

## Մ. ԽՈՐԵՆԱՑՒՈՅ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՏՊԱԳԻՐՆԵՐՆ ՈՒ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԸ.

*1.* Առաջին տպագիր, Ամստերդամ, 1695 թ.=*t*: *2.* Երկրորդ տպագիր, Լոնդոն, 1736 թ.—*w*: Թոմաս Վանանդեցու բաղդատած ընթերցուածները=*w'*: Երրորդ տպագիր, Վենետիկ, 1752 թ. *3.* Չորրորդ տպագիր, Վենետիկ, 1827: Հինգերորդ տպագիր, հայ-ֆրանս. հրատ., Վենետիկ 1841: Վեցերորդ տպագիր, հայ-ֆրանս., Պարիզ 1845. Եօթներորդ տպագիր, Վենետիկ, 1843: Վենետկի «վեց անթերի օրինակներից» բաղդատութիւնը: *4.* Ութերորդ տպ., Վենետիկ, 1865: Իններորդ տպ., Թիֆլիս, 1881 թ.=Վ: *5.* Տասներորդ տպ., Վենետիկ 1881 թ.=*x*: Տասնումեկերորդ տպ., Թիֆլիս, 1910 թ.: *6.* Տպագիրների նշանակութիւնը ձեռագրական տեսակէտից: *7.* Կարենեանցի բաղդատութիւնները երկու ձեռագրի, Թիֆլիս, 1858 թ.: Երկրորդ ձեռագիրը=կ²: Ն. Մառի եւ Գ. Տ.-Մկրտչեանի բաղդատութիւնը:

*8.* Խորենացու օրինակների երկու մեծ խմբերը. Ա=Ամստերդամի օրինակի խումբ. Տ=Վենետկի, սովորական Տպագրի խումբ: *9.* Խ=Խառնուրդ խմբի օրինակներ:

*10. Ա խմբի Ձեռագրներ*: *a* Ձ-ր: *11. b* Ձ-ր: *12. c* Ձ-ր: *13. d* Ձ-ր: *14. e.* Ձ-ր: *15. f* Ձ-ր: *16.* Լայպցիգի Ձ-ր=Լ: *17.* Ա խմբի ուրիշ օրինակներ: *18. Տ խմբի Ձեռագրներ*: *n* Ձ-ր: *19. o* Ձ-ր: *20. p* Ձ-ր: *21. q* Ձ-ր. *22 r* Ձ-ր: *23. s* Ձ-ր: *24.* Տ խմբի ուրիշ օրինակներ: *25. Խ. խմբի Ձեռագրներ*: *g* Ձ-ր: *26. h* Ձ-ր: *27. i* Ձ-ր: *28. k* Ձ-ր: *29. l* հնագոյն Ձ-ր, Խ խմբի օրինակների մայրը: *30. m* Ձ-ր. *31.* կ¹ Ձ-ր: *32. y* Ձ-ր: *33.* Աղթամարի Ձ-ր=Հ. *34.* Խ խմբին պատկանող ուրիշ օրինակներ: Պետերբուրգի Ձ-ր=*z*. *35.* Խ խմբի Ձ-ների ծագումը: *36.* Վենետկի այժմեան հինգ Ձ-ները: *37.* Վենետկի բաղդատուած օրինակները, երկուսն' Ա խմբի, մէկը' Խ խմբի: 1843-ի տպագրի մէջ յիշուած երեք, եւ յետագայում ձեռք բերուած երկու Ձ-ները: *38.* Վենետկի այժմեան հինգ Ձ-ների ո՛ր խմբին պատկանելը: *39.* Երկրորդական խմբակցութիւններ: Խմբակցութեան փորձեր: *40.* Ա խմբի Ձ-ների երկրորդական խմբակցութեան պատկեր: *41.* Տ խմբի Ձ-ների երկրորդական խմբակցութիւն:

*42.* Բոլոր օրինակների խմբակցութեան ընդհանուր պատկերը: *43.* Ա եւ Տ խմբերի ծագման խնդիրը: Յովհաննէս կաթողիկոսի ձեռքին եղած օրինակը: *44.* Ուրիշ Ձ-ներ: *45.* Մեր համեմատութեան եղանակն եւ ուրիշ հանգամանքներ:

# ՏՊԱԳԻՐՆԵՐ ԵՒ ՏՊԱԳՐՈՒԱԾ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՆԵՐ

1. *Մովսէս Խորենացու Հայոց Պատմութեան առաջին տպագրութիւնն եղել է Ամստերդամում 1695 թուին։ Այս հրատարակութիւնն ունի հետեւեալ ճակատը. «Ազգաբանութիւն տոհմին Յաբեթեան յօրինեցեալ ի Մովսիսէ Խորենացւոյ յեռամեծ վարդապետէ և յոգներախտ Քերթողահօրէ, ի խնդրոյ Պայազատապետի Սահակայ Բագրատունւոյ... ի լոյս ածեալ տպիւք և ծախիւք Թովմայ Վանանդեցւոյ, վեհափայլի եպիսկոպոսի և բազմաջան վարդապետի։ Ի հայրապետութեան սրբոյ Էջմիածնի Տեառն Նահապետի ամենայն Հայոց կաթուղիկոսի։ Յամի մարդեղութեան բանին 1695, Յամստէլօդամի»։*

*Յառաջաբանից, որ կոչւում է «Առ ամենայն ընթերցողս Հայաստանեայց», կարևոր եմ համարում դնել հետեւեալը. «Բազմավարժից և հմտագունից հարց և եղբարց ուսումնասիրաց բացայայտութիւն սակաւուք սակս առաջի կացելոյ գրոյս առնս մեծի Մօսէսի Խորենացւոյ, զորոյ զգտանելն ամենայն ուրեք սուղ և պակաս... ուստի և իմ նայելով յայսպիսի աղէտ անբերելի բարուք վարկայ տպագրել թուղթ նուագիւք, վասն անձեռնտու գոլոյ տեղւոյս... Ուստի ես անպիտան... Թովմաս ծառայ ծառայից Աստուծոյ, ի վայելուչ քաղաքէ Վանանդու Գողթնեաց, ձեռնամուխ եղեալ տպեցի զգեղեցկաշար պատմութիւնս»...*

*Յառաջաբանի վերջում կայ հետեւեալ ոտանաւորը.*

*«Ընծայէ ծաղիկ բերկրութեան*
*Ցանկալի ազգին Արամեան*
*Եռամեծն Վանանդեան*
*Թովմաս Նուրիջանեան։*
*Սորին մօրեղբօր որդի*
*Ես Մատթէոս շարեցի»։*

*Անվերնագիր մի վերջաբանի մէջ տպուած է։ «Ես... Թովմաս եպիսկոպոս, ի գաւառէ Գողթնեաց ի մանէ Վանանդու, տպագրական հրամանաւորութեամբ անցի ի կալուածս Եւրոպէու, և մեծաջան աշխատութեամբ փութացայ ժամանել ի գեղեցկագիր... քաղաքն յԱմստրդամ, առ ի յօրինել և հոգալ զրոմ գործիան տպագրութեան և գտախտակն պղնձեաց վասն փորագրելոյ զգիրս համայնց գաւառաց, զորս երկամբք բազմօք և յոգնակի ծախիւք կատարեցաք ընդ Մատթէոսի, որ է որդի եղբօր մօր իմոյ, զոր նախ յղեցի ի նոյն քաղաք, սակս պատրաստելոյ զպարագայս առաջիկայ գործոց մերոց, և զկնի կազմելոյ և յօրինելոյ զոր պարտն էր և պատեհ, հաճեցայ տպել զՎիպագրութիւն բազմերախտ առն Մօսիսի Քերթողահօրն, իբր առաջին պտուղ երախտեաց իմոց աշխատութեանց, և իմովք ծախիւք... Եթէ գտանիցի ի սմա սխալումն ինչ, ներել մաղթեմ. զի ոչ հաւանութեամբ մերով եղան այնո-*

քիկ, այլ յօրինակէն լեալ ընկալջիք. զի զմի՝ միայն ունէաք օրինակ, եւ այն նօտր գրով եւ. վասն որոյ կարեկցութեան սիրով հայցեմ ներել մեզ... Նաև յիշել մաղթեմ զհարազատ և զձեռնասուն գործակալս իմ զՄատթէոս զկատարեալ հմուտն յարուեստ տպագրութեան, որ է որդի եղբօր մօր իմոյ, և զեղբօր որդի իմ զՂուկաս փիլիսոփա, որ է վարժ զանազան լեզուաց»։

Այս հրատարակութիւնը, ինչպէս մէջ բերած հատուածից երևում է, կատարուել է մի նոտրագիր օրինակից, որի թուականը չի յիշատակւում։ Հրատարակիչը յայտնում է, թէ իր կողմից փոփոխութիւն չէ մտցրել բնագրի մէջ. և մեր կատարած մանրամասն համեմատութիւնը ուրիշ օրինակների հետ՝ ցոյց է տալիս, որ Խորենացու անդրանիկ տպագրութիւնը, որ և մեր հին պատմագիրների տպագրութեան մէջ անդրանիկն է՝ եղել է ճշտութեամբ։ Յատուկ անունների մէջ սակայն, ինչպէս երևում է, երբեմն չէ հետևած ձեռագրին. Տաչիտոս, Լիչինոս, Զիչիլիա, Զէլէնտինոս, Եփեսոս, Կեփաղիոն, Հեփեստոս, Դիոկլեցիանոս, Սամիրամ և այլն ձևերն անշուշտ ձեռագրից չեն ծագում։ Բացի այդ՝ պէտք է կարծել, որ տպագրողը որոշ փոփոխութիւններ մտցրել է նաև գլխակարգութիւնների մէջ։ Ա. գրքի Ա. գլուխը, որ վերնագիր ունի «Մովսէս Խորենացի Իսահակայ Բագրատունւոյ խնդալ», գլխակարգութիւնից դուրս է ձգած։ Բ. գլուխը վերնագիր ունի՝ «Հատոր առաջին Պրակ ա. 1». Գ. գլխի համար դրած է «Պրակ բ. 2», և այսպէս շարունակաբար։ Նոյն ձևով «Պրակ ա. 1, Պրակ բ. 2» և այլն, վերնագիրներ ունին նաև Բ. և Գ. գրքերի գլուխները։

Ամբողջ գիրքը չունի գլխակարգութեան ցանկերը. միայն գրքի վերջում, անվերնագիր յիշատակարանից առաջ, դրուած է, երևի, արտագրողի յօրինած, մի այբբենական «Համառօտ ցանկ և ցուցակ իրաց գլխաւորաց, որք պարունակին յայսմ գրքոջ Պատմութեան։ Թիւքն ցանկոյս զթղթահամարն ցուցանեն»։

Ամեն մի հատորի սկզբում կան մի մի խորհրդաւոր պատկերներ, որոնք ձեռագրից չեն ծագում հաւատաբար. բայց կան ձեռագիրներ, որոնք նոյն տեղում ունին պատկերներ։ Գրքի նկարագրի համար կարևոր է յիշատակել և այն, որ ճակատից յետոյ յաջորդ թերթի առաջին երեսին կայ քսան տող ութ վանկանի ոտանաւոր Մ. Խորենացու և իր Պատմութեան վրայ, «Թորգոմազնեայս այր պատուական» և այլն։ Նոյնպիսի ոտանաւորներ կան նաև Բ. հատորի սկզբում (12 տող) և վերջում (10 տող) և Գ. հատորի վերջում։ Այս ոտանաւորները, բացի առաջինից, կարող են և հրատարակչինը չլինել, այլ ձեռագրից ծագած լինել թեթև փոփոխութիւններով։ Վերջին ոտանաւորի համար հաստատ կարելի է ասել, որ ձեռագրից է ծագում, քանի որ նոյնը անփոփոխ եղել է և Կարենեանի ունեցած երկրորդ ձեռագրի մէջ (տես ներքևը § 7)։ Այդ ոտանաւորն է—

«Երրեակ հատածք սոյն մատենի վիպագրութեան
է Մովսիսի Խորենացւոյ գերալրական,
Յորս և պատմէ զգործոց քաջաց մեր նախնական
առ ի Նոյէ սերունդք զարմից Յաբեթական։

*Որք տէրութեամբ ընկին Հայկայ գաշխարհս կալան,*
*մինչև ց'Արշակ արքայ հզօր Պարթևական.*
*Որդի ըղհայր փոխանակեալ հետևական,*
*բարեբախտեալ թողին զանուն յաղթողական»։*

Այս առաջին տպագրութիւնը ներկայ հրատարակութեան ծանօթութիւնների մէջ նշանակուած է լ տառով։

2. Երկրորդ տպագրութիւնն եղել է Վիստոն եղբայրների ձեռով 1736 թուին Լոնդոնում։ Վերնագիրն է՝ «Մովսիսի Խորենացւոյ պատմութիւն և աշխարհագրութիւն»։ Պատմութիւնից յետոյ տպուած է. «Աշխարհացոյց Մովսիսի Խորենացւոյ» և ապա, իբրև յաւելուած, «Թուղթ Կորիւնթացւոց առ Պօղոս առաքեալն»։ Երեքն էլ հայերէն բնագրի հետ զոյգ ունին լատիներէն թարգմանութիւնները, բազմաթիւ ծանօթութիւններով։

Հայոց պատմութեան այս հրատարակութիւնն արտատպութիւն է Ամստերդամի տպագրից, որն այս երկրորդ հրատարակիչները սխալաշատ են համարում, մէկ՝ նրա համար, որ խօսքի կազմութիւնը յաճախ այնպիսի է, որ անհեթեթութիւններ է առաջ բերում, մէկէլ՝ որ արենլագէտ Լա-Կրոզը հաղորդել է նրանց, թէ ինքը բնագիրը բաղդատելով Լայպցիգի գրադարանում գտնուած մի ձեռագրի հետ՝ մի քանի տարբեր ընթերցուածներ է գտել։ Հրատարակիչները սակայն չեն կարողացել Լա-Կրոզի նկատողութիւններն աչքի առաջ ունենալ և ոչ Լայպցիգի օրինակի տարբեր ընթերցուածները ձեռք բերել։ Այս պակասութիւնը լրացրել է մասամբ Շրեօդերը, հաղորդելով նրանց շատ ուղղումներ, որ Թոմաս Վանանդեցին, իւր Խորենացու հրատարակութիւնից յետոյ, արել է մասամբ, ինչպէս կարծում են, իբրև ենթադրութիւններ, մասամբ օգտուելով մի ուրիշ ձեռագրից։

Թոմաս եպիսկոպոսի նշանակած ընթերցուածներն անհ այս երկրորդ հրատարակիչները մէջ են բերում, իբրև ծանօթութիւն դնելով տակին, կամ թէ այդ ընթերցուածներից օգտւում են բնագիրն ուղղելու համար, և այն ժամանակ Ամստերդամի տպագրի ընթերցուածները դնում են իբրև ծանօթութիւն։ Ձեռագրական տարբեր ընթերցուածները հասնում են մինչև Բ. գրքի ԶԵ, մեր այս հրատարակութեամբ ԶԹ. գլուխը, իսկ Գ. գրքից ընթերցուածներ կան միայն ԿԲ («Ի վարդապետսն, յինքն» եւյլն) գլխի համար։

Երկրորդ տպագրութիւնը մեր այս հրատարակութեան ծանօթութիւնների մէջ նշանակուած է ա տառով, իսկ Թոմաս Վանանդեցու ձեռագրական ընթերցուածները ա[1] ձևով։

Երրորդ տպագրութիւնն եղել է Վենետիկում 1752 թ.։ Այս հրատարակութիւնը մեր ձեռը չի ընկած. ըստ Միհրան Գ.* Տ. Մկրտչեանի (Հայկականք, Վաղարշապատ 1894 եր. 41, նոյն և 1894 թ. «Արարատի» մէջ) արտատպութիւն է 1695 թուի առաջին տպագրութեան։ Հ. Ա. Ղազիկեանի «Հայկական Նոր Մատենագիտութիւն և Հանրագիտարան» գրքից կարելի ենք համարում դնել հետևեալը։ Գրքի վերնագիրն է. «Ազգաբանութիւն տոհմին Յաբեթեան յօրինեալ ի Մովսիսէ Խորենացւոյ Յեսամեծ Վարդապետէ, և Յոգներախտ

Քերթողահօրէ. Ի խնդրոյ Պայազատապետի Սահակայ Բագրատունւոյ։ Տպագրեցեալ երկասիրութեամբ Սարգսի վարդապետի և Արքեպիսկոպոսի Կոստանդնուպօլսեցւոյ... Յամի տեառն 1752, ի մայիսի 12։ Ի Վէնէտիկ...։ Ցառաջաբանի մէջ ասուած է «...Կամեցաք ի միասին տպել և զհամառօտ Աշխարհացոյցն՝ արարեալ... Մովսիսի Խորենացւոյ... Եւ յաղագս չունելոյ մեր աստ զձեռագիր զաղափար, միայն ի Ցամանեւօղամ՝ տպագրեցելոյն օրինակեցաք...»։

3. *Չորրորդ տպագրությունն* եղել է Վենետիկում 1827 թուին, «Մովսէսի Խորենացւոյ պատմութիւն Հայոց» վերնագրով։ Սա Մխիթարեան փոքրադիր տպագրութիւն է, պատկերազարդ ճակատով։ Ազդից իմանում ենք, որ տպագրութիւնը կատարուել է չորս Ձ-րի բաղդատութեամբ (ՉԾԲ, ՌՃԻ, ՌՃԼԲ Թ. և մինը անթուական), հետեւելով «բազմաց» ընթերցուածներին։ Սակայն երբեմն, երբ աղաւաղութեան կասկած է եղել կամ Ձ-ները երկպառակ են եղել՝ հրատարակիչներն հետևել են ընտրութեամբ մի կամ երկու Ձ-րի, միւսների ընթերցուածներից կարևորներն ու պիտանիները զետեղելով գրքի վերջում. (Այլ ընթերցուածք, եր. 557—565)։ Այս տպագրութիւնը ուշ համնելով մեր ձեռքը՝ հնար չունեցանք բաղդատելու միւս տպագրութիւնների հետ և նրա մասին հաշիւ տալու։

*Հինգերորդ տպագրություն*, հայ բնագիրը և ֆրանս. թարգմ. Ֆլորիվալ. Վենետիկ 1841 թուին։

*Վեցերորդ տպագրություն* Ֆլորիվալ երկր. անգամ. Պարիզ 1845։

*Եօթներորդ տպագրությունն* եղել է դարձեալ Վենետիկում 1843 թուին, «Սրբոյ հօրն մերոյ Մովսէսի Խորենացւոյ Մատենագրութիւնք» ընդհանուր վերնագրի տակ, որի մէջ մտնում են՝ Պատմութիւն Հայոց, Թուղթք, Պատմութիւն Հռիփսիմեանց և ճառք, Ցաղագս Պիտոյից և Աշխարհացոյց։ «Զեկուցումից» բերում ենք մեզ կարևորը. «Պատմութեանն Հայոց *օրինակք անթերի վեց* էին, և հատուածք այլ և այլ ի ճառընտիրս, և թուական գրութեան նոցին ՉԾԲ. ՌՃԹ. ՌՃԻ. ՌՃԼԲ», ուրեմն փրկչի 1303, 1660, 1671 և 1683 թուականները։ Մինչդեռ Աշխարհացոյցի համար յայտնած է, թէ «ի համեմատութենէ վեցից գրչագիր օրինակացս ընտրեալ զհարազատ ընթերցուածն ուր բազումք միաբանէին և կամ ընտիրքն և հինք, զայլս ի կարևորաց խնամով ի ստորև ամփոփեցաք», — Հայոց պատմութեան համար ոչինչ չկայ ասած։ Մեր կատարած մանրամասն համեմատութիւնից երևում է, որ հետևել են ընդհանրապէս մի ձեռագրի, բայց և, ինչպէս կարծում եմ, երբեմն լսելեայն ուղղումներ են մտցրել ուրիշ օրինակներից։

Այս տպագրութիւնն այն մեծ առաւելութիւնն ունի, որ միւս օրինակների տարբեր ընթերցուածները—ոչ բոլորը, այլ կարևոր համարուածները—ներքևում դրուած են իբրև ծանօթութիւն անորոշ ձևերով՝ «մի օրինակ, երկու օրինակ, այլք, այլ օրինակ, ամենայն օրինակք» ևն։ Մեր այս հրատարակութեան մէջ մեծ մասամբ առնուած են այդ ընթերցուածները ծանօթութիւնների մէջ վ, վ$^{2}$, վ$^{3}$, վվ, ձևերով, որ նշանակում են՝ Վենետիկի մի օրինակ, երկու օրինակ,... բոլոր օրինակները։

Տաշեանը յիշում է մի տպագրութիւն եւ Վենետկում 1849 թ.(?)։ Այս տպագրութիւնը մենք չենք տեսած։ Ղազիկեանը չունի։

4. *Ութերորդ տպագրութիւնը* եղել է դարձեալ Վենետկում 1865 թուին։ Դա նոյն տեղի 1843 թ. «Մատենագրութիւնք»-ի անփոփոխ արտատպութիւն է, «Ջեկուցումով» և ծանօթութիւններով հանդերձ։

Վենետկի այս հրատարակութիւնից արտատպուած է Հայոց Պատմութեան *իններորդ տպագրութիւնը* Թիֆլիսում 1881 թուականին, առանց ընթերցուածների։ Այս վերջին տպագրութիւնը, իբրև իր ժամանակին մի մատչելի հրատարակութիւն, ձեռի տակ ենք ունեցել մեր կատարած համեմատութիւնների ժամանակ։ Մեր այս հրատարակութեան ծանօթութիւնների մէջ դա նշանակուած է Վ տառով, իբրև Վենետկի տպագիր, որ և Խորենացու Հայոց Պատմութեան ամենից շատ տարածուած ու յայտնի օրինակն է, մի քանի անգամ տպագրուած լինելով Վենետկում և Թիֆլիսում։

5. *Տասներորդ տպագրութիւնն* եղել է Վենետկում 1881 թ.։ Այս փոքրադիր հրատարակութեան առաջին երեսին դրած է նոյն տեղի 1827 թ. փոքրադիր տպագրի ճակատը պատկերով հանդերձ. սակայն այս տպագրութիւնն անփոփոխ արտատպութիւն չէ նախորդ տպագիրներից։ Յառաջաբանից գնում ենք կարևորը. «Այս և եթ է խտիր ընդ այս հրատարակութիւն և ընդ առաջինան, զի յայսմ՝ առաջնորդ կալաք այլ ևմն օրինակ ձեռագրի, կամ լաւ ես ասացից՝ ուրեք ուրեք փոփոխութիւնս մուծաք ըստ այլում օրինակի, որ ընտրելագոյն եւ թուեցաւ մեզ»։ Մեր արած մանրամասն համեմատութիւնը ցոյց է տալիս, որ այս հրատարակութիւնը, որ մեր ծանօթութիւնների մէջ նշանակած է x տառով, իսկապէս Վենետկի սովորական տպագիրն է, միայն տեղ տեղ բնագրի մէջ մտցրած են ուրիշ ձեռագրի ընթերցուածներ։

Տաշեանն ունի մի տպագրութիւն Վենետ. 1880. թւում է տպագրական վրիպակ, փոխանակ 1881։

*Տասնումէկերորդ տպագրութիւնն* եղել է Թիֆլիսում 1910 թ. սա արտատպութիւն է նոյն տեղի 1881 թուականի տպագրի։

6. Խորենացու Հայոց Պատմութեան մեզ ծանօթ տպագրութիւնները վերևում դրած տասնումէկն են։ Դրանց նշանակութիւնը ձեռագրական տեսակէտից, չհաշուած իբրև ծանօթութիւն դրուած ընթերցուածները՝ շատ մեծ չէ. հրատարակիչները մեծ մասամբ արտատպել են կամ Ամստերդամի (t), կամ Վենետկի (Վ) տպ.։ Վենետկի 1849 (?) թ. տպագրութեան համար միայն չենք կարող այդ հաստատ ասել։ Այս հրատարակութիւնների մէջ սակայն կան *վեց ձեռագրի ընթերցուածներ*, մի ձեռագրինը ($w^1$) Լոնդոնի տպագրութեան մէջ, միւս հնգինը Վենետկի 1843 թ. (նոյն և 1865 թ.) տպագրի մէջ. այս վերջինների մէջ պիտի հաշուել և Վենետկի 1881 թ. հրատարակութեան մէջ կատարած ուղղումներն «ըստ այլում օրինակի»։ Բոլոր տպագիրներն իրենց ընթերցուածներով ուրեմն ունին *ութ ձեռագրի* նշանակութիւն։

7. Բացի վերոյիշեալներից մեր այս հրատարակութեան համար ի նկատի ենք ունեցել նաև ուրիշ երկու ձեռագրի ընթերցուածները, որ հրատարակուած են Թիֆլիսում 1858 թուին. «Բաղդատութիւն Պատմութեան Մովսիսի Խորենացւոյ տպագրելոյն ի Վենետիկ ընդ երկուց ձեռագրաց. երկասիրութիւն Յակովբայ վարժապետի Կարենեանց»։ Այս բաղդատութիւնը եղել է Վենետիկի 1843 թ. տպագրի հետ, ուրեմն սովորական (Վ) օրինակի հետ։

Այդ ձեռագիրներից երկրորդը յայտնի չէ թէ այժմ որտեղ է, նոյնպէս յայտնի չէր և առաջին ձեռագրի որտեղ լինելը. բայց այս աշխատութիւնն արդէն պատրաստ էր, որ Ստ. Կանայեանից ստացայ Արգար Յովհաննիսեանի մի ձեռագիրը, որ պիտի տրուէր Էջմիածնի գրադարանին, և յայտնուեց որ այդ ձեռագիրը Կարենեանցի բաղդատած առաջին ձեռագիրն է, որ մեր այս հրատարակութեան ծանօթութիւնների մէջ նշանակուած է Կ¹ ձևով։ Որովհետև այս ձեռագիրն այժմ յայտնի է, ուստի այստեղ այլ ևս չեմ դնում Կարենեանցի նկարագիրը. դրա նկարագիրը կը տրուի ձեռագիրների շարքի մէջ։

Երկրորդ ձեռագիրը, որ մեր այս հրատարակութեան ծանօթութիւնների մէջ նշանակուած է Կ² ձևով, այսպէս է նկարագրում Կարենեանցը։ «Գրքի երկայնութիւնն է մի թիզ և երեք մատնաչափ, լայնութիւնը մի թիզ, թանձրութիւնը երեք մատնաչափ. մի միայն Խորենացւոյ Հայոց պատմութիւնն է... գրչութիւնն ընտիր բոլորգրով, սկզբից մինչև վերջը մի ձեռով և համարեա թէ մի գրչով է գրած. առաջին գլխոյ առաջին և չորրորդ թղթերը պատուական բարակ և սպիտակ մագաղաթ են, մնացեալքը դեղնագոյն բամբակեայ թուղթ... բոլոր գիրքն է 432 երես. միայն մի թուղթ հանած կամ ընկած է»։

Կարենեանցն իբրև յիշատակարան բերում է ամենից առաջ տասներկու տող մի ոտանաւոր, որի առաջին ութ տողը բոլորովին նման ձևով կայ և Ամստերդամի (t) տպագրի մէջ Գ. գրքի վերջում և որ դրուեցաւ վերևում (§ 1)։ Այդ ութ տողերին Զ-րի մէջ յաջորդում են հետևեալ չորս տողերը, որ Թոմաս Վանանդեցին իր տպագրութեան մէջ դնելը, թէկուզ «Մովսէս» անունը «Թոմաս» դարձնելով, անյարմար է համարել.

«Սոյն մատենի եղէ ստացօղ ըստ փափագման
պիտակ անուն Մովսէս ի դասս ուսուցչական.
Առ ի զբօսանս մտաց իմոց զուարճական
և յետ մեր որք գայս վայելեն ունականն»։

Ապա գալիս է հետևեալը. «Յամի հազար երրորդի հարիւր երրորդի և քսան երրորդի թուականութեան հայկայինս տոհմի (=փրկչ. 1671 թ.)։ Ես պիտակ անուն Մովսէս, հուսկ վերջինս ի խումբս ուսումնականաց և երկրորդս ի պարս քարոզչաց։ Ստացայ զգիրս պատմութեանց Մովսիսի Խորենացւոյ... Բայց օրինակ և նախադաղափար յորմէ ածանցեցաւ սոյն այս մատեան, գտաւ հնագոյն գծագրութեամբ եղեալ յաղագս Ներսեսի Լամբրոնացւոյ արք Եպիսկոպոսի սրբոյ՝ Տարսոնի քաղաքի՝ զոր և ընտրեալ մեր՝ օրինակել տուաք ուրումն գրչի, և սրբագրեցաք

ըստ կարի մերում, սակս առ ուրեք ուրեք տարածանելոյ»... Ապա կան երկու ուրիշ յիշատակարաններ. «ընդ որս և զիս Յովհաննէս ապաշաւոր վեհիս մեծի՝ սակաւ աշխատող և կազմօղ այս մատենի յիշեսջիք հանդերձ ծնողօք»։ «Զվերջին ստացող սորին պաշտելի վերոյգրելոց Տեառն Մովսիսի, լոկ անուն Մեսրոպս յիշել մաղթեմ... որ և զկնի մահուան սորին ստացողի առաջնոյ, բազում փափագանօք ստացայ զսա ի հալալ արդեանց իմոց, և յետ սուղ ինչ ժամանակաց եսու... ի դուռն սրբոյ Առաքելոյն Թումայի։ Եւ ի ձեռն Տեառն բազմաշխատ և քրտնաջան Յովհաննու քաջահանճար բարունեաց պետի զոր և ներ յայսպիսում վշտաշատ ժամանակի շինեաց զեկեղեցիս զանկակատանոմբ հանդերձ, որում և յամենայն տեղեաց ամենայն ոք ընծայաբերք լինէին նորաշէն եկեղեցեացս, որ և ես նուաստ... Մեսրոպ յետնեալ ամենից աշակերտ Տեառն Յովհաննու... բարունւոյ... արկի զսա ի գանձանակ Տեառն... իւրոյ... ընծայ նորաշէն եկեղեցւոյս... Եւ այս եղև ի թուականութեանս հայոց ՌՃԽԳ (=փրկչ. 1694)։

Այս ձեռագիրը, Կարենեանցի ասելով, պատկանել է Թիֆլիսի Սուրբ Կարապետ եկեղեցու Տէր Յակոբեան Խաչատուր ծերունի աւագ քահանային, որի պապերն են յիշատակ տուած եղել Թոմայ առաքեալի վանքին, բայց Նադիր շահի գալու ժամանակ հետները բերել են Թիֆլիս։ Յետագայում սոյն Զ-րն անցել է Գիւտ քահանայ Աղանեանցին, որ տուել է Թիֆլիսեցի Միքայէլ Թամամշեանին, և վերջինիս մահից յետոյ, Տ. Գիւտի ասելով, մնացել է նրա ժառանգների մօտ։

Կարենեանցը երկու Զ-րի էլ բաղդատութիւնը լրիւ չէ արել, այլ բերել է «միայն այն զանազանութիւնքը, որոնք մտքին փոփոխութիւն կը տան, տեղ տեղ ես այն բառերը և բառերը, որոնք քերականութեան ճիշտ կանոնները պահպանելուն ապացոյց կարեն լինել»։ Առաջին ձեռագրից (Կ¹) շատ աւելի քիչ ընթերցուածներ են բերուած, քան երկրորդից (Կ²)։

Բացի վերևում դրածից՝ Ն. Մառի և Գ. Տ.-Մկրտչեանի ձեռով համեմատած և Մառից հրատարակուած են նաև մի ուրիշ ձեռագրի (Սանահնի օրինակ) ընթերցուածները։ Այս մասին սակայն յետոյ, քանի որ այս Զ-րն ևս (=Է Զ-ր) այժմ Էջմիածնի Մատենադարանում է, և մենք էլ նոյնն ունեցել ենք ձեռի տակ։

## Զ Ե Ռ Ա Գ Ի Ր Ն Ե Ր.

8. Ձեռագիրների նկարագրից առաջ՝ յարմար եմ համարում դնել այստեղ մեր եզրակացութիւնը Զ-ների մեծ խմբերի մասին։

Մեր բանեցրած տպագիրները, տպագրուած ընթերցուածներն և բուն ձեռագիրները, ինչպէս մանրամասն համեմատութիւնից երևում է՝ բաժանւում են երկու մեծ խմբի, որ նշանակել ենք Ա և Տ տառերով, իբրև Անտիպի և Տպագրի խմբեր։ Այսպէս կոչել էինք, կարծելով թէ Ա խմբի Զ-ներից հրատարակութիւն չէ եղել. բայց գործի տպագրութեան սկզբում ձեռք բերելով Ամստերդամի և Լոնդոնի հրատարակութիւնները՝

գտանք որ Խորենացու Պատմութեան առաջին և երկրորդ տպագրութիւններն Ա. խմբին են պատկանում, որով և Ա. ու Տ կոչումներն անյարմար էին։ Տառերի փոփոխութիւն սակայն չուղեցինք անել, լաւ իմանալով որ այսպիսի աշխատանքի մէջ ամեն նոր արտագրութիւն և տառերի շրջում նորանոր սխալների պատճառ պիտի դառնար։ Ա. խմբի մէջ պէտք է հասկանալ ուրեմն Ամստերդամի անդրանիկ տպագրին պատկանող օրինակներ, իսկ Տ խմբի մէջ մտնում են այն օրինակները, որոնք պատկանում են Վենետկի սովորական դարձած Տպագրին։

Ա և Տ խմբերի բաժանման արտաքին նշաններից մէկն այն է, որ Բ. գրքի Է. և Ը. գլուխները Ա. խմբի բնագրի մէջ կազմում են մի մեծ գլուխ կամ, ինչպէս Խորենացին ասում է նոյն գլխի սկզբում՝ «Դրուագ մեծ», որի ընդհանուր վերնագիրն է «Յօրինուած թագաւորութեանն և թէ ուստի զնախարարութիւնսն կարգեաց. որպէս և զկարգ կենցաղավարել հրամայեաց». յաջորդ գլուխն է թէ ցանկի և թէ բնագրի մէջ «Յաղագս մերոյ Արշակայ առաջնոյ և նորին գործոց»։ Տ խմբի մէջ Ա. խմբի այս մեծ դրուագը բնագրում բաժանած է երկու գլխի, որ են՝ մի գլուխ նոյն վերնագրով որ ունի Ա. խմբի մեծ դրուագը՝ «Յօրինուած թագաւորութեանն» ևլն, և մի երկրորդ գլուխ վերնագրով՝ «Երկրորդ թագաւորութեան լինել ի զաւակէ Աժդահակայ Մարաց թագաւորին», և յաջորդ գլուխն է «Յաղագս մերոյ Արշակայ» ևլն։

Գլխակարգութեան այս տարբերութիւնը կայ Ա և Տ խմբերի բոլոր Ձ-ների բնագրի մէջ, գլխահամարները սակայն այս կամ այն Ձ-ների մէջ, թէ ցանկում և թէ բնագրում, երբեմն զանազան են. բայց դա Ձ-ների առանձնայատկութիւն է և ոչ խմբերի։ Արտագրողները յաճախ բաց են թողնում գլխահամարները կամ սխալ են նշանակում և սխալը շարունակւում է միւս գլուխների մէջ ևս։ Օրինակ՝ Բ. գրքի ցանկի մէջ af Ձ-ները բաց են թողել առաջին գլխի գլխահամարը. երկրորդ գլխի համարը a Ձ-ը նշանակել է ուղիղ՝ Բ., իսկ f Ձ-ը, որին միացած և d Ձ-ը, սխալը շարունակել է, այսինքն Բ. գլխի համարը գրել է Ա., երրորդ գլխինը Բ. ևլն., որով af Ձ-ները, որոնք Ա. խմբի մէջ են, Թ. գլխի համար ունին Է. փոխանակ Ը.-ի։ Բնագրի մէջ սակայն այսպէս ունի միայն d ձեռագիրը։ Հասկանալի է, որ Ա. և Տ. խմբերին պատկանելը որոշելու համար ոչ թէ գլխահամարը նկատի պիտի ունենալ, այլ գլխի վերնագիրը՝ «Երկրորդ թագաւորութեան լինել»...

Այս վերնագրով գլուխը Տ խմբի մէջ անպայման նախնական բնագրից չի գալիս. բայց մենք այս հրատարակութեան մէջ գլխակարգութիւնը պահեցինք ըստ Տ խմբի Ձ-ներին, որովհետև Վ (Վենետկի) տպագրով բազմաթիւ վկայութիւններ կան։ Թէ այդ գլուխն իր վերնագրով նոր է առաջացած՝ երևում է նախ նրանից, որ վերնագիրը չի համապատասխանում գլխի բովանդակութեանը, մինչդեռ նախորդ գլխի վերնագիրը, «Յօրինուած թագաւորութեանն»..., համապատասխան է Տ խմբի երկու գլխի բովանդակութեանն ևս միասին։ Բացի այդ՝ Տ խմբին պատկանող Ձ-ներից, որոնք ցանկեր ունին, lo Ձ-ները (l Ձ-րն այս մասում Տ խմբին է պատկանում) ցանկի մէջ դեռ չունին այդպիսի

վերնագրով գլուխ, մինչդեռ նոյն խմբին պատկանող n Ձ-իրը ցանկն ևս արդէն համեմատ է դարձրած փոխուած բնագրին. բայց այդ գլուխը ցանկի մէջ իր տեղումը չէ գրած, այլ մի առանձին նշանով աւելացրած է երեսի տակին։ Թէ յետագայում արտագրողները կարող էին ցանկը համեմատ դարձնել փոխուած բնագրին՝ դրա համար մի օրինակ ունինք $k^1$ Ձ-իրը, որ ծագում է l Ձ-րից. բայց մինչդեռ l-ի մէջ ցանկում չկայ այդ նոր գլուխը՝ $k^1$ Ձ-իրն ունի նոյնը։

Այսպէս ուրեմն յետագայում Բ. գլխի Ե գլուխը, «մեծ դրուագը», բաժանած են երկուսի, զուգէ առաջնորդուելով Խորենացու մի ուրիշ տեղում ասած խօսքից—«ի բազում ճառս կտորեցաք, զի մի երկայնութիւն բանից տաղտկութիւն ընթերցողացն լինիցի»։ Բայց այս բաժանումը կարող է և պատահաբար առաջացած լինել բնագրի մէջ, որին համապատասխան են դարձրել յետոյ և այս կամ այն Ձ-րի մէջ նաև ցանկի մէջ գլխակարգութիւնը։ Պատահական լինելը հաւանական եմ համարում այն պատճառով, որ S խմբի բոլոր Ձ-իրներն էլ, որոնք ունին «Երկրորդ թագաւորութեան լինել ի զաւակէ Աժդահակայ Մարաց թագաւորին» վերնագիրը՝ բնագրի մէջ չունին այս նոր գլխի սկզբի հետևեալ հատուածը. «Երկրորդ թագաւորութեանն լինէր ի զաւակէ Աժդահակայ Մարաց եղելոյ թագաւորի» (եր. 112 տ. 14—15). պէտք է կարծել, որ S խմբի Ձ-ների մայր Ձ-րի մէջ այս հատուածը մոռացմամբ չի գրուած եղել և ապա վերևում կամ լուսանցքում աւելացրած է եղել, բայց արտագրողներից ըմբռնուած է իբրև առանձին գլխի վերնագիր։ Այսպիսի ծագումով կարելի է բացատրել այն, որ Ձ-ների մի մասն այդ վերնագրի համար կամ գլխահամար չունին, կամ Ե են նշանակում, և որ S խմբի բոլոր Ձ-ների մէջ վերոյիշեալ հատուածը չկայ գլխի սկզբում բնագրի մէջ։ Վենետկի տպագիրը (Վ.) միայն ունի թէ գլխի վերնագիրը և թէ գլխի սկզբի պակասած հատուածը. պէտք է կարծել, որ այս օրինակի գրիչը զգալով բնագրի թերին՝ ինքն ուղղած լինի, այսինքն բնագրի մէջ նոյնն աւելացրած (տես նաև § 37)։

Բացի Բ. գրքի Ը գլխից՝ Ա և S խմբերին պատկանելը որոշելու համար իբրև մի յատկանիշ կարելի է առնել նաև հետևեալը։ Բ. գրքի ԼԱ և ԼԲ գլուխներն ևս («Թուղթ Աբգարու առ Փրկիչն», «Պատասխանի թղթոյն Աբգարու»...) չկան Ա խմբի Ձ-ների ցանկի մէջ. մինչդեռ S խմբի ցանկի մէջ կան, միայն դարձեալ տարբեր ձևով։ S խմբից Վ. տպագիրն և n Ձ-րն այդ երկու գլուխն էլ ունին ցանկում ԼԱ և ԼԲ գլխահամարներով, որով բոլոր գլուխների թիւը (Ը գլուխն էլ հետը) հասնում է մինչև ՂԲ (92), թէ ցանկի և թէ բնագրի մէջ. իսկ lo Ձ-ները ԼԱ և ԼԲ գլուխների վերնագիրներն ունին ցանկում, միայն առանց գլուխ հաշուելու և գլխահամարների, որով գլուխների թիւն է թէ ցանկի և թէ բնագրի մէջ ՁԹ (89), քանի որ դրանք Ը. գլուխն էլ չունին ցանկի մէջ։ S խմբից pqrs Ձ-ները ցանկ չունին. դրանց բնագրի մէջ գլուխների համարները տեղ տեղ խառնած են, բայց pq Ձ-ները ԼՁ գլխահամարի փոխանակ ունին ԼԳ և ապա յաջորդը ԼԴ են, իսկ rs Ձ-ներն ԼԴ գլխահամարի փոխանակ ունին ԼԱ, ապա յաջորդը ԼԲ են. որով և pqrs Ձ-ներն իրենց գլխահամարներով վերջը նոյնանում են lo

Ձ-ներին և ունին բոլոր գլուխների թիւը ՁԹ (89), ինչպէս որ Ղօ Ձ-ների մէջ։ Այս ցոյց է տալիս, որ Տ խմբի Ձ-ների մէջ նախ բնագրում առաջ են եկել ԼԱ և ԼԲ գլուխները, այսինքն թղթերի վերնագրերն առնուել են իբրև առանձին գլուխներ, ապա բնագրից անցել են նաև ցանկին և վերջը այս կամ այն Ձ-րի մէջ նոյն-իսկ առանձին գլխահամարների տակ նշանակուել։ Կ[1] Ձ-իրն այստեղ էլ տարբերւում է իր մայր Ղ Ձ-րից. նրա մէջ թէ ցանկում և թէ բնագրում առանձին ԼԱ և ԼԲ գլուխներ են այդ թղթերը, որով բոլոր գլուխների թիւն է ՂԲ (92)։

Ա և Տ խմբերի այս բաժանումն անհերքելի կերպով հաստատւում է մանրամասն համեմատութիւնից ստացած բազմաթիւ ընթերցուածների նոյնութեամբ, որ ցոյց է տալիս, թէ այս երկու խմբերի մայրերը տարբեր են եղել, մինչդեռ միևնոյն խմբին պատկանող Ձ-ները մի ընդհանուր մայր են ունեցել։ Կան ի հարկէ այս կամ այն Ձ-ներին կամ դրանցից փոքրիկ խմբերին յատուկ ընթերցուածներ էլ, որոնք բնականաբար ժամանակի ընթացքում առաջացած փոփոխութիւններ են։

9. Ա և Տ խմբերի խառնուրդ են կազմում մի շարք Ձ-ներ, որ նշանակել ենք Խ տառով, որոնց ընդհանուր մայրը Էջմիածնի գրադարանի հնագոյն Ձ-իրն է, որ մեր ծանօթութիւնների մէջ անուանուած է Ղ տառով։ Սրա հին մասը պատկանում է Ա խմբին, իսկ 1567 թուին նորոգուած մասն արտագրուած է Տ խմբի մի Ձ-րից. դրա համար և Խ խմբի Ձ-ների ընթերցուածները երբեմն Ա խմբի հետ են միանում, երբեմն Տ խմբի հետ։

Դրսի Ձ-ների այս Խ խմբին պատկանելը որոշելու համար՝ իբրև մի յատկանիշ կարելի է առնել այն, որ Բ. գրքի վերոյիշեալ Ը գլխի վերնագիրը («Երկրորդ թագաւորութեան լինել»...) կայ այս խմբի Ձ-ների բնագրի մէջ, որովհետև այդ մասը Տ խմբից է արտագրուած։ Բայց այսքանը միայն բաւական չէ. հարկաւոր է միաժամանակ Ա խմբին պատկանող մասից էլ մի յատկանիշ առնել. իբրև այդպիսին կարելի է բերել այն, որ Խ խմբի մայրը, Ղ Ձ-իրը, Գ. գրքի ցանկի վերջում, որ Ա խմբին է պատկանում, ունի մի յաւելուած—«Տաղք չափաւ յինք և ի Սահակ Բագրատունի», որ միայն այս խմբի յատկանիշն է։ Սակայն կան Ձ-ներ, ինչպէս ՊԿ[1], որոնք Ղ-ից են ծագում, բայց ցանկի վերջում չեն արտագրած այդ յաւելուածը. ուստի եթէ դրսի մի Ձ-իր ունի վերոյիշեալ Ը գլխի վերնագիրը, բայց չունի Գ. գրքի վերջում «Տաղք չափաւ»... յաւելուածը՝ կարող է և՛ Տ և՛ Խ խմբից լինել. հետևաբար այս երկու խմբից որին պատկանելը որոշելու համար պէտք է նկատի ունենալ Ղ Ձ-րին առանձնայատուկ մի քանի ընթերցուածներ Ա խմբին պատկանող մասից։ Ինչպէս են օրինակ՝ եր 76, տ. 8ծ. «գեղեցկաւք և բազմազունիւք զարդարեալ շատրուանաւք». որ Ա խումբն ունի «գեղեցկօք և բազմազունիւք յօրինեալ շատրուանօք», (կամ շատրուանովք), իսկ Տ խումբն ունի «գեղեցիկ և բազմադէոյն շատրուանօք զարդարեալ»։ Եր. 77, տ. 2 «Ի քրտան սաստկութեան յայսպիսույ եղեալ տագնապէ՝ փախեաւ», որ Ա խումբն ունի. «ի քրտան սաստկութեան յայսպիսում եղեալ վտանգէ՝ փախեաւ», իսկ Տ խումբն ունի.

«ի բրտան սատիկ վտանգի եղեալ (կամ ելեալ) փախեաւ»։ Այսպէս և եր. 77, տ. 9. եր. 78, տ. 2 (այնմ փխ. այժմ). եր. 79, տ. 7. 80, 5. 81, 17. 82, 5 (իբր հեղեալ). 82, 17. 83, 5. 83, 7. 84, 6 ևլն ևլն։

Խմբերի այս մեծ բաժանումից յետոյ՝ տեսնենք այժմ ամեն մի Ձ-իր առանձին, սկզբից դնելով այն տառերը, որոնցով նշանակուած են մեր համեմատութիւնների մէջ։ Սկզբում դրուած թուերն Էջմիածնի գրադարանի այժմեան թուահամարներն են ցոյց տալիս, իսկ փակագծում դրուածները Կարենեանցի տպագրուած ցուցակի համարներն են, ըստ Յ. Մանանդեանի հին և նոր թուահամարները դէմուդէմ դնելուն (Հանդէս Հայագիտութեան II, Bd. I. H. Marburg 1903)։

## Ա (ԱՄՍՏԵՐԴԱՄԻ) ԽՄԲԻ ՁԵՌԱԳԻՐՆԵՐ.

10. *a*. Էջմիածնի գրադ. № 1671 (Կար. ց. 1629)։ Մեծութիւն 28,5 ×20 հրդմ։ Կաշեկազմ, թուղթ, բոլորագիր, միասիւն։ Սկզբից հինգ թերթ առանց գրելու թողած։ Բովանդակութիւն—1) Տեառն Միխայիլի պատրիարքի ասորւոց համառօտ ժամանակաց գրոյցք քաղուածոյ արարեալ յոլովից պատմագրաց. 2) Վասն թագաւորացն Հայոց զոր կարգեաց Մովսէս Խորենացին.—մէջը նաև Բագրատունիք և Ռուբինեանք. վերջը մի ոտանաւոր, որի տողերի սկզբնատառերը կազմում են «Մովսէսի է սա». 3) Յաղագս աստիճանաց եկեղեցւոյ.... 4) Անանիայի Շիրակունւոյ համարակալի թիւք որչափութեանց հին կտակարանաց. 5) Սամուէլի քահանայի Յանեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց յաղագս գիւտի ժամանակաց անցելոց մինչև ի ներկայս ծայրաքաղ արարեալ. 6) Պատմութիւն Հայրապետաց թէ որքան թիւ են Հռոմայեցւոց և ըն թագաւորացն. 7) Խրատք իմաստասիրաց պէս պէս. 8) Մովսէս Խորենացի Հայոց Պատմութիւն։

Խորենացին չունի վերնագիր և ոչ Ա գրքի ցանկը. սկզբից չորս թերթ մաքուր է թողած։ Սկսւում է «Զանազան խաղացմունս»... երեսի տակին նոտրագրով. «Մովսէսի Խորենացւոյ պատմութիւն ժամանակաց և ազգիս Հայոց աշխարհիս»։ Ա. գրքի Ի գլխի («Համեմատութիւն ծննդաբանութեան...») վերնագրի տակին յիշատակւում է ստացող Մինաս վարդապետ առաջնորդն «յԵւդոկիոյ քաղաքիս» և գրութեան թիւը ՌՃԼԶ (=1687 թ.)։ Նոյնը յիշատակւում է նաև Բ. գրքի և սրա ցանկի վերջում։ Ընդարձակ յիշատակարան կայ գրքի վերջում։ «Յիշատակարան երից պատմագրացս Միխայիլի պատրիարքի Ասորւոց և Սամուէլի Յանեցւոյ և տեառն Մովսիսի Խորենացւոյ։ Փառք փառաւորեալ... և եղան երեքին գիրքս ի միում տփի հրամանաւ ստացողի սորին տէր Մինաս աստուածաբանի և մեծ րաբունւոյ Յամթեցւոյ՝ արհեպիսկոպոսի և վերատեսչի յԵւդոկիայ քաղաքի...։ ի թուահաշւութեանս հայկազուն սեռի ՌՃԼԶ (=1687) հոկտեմբերի երեք եղև սկիզբն գծութեան սորին... եղև աւարտումն գրոյս պատմութեան ի թվականիս հայոց ՌՃԼէ (=1668) յունուարի ԺԳ ձեռամբ Մկրտում... Զուղայեցւոյ ի Թոխաթ քաղաքի որ Թաղթիղալամ կոչեցեալ յեկեղեցին սրբոյն Սարգսի

առ ոտն տեառն իմոյ Մինաս վարդապետի, որ ստացաւ զգիրքս ի վայելումն անձին իւրոյ... և յետ աստեացս ելանելոյն ի մարմնոյն՝ մնալ յիշատակ ի դուռն սրբոյ Աթոռոյն Էջմիածնի»։ Մինաս վարդապետի յիշատակութիւններ և նրա կնիքները կան գրքի մէջ շատ տեղերում։

11. Ն. էջմ. № 1672 (Կար. ց. 1630)։ Մեծ. 28,25×20 հրդմ. Թղթակազմ, Թուղթ, բոլորագիր, երկսիւն։ Բովանդակութիւնը նոյն է ինչ որ նախորդ a Զ-րինը, միայն մէջը կան նաև աւելի բաներ. 1) Միխայէլ Ասորի. 2) Ցաղագս քահանայական կարգաց. 3) Խրատք ժամակարգութեանց աղօթից և ծնրադրութեանց. 4) Վասն Թագաւորացն Հայոց.... 5) Ցաղագս սատիճանաց.... 6) Անանիայի Շիրակունւոյ.... 7) Սամուէլ Անեցի (վերջը մի փոքր տարբեր № 1671-ից). 8) Պատմ. Հայրապետաց.... 9) Վասն ժամանակաց գրոց ամացն յադամայ.... 10) Վասն կատարածի աւուր. 11) Ցաղագս կշռոց. 12) Առակաւորք Ղուկասու. 13) Հարցմունք զանազանք և պատասխանիք. 14) Թղթի առաջք կաթողիկոսի, վարդապետի, փիլիսոփայի, պարիարգի ևլն. 15) Եպիփանեա եպիսկոպոսի Կոստանդեա քաղաքի ասացեալ վասն երկոտասան ականց.... 16) Այս է պատմութիւն Փարէս քաղաքին. 17) Մի քանի տաղեր. 18) Դաշանց Թուղթ. 19) Հարցմունք Տաճկաց և պատասխանիք մերոց վարդապետաց ընդդէմ նոցա. 20) Թուղթ տեառն Գրիգորի կաթողիկոսի հայոց՝ գրեալ եղբօր Նորին Ներսեսէ... ի Միջագետս Ասորւոց. 21) Թուղթ խոստովանութեան և հաւատոյ եկեղեցւոյ գրեալ տեառն Ներսեսի... զոր խնդրեաց... Թագաւորն Յունաց Մանիլ. 22) Պատասխանի Թղթոյ մեծ Թագաւորի Հոռմոց կէռ Մանուէլին. 23) Մովսէս Խորենացւոյ Պատմութիւն։

Գրքի մէջ, Թերթ 180 բ., կայ այս յիշատակարանը. «Զփծուն գրիչս մեղապարտ յովանէս յիշեցէք... ՌՃԺԵ» (=1666 Թ.). իսկ Խորենացու մէջ Ա. գրքի Ի. գլխի վերնագրի տակին. «Սքանչելի պաշտօնէից սրբոյ եկեղեցոյ մաղթեմ զանարհեստ ձեռագիրս ընկալարուք ի սոյնս յիշատակլի առ հաւատչեայ տառապելոյ, Յովանէսի մեղսասիրի։ Աղաչեմ զուրբքսդ։ Թվ ՌՃԻԵ» (=1676)։ Վերջի Ե տառի գլուխը ջնջած է, այնպէս որ կարող է գ կամ դ էս կարդացուել. այն ժամանակ կլինի 1674 կամ 1675 Թ.։ Երրորդ գրքի վերջում. «Ճշմարտութեամբ և զըստացող սորա զյովանէս սարկաւագս և զհայրն իմ մահդեսի և զմայրն խանումն որ փոխեցաւ յայս կենացս Թվականիս մերում հազար հարիւր քսան»... (=1671 Թ.)։ Այլա ուրիշ Թանաքով. «Եւ ՌՃԼ Թուականից (=1681 Թ.) հայրն իմ գնաց ի սուրբ քաղաքն Երուսաղէմ կրկին անգամ»... Կան ուրիշ տեղեր էս անԹուական յիշատակարաններ։

12. Շ. էջմ. № 1665 (Կար. ց. 1623)։ Մեծ. 19,5×15,5 հրդմ. կաշեկազմ, նոտրագիր, միասիւն։ Բովանդակութիւն—1) Խորենացու Հայոց Պատմութիւն. 2) Աշխարհացոյց Վարդան վարդապետի. 3) Մովսէս Խորենացի յաղագս աշխարհագրութեան. 4) Աշխարհագրական տեղեկութիւններ «Ի Ֆրանկաց ի մերս Թարգմանեալ ի Թւականիս Հայոց ՌԿԵ» (=1616 Թ.)։

Խորենացու Գ. գրքի ԿԸ գլուխն ամբողջ չկայ. թերթ ու կէս դատարկ է թողած։ Գ. գրքի ԿԷ գլխի վերջում. «Եւ զայս Մովսէս Խորենացոյ պատմագիրքս է Անդրիանու Պօլսոյ առաջնորդ Եփրեմ վարդապետին ի վայելումն իւրում անձին հազար հարիւր քառասուն հայոց թուականին» (=1691 թ.)։ Մի քանի տեղ յիշւում է «գրչակը» առանց թուականի։ Խորենացու աշխարհագրութիւնից յետոյ՝ «Որք հանդիպիք և ընթեռնուք՝ զներսէս անուն սարկաւագն յիշեցէք»։

13. d. էջմ. № 1669 (Կար. ց. 1627)։ Մեծ. 19,5×12,5 հրդմ. կաշեկազմ, թուղթ, բոլորագիր. միասիւն։ Բովանդակութիւն—1) Խորենացու Պատմութիւն. 2) Տոմարական.... 3) Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ. 4) Բացատրութիւն սուսերաչափ գործիքի և եղանակի (նօտրագիր). 5) Փօնցիանոս թագաւորի պատմութիւն (նօտրագիր)։

Խորենացու Ա. գրքի վերջում. «Գծեցաւ ձեռամբ յոգնամեղ Գրիգորի Երևանցւոյ ի թուիս ՌՃԻԵ» (=1676)։ Նոյնը նաև Բ. և Գ. գրքերի վերջում։ Փոնցիանոս թագաւորի պատմութեան վերջում... «յանգ ելեալ աւարտեցաւ պատմութիւն եօթն իմաստասիրաց ի յերկիրն Ամասիոյ ի խնդրոյ տէր Մովսէս... վարդապետի... Մարտիրոս երեց գրեցի... զառաջին երկու տետրերն Մկրտիչ գրեց և մարմինն ակարացաւ, եբեր առ իս թէ աւարտէ և ես անարժանս աւարտեցի»։ Մի ուրիշ յիշատակարանից. «Յիշատակ է գիրքս Յովհաննէս վարդապետին առաջնորդի Սուրբ Կարապետիս, որ է Յովհաննու վանք ի նահանգին Կողբայ յոր ոտին արագածն ի վերայ քասախ գետոյ... որ ստացաւ զսա յովհաննէս վարդապետն և եդ յիշատակ ի դուռն նոյն վանացն յօհաննու ի հազար և ի հարիւր և քսան և յինն թուին (=1680 թ.)։

14. e. էջմ. № 1686 (Կար. ց. 1644)։ Մեծ. 24,5×19. կաշեկազմ, թուղթ, բոլորագիր, երկսիւն։ Բովանդակութիւն—1) Եղիշէ. (վերջում Թովմայ Արծրունուց մի գլուխ). 2) Պատմութիւն Ղևոնդայ մեծի վարդապետի. 3) Երկրորդ հատոր մեկնութեան սրբոյ Աւետարանին Մարկոսի, ասացեալ Բարսղի վարդապետի. 4) Խորենացի. 5) Դաշանց թուղթ։

Եղիշէի վերջում. «Կատարեցաւ բան պատմագրութեանց սրբոյ Եղիշայի հայոց վարդապետի։ Ձեռամբ ամենաթշուառ Մարկոսի սպասաւորի»։ Ղևոնդի վերջում. «Գրեցաւ ձեռամբ ամենավրէպ և բէյնուայ Մարկոսի բանի սպասաւորի ի ՌՃԻԴ թուոջ (=1675 թ.)։ Խորենացու երեք գրքերի վերջում էլ յիշւում է Մարկոս գրիչ. «զխս գծրօղ սորին զմարկոս իբրու բանին սպասաւոր»։ Խորենացու գրութեան թուականը չէ յիշուած, բայց որովհետև գրիչը մէկ է՝ գրուած պիտի լինի կամ նոյն 1675 թ., երբ գրուած է Ղևոնդը, կամ մի երկու տարի յետոյ։ Մարկոսի աւետարանի մեկնութիւնն ուրիշ ձեռքով է գրած «ի Շուշ քաղաքն, որ կոչի Իսպահան, ի գեղջն Ջուղայ, ի դրանս սուրբն Ստեփանոսի ի հայրապետութեան Տէր Խաչատուր արի և քաջ վարդապետին, և սուտ անուն Հայրապետ գրիչս յիշեա»...

Խորենացու Բ. գրքի ԺԶ գլխի վերնագրի «և խոյս տալ Գաբիանոսի» (եր. 130, տ. 12) մասից սկսած մինչև նոյն գրքի ԽԶ գլխի

*վերջը (եր. 173, տ. 15) կտրած հանած է և ապա նոտրագրով, տարբեր թղթի վրայ, գրած և միացրած է։ Այս նորոգած մասը, ուրեմն ԺՁ—ԽՁ գլուխները, պատկանում է Տ խմբին։*

15. *Ւ. էջմ. № 616 (Կար. ց. 602)։ Մեծ. 14,5×10. կաշեկազմ, թուղթ, նոտրագիր, միասիւն։ Բովանդակութիւն՝—Խորենացու պատմութիւն։ Գրիչ, գրութեան տեղ և թուական անյայտ։ Դ. գրքի վերջին ԿԸ գլուխը չկայ։ Վերջից ուրիշ ձեռքով. «Յիշատակ է տէր Յօհաննիսին Առաքելին»։*

16. *Ա խմբին պատկանում է նաև Լայպցիգի քաղաքային մատենադարանում եղած Ձ-իրը, որ նշանակում ենք Լ տառով. «Մովսիսի Խորենացւոյ մականուամբ քերթօղի... Պատմութիւն Հայոց ընդօրինակեալ ի Լէօպօլիս Ռուսաց յամի տեառն ՌՃԽԵ» (1696 թ.)։ Այս Ձ-րի յիշատակարանի մէջ Խորենացու համար գրուած է. «Որ շուրջ գքառերիւր ամաւ Տեառն ծաղկեցաւ և երկարակեաց եղև մինչև ցամն հինգ հարիւր եօթանասուն շուրջանակի»... Ձեռագրի երկրորդ երեսի մէջ»... Մովսէս... երկարակեաց լեալ իբր ամս հարիւր տասն և հինգ վախճանի ի խորին ծերութեան» (Իս. Յարութիւնեան, Հայոց գիրը, Թիֆլիս, 1892. եր. 10, 184)։ Այս ձեռագրից մենք ընթերցուածներ չունինք. Ա խմբի մէջ դնում ենք հիմնուելով Ա. Բաումգարտների վկայութեան վրայ, որ այս Ձ-րը Վանանդեցու օրինակի (Ամստերդամի տպագիր, t) տեսակից է համարում (A. Baumgartner, Ueber d. Buch «Die Chrie», Leipzig 1886. եր. 482—489. արտատպ. Zeitschr. der Deutsch. Morg. Gesell. Bd. XL)։*

17. *Բացի վերևում դրուած եօթը ձեռագիրներից, ինչպէս մեր կատարած մանրամասն բաղդատութիւնից երևում է՝ Ա խմբին պատկանում են նաև՝ 1) t, Ամստերդամի տպագրութիւնը Թովմաս Վանանդեցու ձեռքով. 2) Կ², Կարենեանցի բաղդատած երկրորդ Ձ-րը, որ այժմ յայտնի չէ թէ ուր և ում մօտ է (տ. § 7)։ Ապա Վենետկի օրինակներից երկուսը, որոնց մասին առանձին։*

## Տ (ՏՊԱԳՐԻ) ԽՄԲԻ ՁԵՌԱԳԻՐՆԵՐ.

18. *Ո. էջմ 611 (Կար. ց. 597)։ Նկարագրուած «Պատմագիրք Հայոց» հրատարակութեան մէջ Ղազար Փարպեցու յառաջաբանում (էջ Ե-Զ) և Ագաթանգեղոսի յառաջաբանում (եր. ԺԴ. 8)։ Մանրամասն նկարագրուած Գ. Տ.-Մկրտչեանի «Խորեն. պատմ. ուսումնասիրութեան» մէջ (Արարատ 1896. էջ 542—549. առանձին արտատպ. 1896. Վաղարշապատ. գլ. Դ)։ Աւելի համառօտ՝ «Ղազար Փարպեցու ձեռագիրը» յօդուածում B տառի տակ (Արարատ 1901. նոյեմբ.—դեկտ.)։ Այստեղ դնում ենք միայն կարևորը.*

*Մեծադիր, 19×25, կաշեկազմ, թուղթ, բոլորգիր, երկսիւն։ Ստացող Վարդան վարդապետ Բաղիշեցի։ Գրիչ Պօղոս երէց Գաւըռցի։ Գրու-*

թեան տեղը Բաղէշ, սուրբ ուխտ Յովհաննու Մկրտչի—Ամրդօլու վանք։ Թուականը ՌՃԻԱ (=1672)։ Պատմագիրների մեծ ժողովածու է և բովանդակում է Ագաթանգեղոս, Դաշանց Թուղթ, Մեծին Ներսէսի Վարքը, Պատմութիւն Մովսէսի Խորենացւոյ, Եղիշէ, Ղ. Փարպեցու Պատմութիւն, և Թուղթ, Սեբէոս, Կորիւն։

Խորենացու պատմութեան սկզբում գրուած է մի պատկեր, որ ներկայացնում է Խորենացուն և Սահակ Բագրատունուն։ Առաջին գրքի ցանկը չկայ։

19. *օ. Էջմ. № 1664 (Կար. ց. 1622)։ Մեծ. 21×15, կաշեկազմ, թուղթ, նոտրագիր, միասիւն։ Խորենացու Բ. գրքի վերջում. «Զմեղուցեալ... գծող պատմագրիս, զորդի Նիկողայոս Բարունւոյ, զԱրիստակէս երէցս, յիշեցէք ի Քս... Թուին ՌՃԽԸ (=1699)։ Գ. գրքի վերջում. «Զնուաղեալս ի լուսոյ աչաց զԱրիստակէս էրէց, զորդի Նիկողայոս Բարունւոյ, որ առաջնորդ էր Թէքֆիւրտաղոյ յիշեսջիք... որ բազում ջանիւ յաւարտ հանի գծագրելով, ի Թվին Քսի ՌՈՂԹ (1699) յունիսի Ժ. օրն շաբաթ»։*

*Վերջում դատարկ թերթերի վրայ՝ 1) Մեսրոպ եպիսկոպոս Սմբատեանի գրած յիշատակարան Գէորգ Դ. Կաթողիկոսի մասին. 2) Պատմ. Յովակիմայն և Աննայ Ծնօղացն Ս. Աստուածածնին. 3) Յաղագս սրբոյ աթոռոյն Էջմիածնի զոր ինչ անցք անցանեն ի ժամանակ հայրապետութեան Տեառն Եփրեմի,—գրած Նախավկայի վանքի առաջնորդ Ջուղայեցի Սարգիս վարդապետից. 4) Պատմութիւն անցից պատերազմին Ռուսաց ընդ Տաճկաց Օսմանցւոց սկսեալ 1853 ամէ ց1856 ամն։ Վերջում երկու երգ, որոնցից երկրորդն Աշըղ Շիրինի՝ «Երբ իշխան Բէրութեանցը սկսեց յաղթութիւնը»...*

20. *բ. Էջմ. № 1666 (Կար. ց. 1624)։ Մեծ. 19,5×15 հրդմ. կաշեկազմ, թուղթ, նոտրագիր, երկսիւն։ Բովանդակութիւն—1) Յաղագս Պլատոյից (բոլորգիր). 2) Խորենացի (նոտրագիր). 3) Յաղագս վեցօրեայ գործոց արարչութեան (նոտրագիր)։*

*Խորենացու պատմութիւնը ոչ մի գրքի ցանկ չունի. Ա. գրքից ունի միայն այսքանը. «Մովսէսի Խորենացւոյ յաղագս մերոյս յիսկզբան յայսմ բանիցս ի ահակայ Բագրատունայ խընդրլ»։ Խորենացու յիշատակարան Գ. գրքի վերջում. «Յիշեցէք ի Քրիստոս զսըրագրօղ սորա զտէր Աղէքսանդր բանի սպասաւոր զհոգեոր որդեակն իմ զտէր յոհաննէս, նորաբողբոջ և զետարուսիկ կուսակրօն քահանայ, զի յոյժ աշխատ եղաք ի սրբագրելն, զի յոյժ էր սխալ։ Եւ նախկին ծրողի սորա մի յիշեսցէ տէր զյանցանս։ Ի թուին ՌՃԼԹ (=1690) յունվար ԻԴ»։*

21. *գ. Էջմ. № 1667 (Կար. ց. 1625)։ Մեծ. 20×14 հրդմ. կաշեկազմ, թուղթ, նոտրագիր, միասիւն։ Բովանդակութիւն—Խորենացի, Եղիշէ, Փաւստոսից հատուածներ, Յաղագս վարուց և գործոց մեծին Դանիէլի, Քարոզներ Յովհաննու Որոտնեցւոյ ևլն։*

*Խորենացու պատմութիւնը ոչ մի գրքի ցանկ չունի։ Յիշատակա-*

բանը Բ. գրքի վերջում. «Ստացող պատմագրիս և զքաջ՝ և իմաստուն Սահակ վարդապետ Ջուղայեցիս յիշեցէք, որ փափագանօք ետ գրել։ Եւ ես նուաստ և անպիտան սուտանուն Ռոմանոս գրիչս յիշեցէք ի թվականիս Հայոց ՌՂ (=1641 թ.) ամին գրեցաւ»։

22. ր. էջմ. № 1662 (Կար. ց. 1620)։ Մեծ. 25×19 հրդմ. կաշեկազմ, թուղթ, բոլորագիր, երկսիւն։ Բովանդակութիւն—Ժողովումն մեկնութեան սրբոյ աւետարանիս որ ըստ Մատթէոսի—Շնորհալւոյ (նոտրագիր), ապա բոլորագիր՝ Խորենացու Պատմութիւն, Եղիշէ, Թոմայից հատուած Բարձումայի մասին. ապա նոտրագիր՝ Հարցումն եթէ զինչ է աստեղաբաշխութեան հանճարոյն չափն։

Խորենացին ոչ մի գրքի ցանկ չունի։ Գ. գրքի ԼԶ գլխի «զնախաբարքն նուաճելով» բառերից սկսած (եր. 301, տ. 12). ուրիշ ձեռքով և ուրիշ թանաքով է գրած։ Յիշատակարան չունի։

23. ս. էջմ. № 615 (Յակ. Թոփչեան, Ցուցակ Զ-րաց Խաչիկ վարդ.-ի Դադեան, Վաղարշ. 1898. № 80. ուր և մանրամասն նկարագիր)։ Մեծ. 16×11 հրդմ. նորագոյն ձևի կազմ. թուղթ, բոլորագիր, միասիւն։ Բովանդակութիւն—Խորենացի, Եղիշէ, Թոմայից հատուած Բարձումայի մասին։

Խորենացին ոչ մի գրքի ցանկ չունի։ Գ. գրքի վերջում կայ մի յիշատակարան առանց թուականի. «Ողջ լեր ծառայդ Աստուծոյ հեզահոգի տէր Յովհաննէս և յամենայն ժամ յիշեա և զիս զտառապեալ Մարգարս»։

24. Բացի էջմիածնի վերևում գրած վեց ձեռագրերներից՝ Տ խմբին պատկանում են նաև՝ ա՝, այն Զ-րը, որից ծագում են Թոմաս Վանանդեցու ընթերցուածները Լոնդոնի հրատարակութեան մէջ (տ. § 2), և Վենետիկի օրինակներից երեքը, որոնց մասին յետոյ առանձին։

## Խ (ԽԱՌՆՈՒՐԴ) ԽՄԲԻ ՁԵՌԱԳԻՐՆԵՐ.

25. ց. էջմ. № 1663 (Կար. 1621)։ Մեծ. 25,5×19 հրդմ. կաշեկազմ, թուղթ, բոլորագիր, երկսիւն։ Բովանդակութիւն—Խորենացու Հայոց Պատմութիւն և Աշխարհագրութիւն։

Զ-րի էջ 26 ա. և 72 բ. «Գիրք յիշատակ է Մարտիրոս վարդապետին»։ Աշխարհագրութեան վերջում, էջ 157 բ. «Փառք անհասանելի... որ կարողացոյց զիս... զեղկելի... Կարապետ սուտ անուն ծրագրել զպատմութիւն թագաւորացն մերոց։ Աղաչեմ... յիշելոյ... զՄարտիրոս վարդապետն զքաջ հռետոր և զանյաղթ փիլիսոփայն»։ էջ 158 բ. «Գրեցաւ պատմագիրքս ի յերկիրս Մոկաց ի Գեղս որ կոչի Սուրբ ընդ հովանեաւ սուրբ Յովհաննու Մկրտչին և սուրբ Գէորգեա զօրավարին ձեռամբ սուտ անուն Կարապետիս և որդւոյն իմոյ տէր Յոհանէսին ի թըւականիս մերոյ ՌՁԸ» (=1639)։ Պատմութեան վերջում կայ Ստ. Ասողիկից ցանկի մի փոքր հատուած, որ նոյնն է, ինչ որ Ն Զ-րի մէջ։

վերջը աւելացրած է. «Վա՜յ ինձ հազար բերան գծողիս անարժան, զի օրինակն ցանկ չկէր, և այս միայն էր, անմեղադիր լերուք»։

26. ի. էջմ. № 248 (Կար. 241)։ Մեծ. 19×12,5 հրդմ. կաշեկազմ, թուղթ, նոտրագիր, միասիւն։ Բովանդակութիւն—Խորենացու Հայոց Պատմութիւն և Աշխարհագրութիւն, Ստ. Ասողիկ, Լաստիվերտցի։

Ասողիկի վերջում, Զ-ր էջ 354 յիշատակուած է Գրիգոր գրիչ։ Լաստիվերտցու վերջում, Զ-ր էջ 443 բ. կայ մի ոտանաւոր, որից դնում ենք հետևեալը.

Յորոց և մի հայկազնէին
Մովսէս քերթողն Խորենացին,
Ճըշգրտախօս վիպասանին,
Յոլով ամաց մատենագրին,
Եռահատոր շարադրողին,
Ընդ արուղիմայն և զմարաբին։
Ըստ որում և նոյնք երկրորդողին
Եղեալ են բանք Ըստեփաննոսին,
Տարօնեցւոյ պատմաբանին,
Եռատրոհեալ սարաս նմին։
Ընդ որս պատմիչ սըգացողին
Արիստակեայ մեծ զուժկանին...
Ցանկացողի գրոց սոցին,
Ծախիւք ստացող տենչմամբ սրտին
Մատաթեայ օթձօղ բանին...
Յարարածոց թուականին
ՌՋԶ. ին
Եւ ի ծնընդենէ մերոյ Փրկչին
ՌՈԿ և եռին,
Տոհմիս արմեան թուականին
ՌԲ յորեկինին
Կրկին և զհինգ վերաբարդին.
Զգրիչ գրոցս ասարտ յանին,
Յաւուրս համուր հայրապետին
Տեառն Յակոբայ Սրբազանին...
Գիրքս այս գրեցան... ի Կոտայինըն գաւառին
Ի յերևան նուազ քաղաքին։

Խորենացու Ա. և Գ. գրքերի ցանկերը Ա. գրքի սկզբում են, իսկ Բ. գրքինը՝ իր գրքի սկզբում, որի համար և Ա. գրքի սկզբում կայ ծանօթութիւնս. «Երկրորդ ցանկն գրած է իւր կարգին»։

27. ն. էջմ. № 1668։ Մեծ. 19×13 հրդմ. կաշեկազմ, թուղթ, նոտրագիր, միասիւն։ Բովանդակութիւն—Խորենացու Պատմութիւն, Ագաթանգեղոս, Դաշանց թուղթ։ Յիշատակարան չունի։ Վրան կայ կնիք

ՌՃԺԷ (=1668 Թ.) Թուական կրող։ Սկզբի երեսում. «Թուին ՌՃԻԵ (=1676 Թ.) յունիսի մէկն Ը ժամոյն արեգակն խաւարեցաւ»։ Մանրամասնութիւնը տեսնել այս «Պատմագիրք Հայոց» հրատարակութեան Ագաթանգեղոսի յառաջաբանի մէջ, էջ ԺԴ. հտ.։

28. Է. էջմ. № 1035։ Պատմագիրների ժողովածու, մանրամասն բաղդատուած (տես § 8) և նկարագրուած Ն. Մառից (Изъ лѣтней поѣздки въ Арменію, եր. 43 հտ.։ Նոյնը նաև Записки В. О. т. V. եր. 211—241)։ Դնում ենք միայն կարևորը.

Մեծութիւն իւրաքանչիւր սիւնակի 17×5,8 հրդմ. (իսկ թերթերինը 22×16,25). կաշեկազմ, մագաղաթ, բոլորագիր, երկսիւն։ Բովանդակութիւն—Խորենացու Պատմութիւն, Ստեփանոս Ասողիկ, Լաստիվերտցի, Խորենացու Աշխարհագրութիւն։ Խորենացու Պատմութեան Ա. գրքի վերջում. «Գիրքս պատմութեանց Հայոց հօաքեալ Մովսէսի Խորենացւոյն. զոր ստացաւ Սարգիս անհրեպկս՞ն Սանահնեցի և յետ գրել զսայ յիշատակ իւր և ծնօղցն իւրոց»։ Ա. գրքի վերջում «զՆերսէս գրիչս յիշեցէք»։ Գրքի վերջում. «Փառք... որ կարողացոյց զիս... Ներսէս սուտ անուն ծրագրել զպատմութիւն Թագաւորացն մերոց»... «Գրեցաւ պատմագիրքս ի յերկիրս Լաւրու ի գեղս աւգաւրի [Մառի նկարագրի մէջ անճիշտ կերպով՝ Աւգսորի] ի վայելումն Սարգիս անհրեպիսկոպոսին... Ի սուրբ և ի գերահռչակ ուխտս որ կոչի Սանահին»։

Ըստ Մառի այս Սարգիս եպիսկոպոսը Սանահնի վանահայր է եղել 17-րդ դարում. նրա վանահայրութեան համար յիշատակուած կան 1633 և 1652 թուականները. ի հարկէ նա կարող է 1633-ից առաջ էլ վանահայր կարգուած լինել, ինչպէս և 1852-ից յետոյ էլ վանահայր եղած լինել։ Այս Է Ձ-րն ուրեմն այդ միջոցներում է գրուած։

29. Լ. էջմ. № 249 (Կար. ց. 242)։ Մեծ. 34×25 հրդմ. կաշեկազմ, թուղթ, բոլորագիր, երկսիւն։ Բովանդակութիւն—Խորենացու Պատմութիւն, Ստ. Ասողիկ և Լաստիվերտցի։

Այս Ձ-րը Խ խմբին պատկանող բոլոր Ձ-ների ընդհանուր մայրն է և մեզ յայտնի բոլոր Ձ-ներից ամենահինը։ Յիշատակարաններից երևում է, որ երկու անգամ նորոգուած է, մէկ՝ 1567 թուին Ներսէս վարդապետի պատուէրով Իգնատիոս գրչի ձեռով. մէկ էլ՝ 1684 թուին Բաղիշոյ առաջնորդ Աւետիք վարդապետի պատուէրով Դաւիթ Ճնճղուկ գրչի ձեռով։ Գրքի հին մասի գրչի անունն է Յոհան, իսկ գրութեան տեղն ու թուականն անյայտ են։ Գրքի մեծագոյն մասը հին է և կարող է 14-րդ, գուցէ և 13-րդ դարու լինել։

Խորենացու մէջ մի քանի տեղ, ինչպէս՝ Ձ-ր էջ 9 ա. բ., անթուական յիշատակարաններ կան, յիշատակութեամբ նորոգել տուող Ներսէս վարդապետի և գրիչ Իգնատիոսի։ Բ. գրքի ցանկի վերջում, Ձ-ր էջ 34 բ. «Զշնորհազարդ... Ներսէս բաբունապետ Գնունեցին յիշեցէք... որ աշխատութեամբ ժողովեաց զհնացեալ և զեղծեալ թերթեր սորա և զպակասն ետ գրել»... Մեծ յիշատակարանը Խորենացու Գ. գրքի վերջում, Ձ-ր էջ 132 ա. «Փառք անհասի... որ կարողացոյց զիս...

Իգնատիոս ծրագրել զպակասութիւն գրոցս... Աղաչեմ... յիշելոյ... զՆերսէս վարդապետն և զքաջ հռետորն և զանյաղթ փիլիսոփայն։ Եւ զծնօղսն իւր ըստ մարմնոյ՝ զհայրն զՄեհէրն և զմայրն զՊնքուշն... Եւ արդ գրեցաւ պակասութիւն գրոցս մինչև ցայս վայր և աստի յառաջ այլ օրինակ ոչ կայր, որ գրէի։ Բայց գրեցաւ այսքան բանքս յերկիրս Ծիզնայ ի մեծ թվականիս հայոց ի Ռ և ԺԶ ամի (=1567), ի գիւղս որ կոչի Ղարասու, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս որ յանուն սրբոյն Գէորգայ զօրավարին կառուցեալ կայ։ Ի Հայրապետութեան մերոյ Աղթամարայ Տեառն Գրիգորի և սրբոյն Էջմիածնի Տ''ր Միքայէլին... յիշման արժանի առնէք... զեղկելի գծօղս, զԻգնատիոս... Դարձեալ յիշեցէք զՆերսէս բաբունին, որ ետ վերստին նորոգել զգիրքս զայս... և եդ ի դուռն խնդրակատար Սուրբ Աստուածածնին»։

Նորոգողի զանգատը թէ «աստի յառաջ այլ օրինակ ոչ կայր, որ գրէի», վերաբերում է Ասողիկի ցանկերին, որ դրուած են Խորենացուց յետոյ և թերի են։ Վերևի յիշատակարանի տակին կայ մի ուրիշը. «Դարձեալ յիշեցէք... զքաջ բաբունին զԱւետիք վարդապետ, զանուշ և զառաջնորդ մայրաքաղաքին Բաղիշոյ, որ վերստին ետ նորոգել զսուրբ գիրքս... ի թվականին ՌՃԼԳ (=1684) և դարձեալ ետ յիշատակ ի դուռն խնդրակատար վանից Տիրամայր Սուրբ Աստուածածնին... Նորոգեցաւ և կազմեցաւ վերստին սուրբ տառս... ձեռամբ... գրչի Դաւիթ մեղապարտ Ճնճղկի և որդւոյն իմոյ Ստեփանոս սարկաւագի»։

Այս երկրորդ նորոգութիւնը Դաւիթ Ճնճղուկի ձեռքով, ինչպէս երևում է, վերաբերում է Խորենացու կողքի լուսանցքների մաշուածներին, որոնք նոյնպէս տեղ տեղ նորոգուած են տարբեր տարբեր ձեռքերով. թէ չէ՝ ամբողջ Խորենացին իսկապէս գրուած է երկու տեսակ թղթի վրայ և երկու ձեռքով. մի մասն Իգնատիոս գրչից օրինակուած, միւս մասը հին, Յոհան գրչից։ Հին գրչութեամբ են նաև Ստեփանոս Տարօնեցին (որի սկզբի ցանկերը, տեսանք, առանց նորոգուելու և թերի են մնացել) և Արիստակէս Լաստիվերտցին, որ վերջանում է այսպէս. «Վաղ ժամանել քան զչարժել պատուհասին և ընդդէմ կալ»։ Հաւանօրէն սկզբնապէս Լաստիվերտցուց յետոյ եղել է և Խորենացու Աշխարհագրութիւնը, որ այժմ չկայ Ձ-ըի մէջ։ Հին գրութեան յիշատակարան կայ Ասողկի վերջում «յոհան գրիչ» յիշատակութեամբ, բայց առանց թուականի։

Խորենացու Ա. գրքի սկզբում (որ նորոգած մասից է), ցանկից անմիջապէս յետոյ կայ մի պատկեր. վերևում մի կողմից նստած է Խորենացին գլխարաց, գրիչը ձեռին, դիմացը գիրք. միւս կողմից նստած է մի թագապսակ անձ. ներքևում կայ մի ծնկաչոք ծերունի, գլխի փաթթաթանով։ Պատկերի տակին գրած է. «Սահակ Բագրատունին խնդալն Մովսէս Խորենացոյ բան»։

Խորենացու նորոգած մասը պատկանում է Տ խմբին, իսկ հին մասը՝ Ա. խմբին։ Որովհետև այս Ձ-ըը մայր է բազմաթիւ Ձ-ների, ուստի ներքևում դնում եմ, թէ ո՛ր հատուածը, ներկայ հրատարակութեան երեսներով և տողերով, Տ խմբին է պատկանում, և ո՛րը՝ Ա. խմբին։

Տ. 1,1 Ա. գրքի ցանկից մինչեւ զրդեչխութիւն կողմանցն ար—71,1
Ա. 71,1 —ժանաւորեցան առնուլ —պատճառս տալ անբան—90,3
Տ. 90,3 —ութեան նոցա, և —որոյ եկեալ և 129,11
Ա. 129,11 ոչ պատահեալ Տիգրանայ —և այլ բազմութեան հրէից։ 132,18
Տ. 132,20 յետ այսր ամենայնի —ի ծածուկ ընտանեօքն հանդերձ 135,1
Ա. 135,1 առ եղոմայեցիս փաղչէր—ամենայն ազգաց հիւսիսակ—221,19
Տ. 221,19 —ան առաջնոց ասեմ իսկ —Արբոկ սպանանել զՄամգոնն 222,5
Ա. 222,5 զոր իմացեալ —իւր որ ի Հայս և յղ—222,12
Տ. 222,12 —է առ Թագաւորն Ճենաց —զի քան զամենայն 222,18
Ա. 222,18 բնակեալս ի վերայ —սակաւուց ճաշակելիս 223,7
Տ. 223,7 զփասեան և զպոր — հանդիպեցաւ զալ—223,11
Ա. 223,12 —ըստեանն Տրդատայ —վասն որոյ մանրա—224,4
Տ. 224,5 —խուզիւ քննեալ —արդարև համբեր ժու—224,9
Ա. 224,9 —ժկալ և առաւել իմաստուն—հայրենականացն հասե—224,17
Տ. 224,17 —լոց փառաց —յորմէ և աշակերտեալ 227,8
Ա. 227,9 հաւատաց, զրանաւորան—ի վերայ հորոյն կախ—296,13
Տ. 296,13 —ել զփայտէ —որ սուղեալ և ղաւղեալ 322,19
Ա. 322,20 եին յանյայտ տեղիս —վերակացուք ան—365,11
Տ. 365,11 հարթարարք, անողորմք մինչեւ վերջ։

Պէտք է նկատել սակայն, որ Ա. խմբին պատկանող հատուածներում տեղ տեղ նորոգուած են նաև աջ ու ձախ լուսանցքները, յաճախ վերևից մինչև ներքև. երբեմն նաև երեսների մէջերը։ Այս պատճառով այս մասերում ևս երբեմն Տ խմբի հետ է միանում այս Ձ-ը։ Այս մանրամասների նկարագիրը թողնում եմ։

Ի վերջոյ յիշեմ, որ այս Լ Ձ-ի հին մասը գրուած է հին ուղղագրութեամբ. օ ձայնաւորի փոխանակ ունի աւ, իւ երկբարբառի տեղ՝ եւ (ինչպէս՝ առեւծ, արեւն, ութեւն ածանցը), բայերի անկատարն ունի եի, եիր ևյն. նոյնպէս՝ թե և նմանները. դերանունների վերջում յ—նմայ ևյն։

30. ո. էջմ. № 1661 (Կար. ց. 1619)։ Մանրամասն նկարագրուած է Գ. Տ.-Մկրտչեանից «Հայագիտական Հանդէսում», 1904, էջ 269—270, և այս «Պատմագիրք Հայոց» հրատարակութեան Ագաթանգեղոսի յառաջաբանում. էջ ԺԵ. 10, որից դնում ենք կարևորը.

Մեծ. 31×23, կաշեկազմ, թուղթ, նոտրագիր, երկսիւն, ընդամենը 554 թերթ։ Ձեռագրիս ստացողն է Մինաս վարդապետ (էջ 517 բ.). գրիչներ՝ Թումա (էջ 441 բ.) և Գրիգոր քարտուղար։ Յիշատակարաններ. «Գրեցաւ թվին ՌՃԻԵ ի գիւղն Ալիփուղար ձեռամբ Գրիգոր քարտուղարի (էջ 365 ա.)։ էջ 111 ա. «Ով հայր սուրբք, Նարին վարդապետն զքահանայքն որ մատնեաց ի ձեռն Ղափլան փաշային՝ ես փախստական և անճարակ տեղի նստեալ գրեցի զայս տետրս. Թվին էր ՌՃԻԷ փետրվարի ամսոյն ԺԶ, օրն շաբաթ»... Ուրեմն ձեռագիրս գրուած է ՌՃԻԵ—ՌՃԻԷ (=1676—1678) թ.։

Այս ստուար և մեծադիր Ձ-ը պատմիչների ժողովածու է և

պարունակում է—Խորենացի, Ասողիկ, Լաստիվերցի, Եւսեբիոսի Եկեղեցական պատմութիւն, Ագաթանգեղոս, Դաշանց թուղթ, Մեսրոբ երէց, Զենոբ, Յովհան Մամիկոնեան, Փաւստոս, Եղիշէ, Օրբելեան Ստեփան, Միխայէլ Ասորի, Վարդան, Կիրակոս, Սոկրատի Եկեղեցական պատմութիւն։

31. Կ¹ Էջմ. № 1379։ Այս Ձ-րը Կարենեանցի բաղդատած առաջին ձեռագիրն է (տես § 7)։ Մեծ. 28×21, կաշեկազմ, թուղթ, նոտրագիր, երկսիւն։ Բովանդակութիւն—1) Մովսէս Խորենացու Պատմութիւն. 2) Մովսէս Խորենացու Աշխարհագրութիւն. 3) Ուրիշ աշխարհագրական հատուածներ. 4) Յառաջաբաններ՝ Մատթէոս Ուռհայեցու, Կիրակոս վարդապետի, Միխայէլ Ասորու, Փաւստոս Բիւզանդի, Թոմա Մեծոփեցու (ինչպէս միայն Թոմայի մասին տեղեկութիւններ). 5) Մեսրոպ քահանայի Ծաղկաքաղ ի Հայոց Յաւգորդաց յարենէից գրոց. 6) Կիրակոս Գանձակեցու Պատմութիւն (ոչ ամբողջ). 7) Պատմութիւն վասն սքանչելեաց պատկերին Քրիստոսի. 8) Զենոբ և Յովհան Մամիկոնեան. 9) Դաշանց թուղթ. 10) Պատմութիւն վասն գիտելոյ զպատճառ բերելոյ Ծիծառնէոյ Խաչին. 11) Յովհաննէս Մամիկոնեանի վերջին գլուխը՝ Վասն մահուան Տիրանայ. 12) Յաղագս պատմութեան սուրբ ա"ծային իւղոյն... և վասն մարմնոյն սուրբ Յովհաննու Կարապետին. 13) Վասն մեծի նախարարութեանն Օրբելեանց... (Ստ. Օրբելեանից). 14) Սամուէլի քահանայի հաւաքմունք. 15) Պատմութիւն համառօտ անօրէն Թամուրին—Թոմայ վարդապետի. 16) Վասն միաբանութեան Հայոց և կաթողիկոս ձեռնադրութեան. 17) Պատմութիւն մեծի րաբունապետին Թոմայի, զոր արարեալ Կիրակոս բանասէր վարդապետի. 18) Մկրտիչ Նաղաշի կենսագրութիւն—գրած Աստուածատուր վարդապետի։

Խորենացու Աշխարհագրութեան վերջում, եր. 238. «Եւ զեղկելի գրիչս յիշեցէք ի տէր։ Մանաւանդ զամենամեղ և զապիկար Մարտիրոս լոկ անուամբ սպասաւոր բանի, որ և ստացող և ուղղող ըստ կարի տկարութեանս»։ էջ 278. «Յիշատակ է պատմագիրքս Մարտիրոս վարդապետին ի դուռն ս. Կարապետին, որ է ի գաւառն Տարօնոյ»...։ էջ 707. «Ի թվին ՌՀԳ (=1624) գրեցաւ պատմագիրքս յոյժ զանազոյն աշխատութեամբ և փոփոխմամբ անհմուտ գրչաց և անհանգիստ տատանմամբ ի գաւառէ ի գաւառ, հալածելով ի ձեռաց մահմետականաց»...։ Վերջից էջ 314—318 զանազան յիշատակարաններ, որոնցից մէկը (տառնաւոր) պատմում է, թէ Մարտիրոս վարդապետը հայոց հազար վաթսուն և երեք (=1614) թուին նորոգել է Ղազարու վանքը. մի ուրիշը՝ (դարձեալ տառնաւոր), թէ Վարդան վարդապետ Բաղիշեցին այս գիրքը, «անկեալ ի գրաւի», ազատում է Հայոց հազար հարիւր տասներեք (=1664) թուին։ Ապա մի ընդարձակ յիշատակարան, Բաղիշեցի Վարդան վարդապետի ձեռով, ինչպէս երեւում է յետագայում գրած, թէ ՌՃԺԳ թուին գալով Ղազարու վանքը՝ նորոգութիւններ և նոր շինութիւններ է անում և «զայս գիրքս և այլս և որ գրաւ էր ի ձեռս բրդաց Աստուծով ազատեցաք և տվաք զսա յիշատակ... ի դուռն սուրբ առաքելոյս։ Եւ որչափ հին և փտեալ գրեանք կայր ի վանքս... Լ գիրք

և այլ աւելի տվաք նորոգել և կազմել ձեռամբ Սահակ վանեցի վարպետին ի թվին ՌՃԻ» (=1671 թ.)։ Թողնում ենք ուրիշ յիշատակարանները։ Այս գրքի պատմութեան մասին՝ տեսնել նաև Կարինեանցի Բաղդատութիւնը։

32. Վ. Զ-ը Կարապետ Եզեանի (այժմ Մեսրոպ եպիսկոպոս Տ.-Մովսիսեանի մօտ)։ Մանրամասն նկարագրուած է Ստ. Մալխասեանից (տես Ասողիկ, Պետերբուրգ 1885, յառաջաբան, էջ ԼԲ—ԼԹ). համառօտ այս հրատարակութեան Ագաթանգեղոսի յառաջաբանում (էջ ԻԵ հտ.), որից դնում ենք կարևորը.

Մեծ. 27,5×20 հրդմ. կաշեկազմ, թուղթ, նոտրագիր, երկսիւն։ Բովանդակութիւն—ընդ ամենը 18 պատմագիր։ Աբրահամ գրչից են առաջին 11 պատմագիրները—Խորենացի, Ասողիկ, Լաստիվերտցի, Եւսեբիոսի Եկեղեցական պատմութիւն, Ագաթանգեղոս, Դաշանց թուղթ ևլն։ Թուականով յիշատակարանը. «Գրեցաւ ձեռամբ Աբրահամ անարժանի ի Տիգրան քաղաքի ի մատրանին Սարգսի ՌՃԺԷ (=1668) թվականին»։

Խորենացու Գ. գրքի ԿԶ գլխի մէջ, «ապագայից յայտնութիւնք» բառերից յետոյ հագցրած է տեսլի նկարագիր և ապա մեկնութիւնը (տ. այս հրատ. եր. 354,18 և ծանօթութիւն)։

33. Հ. Աղթամարի վանքի Զ-ը, որի համեմատութիւնն ու նկարագիրը ստացել ենք 1903 թուի յունիսի 20-ին մեր աշակերտ Ճեմարանաւարտ, այժմ հանգ. Հ. Հացագործեանից։ Դնում ենք նրա ուղարկած նկարագրից կարևորը.

Մեծ. 19×12,5 հրդմ. թերթ 202. կաշեկազմ, կողերը թանձր թուղթ, վրան կտաւ, հիմքը ոսկեզօծ. թուղթ, բոլորագիր, միասիւն։ Բովանդակութիւն՝ միայն Խորենացու Հայոց պատմութիւն։ «Կը պակասի Վենետկի 1827 թուի հրատարակութեամբ 519 երեսի (վերէն հաշուելով) 16-րդ տողի «գիտութիւն» բառէն մինչև 522 երեսի վ. հ. 12-րդ տողի («համանգա)մայն» բառը (ձեռագրի մէկ թուղթ 191-ի և 192-ի մէջտեղը) և Ողբէն 552 երեսի վ. հ. 18 տողի («հաւա)սարելով տրտմութեան»—էն մինչև վերջ... Գրիչ, տէր, տեղ, թիւ ևլն անյայտ»։

34. Խ խմբին պատկանում է նաև Մառի նկարագրած № 1 Հայկ. Ջեռ. Ճեմար. Արևելեան լեզ. ՊԲԳ, որ նշանակում ենք ƨ տառով։ Գրութեան թուականն է ՌՃԺԷ (=1668 թ.)։ Հաստ թուղթ, 219 թերթ. մաքուր բոլորգիր. գրել է Յովսէփ վարդապետ ի գիւղաքաղաքն Աստապատ։—Այս Զ-րից մենք բաղդատութիւն չունինք, բայց Մառի նկարագրով յար և նման է Սանահնի օրինակին (Էջմիածնի k. № 1035 Զ-րին, տ. § 28), որ Խ խմբի Զ-իր է։ («Հանդ. Ամս.» 1892, էջ 45)։

Այս խմբի մէջ են մտնում նաև Վենետկի օրինակներից երեքը, որոնց մասին առանձին։

35. Այս բոլոր Զ-ների ընդհանուր մայրը, ինչպէս վերևում դրի,

Էջմիածնի մատենադարանի Ղ (№ 249) Ձ-րն է։ Այդ պարզ երևում է հետևեալ հանգամանքից. որ հատուածը որ Ղ-ի մէջ նորոգած է Տ խմբի վրայ՝ այս բոլոր Ձ-ներն եւ նոյն տեղում միանում են Տ-ի հետ. իսկ որ հատուածը որ Ղ-ի մէջ մնում է հին գրչութիւնից, որ Ա-ի հետ է՝ նոյն տեղում այս բոլոր Ձ-ներն եւ Ա-ի հետ զոյգ են ընթանում իրենց ընթերցուածներով։ Այս այնքան պարզ ու որոշ է, որ մանրամասնութիւնների մէջ մտնելը աւելորդ եմ համարում. միայն չպէտք է մոռանալ, որ Ղ Ձ-րի մէջ, ինչպէս վերևում ասացի, Ա խմբին պատկանող հատուածների մէջ եւ տեղ-տեղ երեսի կողքերից, կամ մէջերից, նորոգուած են Տ-ի վրայ. ուրեմն երբեմն հին հատուածների մէջ եւ ԱԽ խմբակցութեան հետ փոխէփոխ կազմում է ՏԽ խմբակցութիւնը։ Երբեմն էլ այսպիսի ՏԽ խմբակցութիւնները պատահական են, ինչպէս բաց թողած յօդեր, տառեր եւն, որ ամեն Ձ-րի մէջ կարող են լինել. բացի այդ՝ Ղ-ից ծագող Ձ-ները երբեմն ուղղուած են այս կամ այն Ձ-րի վրայ։

Խնդիրն այն մասին չի կարող լինել, թէ արդեօք այս Ձ-ների ընդհանուր մայրը Ղ Ձ-րն է թէ ոչ, այլ միայն այն մասին, թէ դրանք անմիջապէս Ղ-ի՞ց են ծագում, թէ կան այնպիսիները, որոնք ծագում են Ղ-ից միջնորդաբար, մեզ յայտնի կամ անյայտ Ձ-ներից օրինակուած լինելով։ Այս որոշելու համար շատ հիմունքներ կան, բայց այդ համարում եմ աւելորդ աշխատանք. ուստի մի երկու կէտ միայն յիշելով բաւականանանք։ Եր. 75 տ. 6 Ղ Ձ-րի բնագիրն ունի «ժամանակս», լուսանցքում ուրիշ ձեռքով ուղղած է «ժամս». Է Ձ-րի բնագրի մէջ արտագրուած է Ղ-ի թէ բնագրի մէջ եղածը և թէ լուսանցքում ուղղածը՝ իբրև «ժամս ժամանակս»։ Նոյն եր. 75, տ. 12. Ղ Ձ-րը բնագրում գրած է «թուեալ», գլխին աւելացրած է «էր պատ», բայց «թուեալ» բառի ու-ի տակ և «պատ» բառի տ-ից յետոյ նշան է դրած, որ հասկացուի «թուէր պատեալ». Է Ձ-րի գրիչը չհասկանալով նշանները՝ արտագրել է նախ գլխին գրածը, ապա տակինը՝ իբրև «էր պատ թուեալ»։—Եր. 273, տ. 3 Ղ Ձ-րն ունի «սատակեցաւ». ց Ձ-րն ունի «սատակի» ըստ ԱԽ Ձ-ների, բայց լուսանցքում ուրիշ ձեռքով ջնջած է «մեռանի». Հi Ձ-ները բնագրի մէջ ունին ց-ի լուսանցքում ուղղածը՝ «մեռանի»։ Դարձեալ եր. 281, տ. 16 ց Ձ-րի մէջ «Տիրանայ» բառի վերջը «անայ» քերած է, իսկ i Ձ-րն ունի միայն «Տիր»։ Տես նաև եր. 298, տ. 1. եր. 326, տ. 18, 19։ Այսպէս և ց Ձ-րի մէջ կան բաւական քերածներ կամ բարձման նշանով գրուածներ, լուսանցքներում ուղղումներ եւն, որոնց հետևում է Է Ձ-րը։— Եր. 252, տ. 21. Ղ Ձ-րը բնագրում ունի «աւերեցաւ», բայց լուսանցքում ուղղած է «կոտորեցաւ». թ Ձ-րը բնագրում ունի «կոտորեցաւ աւերեցաւ», այսինքն Ղ-ի լուսանցքի ուղղումը մտցրած է բնագրի մէջ, պահելով միւս բառն եւ։ Այս և նման շատ հանգամանքներով կարելի է որոշել Խ խմբի Ձ-ների Ղ-ից ծագման յարաբերութիւնները, բայց ես այդ աւելորդ եմ համարում. ուստի անցնենք ուրիշ Ձեռագիրներին։

36. Վենետիկի 1843 թ. տպագրութեան զեկուցումի մէջ, տեսանք

(§ 3), յիշուած են վեց անթերի օրինակներ։ Մի նամակով հ. Ա. Ղազիկեանից մի քանի ծանօթութիւն խնդրեցի այդ օրինակների մասին. իբրև պատասխան շնորհակալութեամբ ստացայ հ. Բ. Զրաքեանից հետևեալը, որ դնում եմ այստեղ.

«Հ. Արսէն վ. Ղազիկեանի յանձնարարութեան համաձայն քննեցի մի առ մի Խորենացւոյ Հայոց պատմութեան մեր մատենադարանի Ձ-ները, պատասխանելու համար Ձեր... Նամակի մէջ բովանդակուած հարցումներուն։ Կը ցաւիմ սակայն, որ քննութեան արդիւնքը բոլորովին գոհացուցիչ պիտի չըլլայ Ձեզ, քանի որ 1843-ի հրատարակուած «Մովսէս Խորենացւոյ Մատենագրութիւնք» զեկուցումին մէջ, Հայոց պատմութեան վերաբերեալ «անթերի վեց օրինակները» կարելի չեղաւ ամբողջապէս ստուգել և որոշել։ Վասն զի վանուցս գրչագիրներու անտիպ ցուցակին մէջ ութ ամբողջական օրինակք միայն կը յիշուին Մովսէս Խորենացւոյ Հայոց Պատմութեան. որոնցմէ երեքը զանազան Ձ-ներու հետ համեմատուած եւ ուղղագրուած տպագրութիւններ են։ Յիշուած չէ թէ համեմատութեան համար ծառայող այդ Ձ-ները երբ գրուած են և ուր կը գտնուին. հետևաբար անոնց մասին չունիմ հաղորդելիք մանրամասնութիւն. հաւանական կը համարիմ որ Զեկուցումի մէջ յիշատակուած ՁՃԲ թուականի գրչագիրը տպագրին հետ համեմատութիւններէն մին ըլլայ։ Մնացած հինգ գրչագիրներու թուահամարները և այլ ծանօթութիւնքը ըստ Ձեր փափագին կը դնեմ հոս.

ա. Օր. Թիւ 1530. բոլորգիր, կըբովանդակէ Խորենացի, Եղիշէ, Լևն։ Գրութեան տեղը՝ Երնջակ, ի գեօղն Շօռօթ։ Ժամանակ՝ ՌՃԺԳ=1664։ Գրիչ ?։ Կընդօրինակեմ մաս մը յիշատակարանէն... «աւարտ եղև յայսմ տարի՝ ի Թվականիս հայոց սեռի. երկքառեակ և երկհարիւրի. երկյոբելեան և երկհնգեակ ի նոյն յարի. և երրեակ թիւ այլ յարաբարդի։ Ամսեանն Յունաց Ապրիէլի, եռեակ, հնգեակ և քառակի, և թիւ մի այլ աւելի. երկիրս Երնջակ առի ի վիճակն սուրբ Կարապետի. առաջնորդութեան տեառն յեսայի՝ հեղահոգի վարդապետի և կաթղիկոսութեան Հայոց սբ Էջմիածնի՝ յակոբայ բաբունապետի. գծագրեցաւ տառս ցանկալի՝ ասացեալ Եղիշէի Թարգմանողի, ի գեօղն Շօռօթ վերակոչի ի դուռն սուրբ Աստուածածնի՝ ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչին»... Օրինակս ունի Բ. գիրք Ը գլուխի վերնագիրը. սակայն լուսանցքի մէջ փոխանակ Ը նշանակելու, կը դնէ Է։ Զունի Գ. գրքի ցանկը»։ —

Ըստ Մեսրոպ եպիսկոպոս Տ.-Մովսիսեանի ցուցակին՝ Վենետիկի այս № 1530 Ձ-րը գրած է ՌՃԺԳ—Դ թուին, ստացողն է Արիստակէս վարդապետ. «եւ ի դուռն Ս. Ստեփաննոսի Նախավկային, որ Շամբի ձոր յորջորջի. առաջնորդ. տն Միքայէլի աստուածաբան վարդապետի. ՌՃԻ թուին (1671)։ Բովանդակում է՝ ա) Մովսէս Խորենացու Պատմութիւն. բ) Պատմութիւն Եղիշէի. գ) Հատուած Թոմայի. դ) Բառգիրք աշխարհագրական. ե) Հայելի վարուց։—

«բ. Օր. Թիւ 869. նօտրգիր. Խորենացի, Ասողիկ և Սամուէլ երէց։ Գրութեան տեղի Բաղէշ։ Ժամանակ ՌՃԼԲ—Գ=1683—1684։ Գրիչ Դաւիթ Ճնճղուկ։ «Ի վայելումն Մոկացի Ստեփաննոս վարդապետի

ի Բաղէշ քաղաքի՝ ի դուռն Ս. Կիրակոսին»։ Սա ևս ունի Բ. գիրք Ը գլխի վերնագիրը։ Զունի ի վերջ ցանկին «Տաղք չափաւբը»։—

Մեսրոպ եպիսկոպոս Տ.-Մովսիսեանի ցուցակից կարևոր եմ համարում աւելացնել. «Յիշեցէք զանեզերալոյս վարդան վարդապետն, որ ի սոյն ամի գնաց յերուսաղէմ ԺԸ. արամբ, որ զայս գ պատմագրաց օրինակն ետ. լաւ և ընտիր ստբագրեաց գրով»։ Բովանդակութիւնն է՝ ա) Պատմութիւն Խորենացւոյ. բ) Տումար. գ) Ասողիկ. դ) Սամուէլ երէց։

Այս Զ-րի գրիչ Դաւիթ Ճնճղուկը նոյն անձն է, որ Բաղիշոյ առաջնորդ Աւետիք վարդապետի հրամանով նոյն 1684 թ. նորոգում և կազմում է Խորենացու հնագոյն Զ-րը՝ Ղ (տես § 29)։ Վենետիկի այս Զ-րը պատկանում է, ինչպէս կը տեսնենք (§ 38), Տ խմբին, ուստի և չի կարող նոյն գրչի ձեռքով նորոգուած Ղ Զ-րից ծագած լինել. այլ ընդհակառակն այս Ղ Զ-րը երկրորդ անգամ նորոգուել է, ամենայն հաւանականութեամբ, Բաղիշեցի Վարդան վարդապետի տուած այն լաւ և ընտիր Զ-րից, որից օրինակուած է Վենետիկի № 869 Զ-րը։

«գ. Օր. Թիւ 200. բոլորգիր. Խորենացի և Եղիշէ։ Գրութեան տեղի?, ժամանակ ՌՃԹ=1660. Գրիչ Ալեքսան։ Սա ևս ունի Բ գիրք Ը գլխի վերնագիրը։ Զունի Դ գրքի ցանկը։

«դ. Օր. Թիւ 1023, բոլորգիր Խորենացի և նոտրագիր Միխայել Ասորի եւն։ Գրութեան տեղի?, ժամանակ?, գրիչ?։ Ունի Բ. գրքի Ը գլուխի վերնագիրը այսպէս. «Երկրորդ թագաւորութեան լինել ի զաւակէ Արշակայ Մարաց թագաւորին». և փոխանակ Ը նշանակելու, կդնէ Է։ Զունի ի վերջ ցանկին «Տաղք չափաւբը»։—

Ըստ Մեսրոպ եպիսկոպոսի ցուցակի՝ բովանդակում է՝ ա) Խորենացի (բոլորգիր). բ) Միխայել Ասորի (նոտրգիր). գ) Դաշանց Թուղթ (բոլորգիր). դ) Սամուէլ Անեցի (բոլորգիր)։—

«ե. Օր. Թիւ 1156. բոլորգիր, Խորենացի և Ասողիկ. գրութեան տեղի?, ժամանակ?, գրիչ?։ «Ղազարոս Ղայսարցի ստացայ զգիրս պատմութեան Մովսէս Խորենացւոյ՝ ի հայրապետութեան երկից երանեալ տեառն Փիլիպպոսիս... և ի թագաւորութեան փոքր Շահապաղիս ի դառն և ի նեղ ժամանակիս ի թուականութեանս հայոց ՌՃ և Բ ամին (=1653 թ.), ի յերկիրս արարատեան»... Ունի Բ. գիրք Ը գլխի վերնագիրը, որ ի սկզբան կարմրադեղով՝ յետոյ սև թանաքով վրայէն անցած. Ը գիրը չի տեսնուեր լուսանցքի մէջ, այլ կայ քերթուած անորոշ գիր մը. յաջորդ գլուխը կը կրէ Ը։ Ունի ի վերջ ցանկին «Տաղք չափայինք և ի Սահակ Բագրատունի», սակայն չերևիր տաղը ի վերջ գրոց»։

«Խորենացւոյ Հայոց Պատմութեան ամբողջ այս հինգ օրինակներէն զատ, կը գտնուին երկու ճառընտիրներու մէջ մի քանի հատուածներ. 1) Յաղագս Նունէի. 2) Յաղագս Ժողովոյն Նիկիոյ. 3) Յաղագս Ժողովոյն Կոստանդնուպոլսի, Բ. Ճառընտրի մէջ, որ ԺԲ դարու գրչութիւն է հաւանօրէն։ Հատուած մ'ալ «Յաղագս Գրիգորի Լուսաւորչի», ի Ճառընտրի Ը, որ գրուած է ի թուականին ՉՂԱ—Բ»։—

37. Վենետիկի 1843-ի տպ. մէջ յիշուած վեց անթերի օրինակների մը

խմբին պատկանելը ճիշտ որոշւում է նոյն տպագրութեան մէջ բերուած ընթերցուածներով։ Բ. գրքի Ը գլխի վերնագրի և սկզբի հատուածի (տ. § 9) մասին կայ հետևեալ ծանօթութիւնը. «Հատուածդ՝— երկրորդ թագաւորութեանն լինէր ի զաւակէ Աշգահակայ Մարաց եղելոյ թագաւորի—չիք յերիս ընտրելագոյն օրինակսն. և ի միւս երկուսին օրինակսն չիք Ը գլխակարգութիւնդ (այսինքն գլխի վերնագիրը), այլ միահետ կցի ընդ նախընթաց գլխոյն»։ Այս ծանօթութիւնից երևում է, որ վեցերորդ օրինակը, որ ծառայել է տպագրի համար իբրև բնագիր՝ ունեցել է թէ Ը գլխի վերնագիրը և թէ սկզբի պակասած հատուածը, այսինքն այնպէս է եղել, ինչպէս տպուած է բնագիրը (տ. § 9)։

Այն երկու օրինակը, որոնք չունին Ը գլխի վերնագիրը, բայց ունին սկզբի պակասած հատուածը՝ համեմատ են Էջմիածնի մատենադարանի Ա. խմբի Զ-ներին։ Եւ իսկապէս 1843-ի տպագր. մէջ բերուած բազմաթիւ ընթերցուածներով Վենետկի երկու օրինակ միանում են Էջմիածնի Ա. խմբի Զ-ների հետ։ Այս երկու օրինակը սակայն չկան Վենետկի այժմեան հինգ Զ-ների մէջ, քանի որ այժմեան հինգ Զ-ներն էլ, ինչպէս վերևում գրուածից (§ 36) տեսնւում է՝ ունին Բ. գրքի Ը գլխի վերնագիրը։

Այն երեք օրինակը, որոնք ունին Ը գլխի վերնագիրը, բայց չունին սկզբի հատուածը՝ դրանով համեմատ են Էջմիածնի ՏԽ խմբերի Զ-ներին. թէ այս երկու խմբից որին են պատկանում, այդ որոշւում է Գ. գրքի ցանկի վերջում դրած ծանօթութիւնից, թէ «Յերկուս օրինակս որք ունին զցանկս գլխոց, ի կատարածիս կայ և գլուխ այսպիսի՝ Տաղք չափաւ յինք և ի Սահակ Բագրատունի»։ Կընշանակէ այս երեք օրինակից երկուսը Խ խմբին են պատկանում։ Եւ իսկապէս 1843-ի տպագրութեան մէջ բերուած բազմաթիւ ընթերցուածներով Վենետկի երկու օրինակ միանում են Էջմիածնի Խ խմբի Զ-ների հետ։ Այս երկու օրինակից մէկը սակայն դարձեալ չկայ Վենետկի այժմեան հինգ Զ-ների մէջ, քանի որ, ինչպէս վերևում գրածից (§ 36) տեսնւում է՝ նրանցից միայն № 1156 ունի այդ «Տաղք չափաւ...» յաւելուածը։

Այսպէս ուրեմն 1843-ի տպագրութեան ժամանակ բանեցրած վեց անթերի օրինակներից երեքը,—երկուսն Ա. խմբի, մէկը՝ Խ խմբի,— չկան Վենետկի այժմեան հինգ Զ-ների մէջ։ Դրանք են ՉԾԲ (=1303) և ՌՃՀ (=1671) թուականները կրող, և մէկն անյայտ թուականով, օրինակները, որ յիշւում են 1843-ի զեկուցումի մէջ. այժմեան հինգ Զ-ներից ոչ մէկը չի կրում 1303 կամ 1671 թուական։ Այս պակասած օրինակներից 1671 թուականինը կարող է և Ա. խմբի և Խ խմբի օրինակ լինել (որովհետև Խ խմբից էլ մի օրինակ չկայ այժմ). իսկ 1303 թուականինն անպայման Ա. խմբի օրինակ է եղել և ոչ Խ խմբի, քանի որ այս վերջին խմբի մայրը՝ Լ Զ-րն առաջ է եկել 1567 թուին։

Որովհետև դժուար է ենթադրել, որ Վենետկի Մխիթարեան Գրադարանից 1843 թուից դէսը երեք Զ-իր դուրս եկած լինին՝ հաւանական եմ համարում, որ այս պակասած երեք Զ-ները նոյն Գրադարանի այժմեան «երեք զանազան Զ-ներու հետ համեմատուած և ուղղագրուած տպագրութիւններն» են եղել, որոնք համարուել են Զ-իր օրինակի

հաւասար և գրչագիրների անտիպ ցուցակի մէջ գրուած են «ութ ամբողջական օրինակների» մէջ։ Դրանցից 1303 թուականի Զ-րի համար, մեր հ. նամակագիրն արդէն յայտնում է այդ հաւանականութիւնը։ Թէ ինչ Զ-ների բաղդատութիւններ են դրանք՝ յայտնի չէ ըստ մեր հ. նամակագրի։ ՉԾԲ (=1303) թուականի Զ-իր մեզ յայտնի չէ. իսկ ՌՃԻ (=1671) թուականը կրում են մեզ յայտնի Զ-ներից Կ$^{2}$ Զ-րը, որ Ա. խմբին է պատկանում, և Արմաշի վանքի № 185 Զ-րը. սրանցից մէկի վրայ կարող է եղած լինել Վենետիկի այս օրինակներից մէկի բաղդատութիւնը։ Այդ երեք բաղդատուած տպագիրները, ըստ Մեսրոպ եպիսկոպոս Տ.-Մովսիսեանի ցուցակի, ունին Մատենադարանի ցուցակում հետևեալ թուահամարները. 1) Գ. 36 Թ. Է. Ուղղագրեալ ընդ տպագրին ի ձեռն դպիր Գ. Յովհաննիսեան. 2) Ե. 39 Թ. Է. Ուղղագրեալ ի վերայ փոքր տպագրին Վենետկոյ, ըստ հին Զ-րի իրիք. 3) Ժ. 23 Թ. Է. Բաղդատութիւն ընդ տպագրին։

Վենետիկի այժմեան հինգ Զ-ներից երեքը միայն 1843-ի ցեկուցումի մէջ յիշուած «վեց անթերի օրինակներից» են. դրանք են՝ № 869, որի գրութեան թուականն է ՌՃԼԲ—Գ (=1683—4 թ.), որ և յիշուած է նոյն զեկուցումի մէջ. № 200, որի գրութեան թուականն է ՌՃԹ (=1660 թ.), որ նոյնպէս յիշատակուած է նոյն զեկուցումի մէջ. և ապա № 1156, որի գրութեան թուականը յայտնի չէ. բայց դա այն երկու Զ-ներից մէկն է, որ Գ. գրքի ցանկի վերջում ունին «Տաղբ չափաւ...»։ Կը նշանակէ 1843 թուի տպագրութեան ժամանակ ձեռի տակ ունեցել են այժմեան այս երեք Զ-ները և, ամենայն հաւանականութեամբ, այժմեան երեք ամբողջական «համեմատուած տպագիրները», որով և առաջացել է 1843-ի զեկուցումի մէջ յիշուած «վեց անթերի օրինակների» թիւը։ Յետագայում ձեռք են բերուած № 1530 Զ-րը, որ գրուած է ՌՃԺԳ=1664 թ. և չի յիշատակւում վերոյիշեալ զեկուցման մէջ, և № 1023 Զ-րը, որով և առաջացել է գրչագիրների այժմեան անտիպ ցուցակի մէջ յիշուած ութ թիւը։

38. Տեսնենք այժմեան հինգ Զ-ների ո՞ր խմբին պատկանելը։ 1843-ին եղած երեք Զ-ներից № 1156-ը, ինչպէս վերևում ըրի, Խ խմբին է պատկանում. ԱԽ խմբերին են պատկանում, տեսանք, պակասած երեք օրինակները («համեմատուած տպագիրները»)։ Այս չորս օրինակի վրայից չի կարող եղած լինել 1843-ի բնագիրը, քանի որ վերջինս, ինչպէս մեր կատարած մանրամասն համեմատութիւնից երևում է՝ էջմիածնի Տ խմբի Զ-ների տեսակից է։ Կը նշանակէ՝ մնացած երկու Զ-ներից, №№ 869 և 200, մէկը նոյն թուին տպած բնագրի համար են բանեցրած (Վ). իսկ միւսից (վ) 1843-ի տպագրութեան մէջ միայն ընթերցուածներ են բերուած, չորս ուրիշ օրինակների ընթերցուածների հետ։ Արդ այդ ընթերցուածների մանրամասն ուսումնասիրութիւնից երևում է, որ իսկապէս երկու օրինակ, ինչպէս վերևում ասացինք, Ա խմբի հետ են, երկու ուրիշ օրինակ Խ խմբի հետ, իսկ մէկը միանում է էջմիածնի Տ խմբին, առանձնապէս opqrs Զ-ներին։ Հմմտ. օրինակ՝ եր. 315, 10. 316, 2 (Խվ$^{3}$nopqrs մաշարացական, որի մէջ

վ$^{3}$-ից երկուսը Ю խմբից են, մէկը nopqrs Ձ-ների տեսակից), 327, 13. 328, 12. 330, 17. 331, 1, 12, 21. 338, 13. 342, 10. ևլն։ Կընշանակէ՝ այժմեան Ձ-ներից №№ 869 և 200 Էջմիածնի Տ խմբի Ձ-ների տեսակին են պատկանում։

Այժմ տեսնենք, թէ այդ երկու Ձ-րից որը Վ է և որը վ, այսինքն որն է իբրև բնագիր գործածուած և որից ընթերցուածներ են միայն մէջ բերուած։ Ծանօթութիւնների մէջ առած վ-ն իր ընթերցուածներով առանձնապէս նոյնանում է Էջմիածնի pqrs Ձ-ներին։ Հմմտ. օր.՝ եր. 314,19 վprs ցերքն. 320,10 վ$^{2}$klpqrs մայրաքաղաքայն, վ մայր քաղաքայն. 329,10 վpqrs ոչ ունելով (մինչդեռ միւս բոլոր օրինակները ունին՝ յոչ լինելոյն, յոչ լինելոյ, ոչ լինելով). 338,17 վqrs որոճանօք. 270,10 վpqrs կողմեանք. 259,4 վpqrs բացակողմեանքն ևլն, ևլն։ Այսպիսի խմբակցութիւնները ցոյց են տալիս, որ վ Ձ-ը Էջմիածնի pqrs Ձ-ների փոքրիկ խմբին է պատկանում։ Միւս կողմից Էջմիածնի այս Ձ-ները ոչ մի գրքի ցանկ չունին. իսկ Վենետկի №№ 869 և 200 Ձ-ներից № 869 ցանկեր ունի, իսկ № 200-ը չունի Գ. գրքի ցանկը (հաւանօրէն չպիտի ունենայ նաև միւս գրքերինը), որով № 200 Ձ-ը մօտենում է pqrs Ձ-ներին։ Ապա դարձեալ № 200 Ձ-րն իր բովանդակութեամբ ևս, Խորենացի և Եղիշէ, մօտենում է Էջմիածնի qrs Ձ-ներին. որոնք պարունակում են՝ Խորենացի, Եղիշէ, Թովմայից հատուած Բարծումայի մասին (զ Փաւստոսից հատուածներ)։ Այս հիմունքները մեզ բերում են այն եզրակացութեան, որ Վենետկի № 200 Ձ-րից են բերուած ընթերցուածները 1843 թ. տպագրութեան մէջ, իսկ միւս Ձ-ը, № 869, ծառայել է իբրև առաջնորդ բնագրի համար, կամ մեր Վ տառով նշանակած օրինակը № 869-ն է։

Թէ ինչու իրենց ձեռի տակ ունեցած երեք Ձ-ներից ընտրել են № 869, որ 1683—4 թուին է գրուած, և ոչ № 200, որ աւելի հին է, գրուած լինելով 1660 թ., և ոչ № 1156-ը, որի վրայ կայ 1653 թուի յիշատակութիւն ստացողի,—այդ ես բացատրում եմ նրանով, որ № 1156-ը Ю խմբին պատկանելով և № 200-ը opqrs Ձ-ների կարգից լինելով՝ իրենց մէջ ունին բազմաթիւ չիք-եր, այսինքն բաց թողած բառեր և խօսքեր. մինչդեռ Վ=№ 869 Ձ-ը, աւելի մօտ լինելով Էջմիածնի n Ձ-րին, աւելի ևս Տ խմբին պատկանող այն Ձ-րին, որից ծագում է հնագոյն l Ձ-րի 1567 թուին նորոգուած մասը՝ չունի այդքան չիք-եր, ուստի և աւելի ընտիր է համարուել։ Ընտրութեան համար գուցէ նշանակութիւն է ունեցել և յիշատակարանը, թէ տիեզերալոյս Վարդան վարդապետն «եստ զայս գ պատմագրաց օրինակն. լաւ և ընտիր սրբագրեաց գրով»։

Աւելորդ չի լինիլ, եթէ երկրորդեմ, որ ինչքան էլ ես Վ օրինակը № 869 Ձ-րն եմ համարում՝ բայց այս երկուսը, կարծում եմ, կատարելապէս չպիտի նոյնանան, որովհետև, ինչպէս վերևում (§ 3) դրի՝ ինձ թւում է, թէ 1843 տպագրի մէջ լռելեայն ուղղումներ կան ուրիշ Ձ-ներից։ Օրինակ՝ եր. 72, տ. 14 բնագրում ընդունուած «արտահալածել» ձևն ունին Էջմ. Ա խմբի Ձ-ները. Ю խմբի Ձ-ներն ունին «արտալածել», իսկ Տ խմբինները (nopqrs) ունին «արտահալածէր»։

Որովհետև Վեննակի Վ. օրինակը Տ խմբին է պատկանում՝ պէտք էր սպասել ուրեմն, որ բնագրի մէջ գրուած լինէր «արտահալածէր»․ բայց 1843-ի տպագրութիւնը բնագրում ունի Ա. խմբի ձևը «արտահալածել», իսկ ծանօթութեան մէջ ունի Խ և Տ խմբերի ձևերը՝ «երկու օր արտալածել, երկու այլ՝ արտահալածէր»․ կը նշանակէ՝ այս բառի համար ընտրութիւն է արուած և իրենց սովորաբար գործածած Զ-րի ընթերցուածի տեղ դրուած է Ա. խմբի բաղդատութիւնների ընթերցուածը։ Կարելի է բաւական թուով ուրիշ այսպիսի օրինակներ ևս բերել։ Թւում է, թէ այս ընտրութեանն է ակնարկած և 1848 թուի Բազմավէպի մէջ եր. 48. իբրև պատասխան Կարեննանցի 1847 թուին Կովկաս լրագրի մէջ տպուած կարծիքի Խորենացու բնագրի մասին. «իսկ այն գրքերը [այսինքն Խորենացի], որ ընտրութեամբ և բաղդատութեամբ տպուած են, և բաւական վկայեալ օրինակներէ, պէտք է պատկառելի ըլլան կարդացողներուն և Զ-րի մը մէջ տարբերութիւն մը տեսածնուն պէս՝ չկասկածին, չտարակուսին, չհամարձակին սխալ կոչելու և սրբագրելու, ինչպէս Կովկաս լրագրին մէջ անցեալ տարի բանասէրին մէկը ըրեր էր»։— Ինչպէս էլ լինի՝ ես ամենայն հաւանականութեամբ № 869 Զ-րը համարում եմ Վ, իսկ № 200-ը՝ Վ։ Այս կարծիքս վերջնականօրէն պիտի հաստատէ ի հարկէ միայն այս Զ-ների բաղդատութիւնը, որոնցից ես ոչ մի ընթերցուած չունիմ։—Գանք մնացած երկու Զ-րին։

1843 թուից յետոյ ձեռք բերուած երկու Զ-ներից ընթերցուածներ չունինք, այլ միայն համառօտ նկարագիր (տ. վերը § 36)։ Դրանք երկուսն էլ ունին Բ. գրքի Ը գլխի վերնագիրը, ուստի չեն կարող Ա. խմբին պատկանել, այլ միայն Տ և Խ խմբերից մէկին։ Դրանցից մէկը, № 1530 Զ-րն, իր բովանդակութեամբ (Խորենացի, Եղիշէ, Թովմայից հատուած) նոյնանում է Էջմիածնի Տ խմբին պատկանող ց Զ-րի հետ. բացի այդ՝ այս վերջինը չունի ցանկեր։ Գ. գրքի ցանկը, (հաւանօրէն և միւս գրքերինը), չունի նաև Վեննակի Զ-րը։ Այս երկու հիմունքով այդ № 1530 Զ-րը, կարծում եմ, պատկանում է Տ խմբին և իր ընթերցուածներով պիտի միանայ Էջմիածնի ց Զ-րի հետ։ Վեննակի միւս Զ-րը սակայն, № 1023, պիտի պատկանի Խ խմբին. միակ ընթերցուածը, որ ունինք այդ Զ-րից, է Ը գլխի վերնագիրը—«Երկրորդ թագաւորութեան լինել ի զաւակէ Արշակայ Մարաց թագաւորին»․ Էջմիածնի կ¹ Զ-րը նոյն տեղում ունի թէ բնագրում և թէ ցանկում նոյնպէս «Արշ''կայ» ընթերցուածը, մինչդեռ միւս Զ-ներն ունին Աժդահակայ կամ Աշդահակայ։ Վեննակի № 1023 Զ-րն այդ ընթերցուածով նոյնանում է ուրեմն կ¹ Զ-րի հետ, որ Ղ-ից է ծագում։ Անշուշտ մի ընթերցուածը քիչ է եզրակացութիւն անելու համար. բայց կարծում եմ թէ ուրիշ ընթերցուածներ կըհաստատեն այս ենթադրութիւնը։

## ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ԽՄԲԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ.

39. Խորենացու Զ-ների դասաւորութեան խնդրով առաջին անգամ զբաղուել է Ադոլֆ Բաումգարտները՝ իր վերևում (§ 16) յիշուած

աշխատութեան մէջ. Նա «հակադրում է Վենետկի լաւագոյն (1843) և Ամստերդամի հրատարակութիւնը։ Այս վերջինին դասակից է գնում Կարենեանցի երկրորդ օրինակը և Լայպցիգինը»։ Երկրորդ անգամ նոյն խնդրով զբաղուել է Միաբան—Գ. Տ.-Մկրտչեանը (Հայկականք, Վաղարշապատ. 1894. եր. 38 հտն. եր. 69 հտն.)։ Նա էջմիածնի 17 Ձ-ները մի յօդուածի մէջ բաժանում է երկու դասի, երկրորդի մէջ դնելով 6 Ձ-իր, իսկ առաջինի մէջ 11 Ձ-իր, որ նա վերածում է երեք ստորաբաժանումների։ Յետոյ սակայն մի ուրիշ յօդուածի մէջ, նկատի ունենալով գրեթէ այն բոլոր Ձ-ներն ու ընթերցուածները, որոնց մասին մենք վերևում յիշեցինք, և համոզուելով որ առաջին դասի ստորաբաժանումները առանձին առանձին խմբեր են միմեանցից շատ անջատ՝ այդ ստորաբաժանումներն անուանում է Ա. Բ. Գ. իսկ Բ. դասը Դ. խումբ։ Այդ խմբերի պատկերը հետևեալ ձևով է տալիս (նշանակելով մեր ընդունած տառերով).

Ա. խումբ. lm և Կ$^{1}$ (?).
Բ. խումբ. hgikz.
Գ. խումբ. nsropq.
Դ. խումբ. fcdabetԿ$^{2}$Լ.

Վենետկի 1843 թուի վեց օրինակները դնում է ԱԲԳ խմբերի մէջ, իսկ Եղեանի (մեր y) և Արղնի Ձ-ների համար, տփի կազմութեան վրայ հիմնուելով, յայտնում է, թէ կարող են պատկանել ԱԲ խմբերին, բայց ոչ ԳԴ-ին։—

Երրորդ անգամ Խորենացու Ձ-ների դասաւորութեամբ զբաղուել է Մ. Աբեղեանը (Հայ ժողովրդական Առասպելները Մ. Խորենացու Պատմութեան մէջ, Վաղարշապատ, 1891. եր. 259—266)։ Նա ձեռի տակ ունենալով էջմիածնի 18 Ձ-ները՝ բաժանում է երկու խմբի. Ա. խումբ, որի մէջ մտնում են abcdef Ձ-ները, և Տ խումբ, որի մէջ երկու ստորաբաժանում է դնում, մի կողմում ghi, միւս կողմում klmnopqrs։

Այս երկու բաժանումն էլ, հիմնուած լինելով որոշ ընթերցուածների և ոչ Ձ-ների ամբողջական համեմատութիւնների վրայ՝ ունին միևնոյն պակասութիւնը, որի պատճառը l Ձ-րն է, որի մի մասն nopqrs (Տ. Մկրտչեանի Գ խմբի) Ձ-ների հետ է, իսկ միւս մասը՝ abcdef (Տ. Մկրտչեանի Դ խմբի) Ձ-ների հետ։ Միւս կողմից՝ արդարև ghi Ձ-ները մի երկրորդական փոքրիկ խումբ են կազմում իրենց ընթերցուածներով, բայց դրանք klm Ձ-ներից անբաժան են, ծագած լինելով մի ընդհանուր մայր Ձ-րից, l-ից։

Նշանակելով l Ձ-րի հին մասը, որ Ա. խմբի (Տ. Մկրտչեանի Դ խմբի) հետ է, la ձևով, իսկ նոյն Ձ-րի նորոգուած մասը, որ Տ խմբի (Տ. Մկրտչեանի Գ խմբի, nopqrs Ձ-ների) հետ է, lտ ձևով ունենում ենք.

Ա խումբ. abcdeftԼվվԿ$^{2}$la, ընդ ամենը 12 օր., որոնցից t Ամստ. տպագիրը, վվ Վենետկի բաղդատուած երկու տպագիրները, (որոնցից ընթերցուածներ կան 1843-ի տպագրութեան մէջ), Կ$^{2}$ Կարինեանցի ընթերցուածները, la էջմիածնի l Ձ-րի հին մասը, վեցը՝ abcdef

էջմիածնի, մէկը (Լ) Լայպցիգի Զ-ները։ Իրենց հնութեան կարգով այս օրինակները դասաւորւում են այսպէս. Լա (հաւանօրէն 14-րդ դարու, 1567-ին նորոգուած). Կ$^{2}$ (1671 թ.), e (1675 թ.), b (1674—76 թ.), d (1676 թ.), a (1687 թ.), c (1616-ից յետոյ և 1691-ից առաջ), t (1695-ին տպուած), Լ (1696 թ.). f Զ-րի գրութեան ժամանակը յայտնի չէ, իսկ Վենետիկի բաղդատութիւնները եղել են մէկը 1303 թ. Զ-րի վրայ, միւսը կարող է 1671 թ. Զ-րի վրայ եղած լինել (տ. § 37)։

Տ խումբ. nopqrsՎԼվվw$^{1}$Լա, ընդ ամենը 11 օր., որոնցից w$^{1}$ Թովմա Վանանդեցու ընթերցուածները, Վ Վենետիկի տպագիրը (հաւանօրէն № 869 Զ-րը), վ (հաւանօրէն Վենետիկի № 200, որից ընթերցուածներ կան 1843-ի տպագրութեան մէջ), վ (Վենետիկի № 1530 Զ-րը ենթադրութեամբ, տես § 38), Լա էջմիածնի l Զ-րի նորոգած մասը, իսկ nopqrs էջմիածնի միւս Զ-ները։ Իրենց հնութեան կարգով այս օրինակները դասաւորւում են այսպէս—Լա (1567 թ.), q (1641 թ.), վ № 200 (1660 թ.), վ № 1530 (1664 թ.), n (1672 թ.), Վ № 869 (1683—4 թ.), p (1690 թ.), o (1699 թ.)։ Մնացածների գրութեան ժամանակն անյայտ է։

Մնացած օրինակները ghikmԿ$^{1}$yՀzվվվ թուով 12, ծագած լինելով էջմիածնի l Զ-րից՝ կորցնում են իրենց արժէքը։ Դրանք են՝ էջմիածնի վեց Զ-իր, ghikmԿ$^{1}$, Եղեանի y Զ-իր, Աղթամարի Հ Զ-իր, Պետերբուրգի z Զ-իր, Վենետիկի օրինակներ՝ վ № 1156, վ № 1023 (ենթադրութեամբ), վ Վենետիկի բաղդատուած տպագիրներից մէկը։

Վերևի թուի վրայ պիտի աւելացնել նաև էջմիածնի r Զ-րը, որ, ինչպէս կը տեսնենք, ծագում է էջմիածնի s Զ-րից, ուստի նոյնպէս կորցնում է իր արժէքը։

Երկու մեծ խմբերի այս բաժանումն ամփոփելուց յետոյ՝ տեսնենք այժմ ստորաբաժանումներն Ա և Տ խմբերի մէջ, կամ Զ-ների իրար հետ ունեցած յարաբերութիւնները։

40. Ա խմբի օրինակները՝ շատ ընթերցուածների նոյնութեամբ բաժանւում են երեք երկրորդական փոքրիկ խմբերի. մի ընդհանուր մայր Զ-րից, որ նշանակենք Ա. տառով, մի կողմում ծագած են abcf Զ-ները, միւս կողմում՝ Կ$^{2}$det. սրանց դիմաց Լա Զ-իրը մի ուրոյն տեղ է բռնում, չմիանալով առանձնապէս ոչ abcf Զ-ներին, ոչ Կ$^{2}$det խմբակցութեան, այլ երբեմն մէկին մօտենալով, երբեմն միւսին։ Այս բաժանման համար իբրև մի յատկանիշ, դրսի Զ-ների տեղը որոնելու համար, կարելի է առնել հետևեալը։ Առաջին գրքի Ի գլխի (Համեմատութիւն ծննդաբանութեան...) անունների շարքի մէջ abcf Զ-ները Նորայր անունից յետոյ ունին «Վստամ. Կար» անունը, որ Կ$^{2}$det Զ-ների մէջ Հայոց անունների շարքի մէջ չէ, այլ ընկել է Բաղդէացոց անունների շարքի մէջ «Վստասկար, Վաստասկար, Ստասկար» ձևերից մէկով, Ղամպարխտէս անունից յետոյ, իսկ t օրինակի մէջ, որովհետև պակասում են Ղամպարխտէս և նախորդ երկու անունները, Սուսաոխ անունից առաջ կամ Ամինտէս անունից յետոյ։ Վենետիկի 1843-ի տպագիրը ծանօթութիւն ունի. «Այսպէս [այսինքն Վստասկար] ամենայն օրինակք

Խորենացւոյն որ առ մեզ գտան. այլ Յովհ. կաթ. և Գր. Մագիստրոս յերկուս անուանս որոշեն՝ Վատամ և Կար» (ինչպէս են և մեր abcf-ի մէջ)։ Եթէ ճիշտ է որ Վենետկի օրինակները «Վատամ. Կար» ձևը չունին, ապա պէտք է ընդունել, որ Ա խմբին պատկանող նրանց երկու օրինակները վվ մտնում են Կ²det խմբակցութեան մէջ (եթէ միայն ի հարկէ բաղդատողները առած լինին այդ ընթերցուածը. որովհետև այս վվ օրինակները բաղդատուած տպագիրներ են)։ Լա Ձ-րի համար չենք կարող վերոյիշեալ «Վատամ. Կար» յատկանիշը բերել, որովհետև Լ Ձ-րի մէջ այդ հատուածը Լա չէ, այլ Լո է, և իբր Տ խմբին պատկանող մաս ունի «Վատասկար» ձևով Նորայր անունից յետոյ. բայց Լա-ի համար կարելի է բազմաթիւ ուրիշ ընթերցուածներ առնել, որոնք առանձնայատուկ են միայն Խ խմբի Ձ-ների հին մասին, այսինքն Լա-ին. ինչպէս օրինակ՝ եր. 71, տ. 5 «Նոյն պատմագիր ասէ», փոխանակ «ասէ նոյն պատմագիր», եր. 72,2 զուարճանայցէ ևլն. (ուրիշ ընթերցուածներ տես § 9)։—Շփոթութիւնից զերծ պահելու համար, այստեղ իսկ պէտք է նկատենք, որ եր. 61, տ. 1 ծանօթութեան մէջ Կ¹ Ձ-րի համար «սատասկար» գրուածը վրիպակ է. Կ¹ չունի այդ ընթերցուածը, այլ իբրև Լ Ձ-րից ծագող՝ ՏԽ Ձ-ների պէս «Վատասկար» ունի հայոց անուանների մէջ։

Առաջին խմբակցութեան abcf Ձ-ներից ab Ձ-ներն իրար շատ մօտ են. բացի դրանց բովանդակութեան նմանութիւնից (տես §§ 10 և 11) և բազմաթիւ ընթերցուածների նոյնութիւնից՝ Ա գրքի վերևում յիշուած (Ի) գլխի անուանների շարքի նկարագիրն ևս նոյն է (տես այս Հրատարակութեան եր. 58). կարելի է մատնացոյց անել և այսպիսի ընդհանուր սխալներ, ինչպէս՝ դժուարամուտ սոմսանս (տ. եր. 54, տ. 3)։ Դրանք այնքան մօտիկ են, որ նոյն-իսկ կարելի է կարծել, որ ժամանակով Նորը՝ a Ձ-րը ժամանակով հնից՝ b-ից օրինակուած լինի։ Բայց քանի որ այս կարծիքը հաստատող բացայայտ հիմք չկայ՝ ես այս երկու Ձ-իրը կից և զոյգ եմ դնում։

Այս ab Ձ-ներին մօտենում է ընթերցուածներով c Ձ-իրը, որ վերոյիշեալ (Ի) գլխի անուանների շարքից կարգով արտագրած ունի նախ ab-ի առաջին խորանը, յետոյ երկրորդը ևլն (տես եր. 58). դրանից է առաջանում անուանների այն խառնաշփոթութիւնը, որ կայ c-ի մէջ։ Դրանից զատ՝ ընթերցուածների նոյնութեան հետ կարելի է ցոյց տալ և այսպիսի ընդհանուր սխալներ, ինչպէս՝ զողկիանու (տ. եր. 46, տ. 11ծ.)։ Այս նկատի ունենալով՝ կարելի էր կարծել, թէ c Ձ-րը b-ից կամ a-ից, կամ դրանց հետ միասին մի ընդհանուր x մայր Ձ-րից ծագած լինի։ Բայց միւս կողմից այս նոտրագիր c Ձ-րին մօտենում է առանձին ընթերցուածներով նոտրագիր f Ձ-րը. երկուսի մէջ ևս Գ. գրքի վերջին գլուխը (Ողբը) պակաս է. և որովհետև վերոյիշեալ անուանների շարքի գրութիւնն այս երկու Ձ-ների մէջ այնպիսի է, որ ոչ c Ձ-րն f-ից կարող էր ծագել և ոչ f-ը c-ից՝ ուստի պէտք է ընդունել, որ դրանք ծագում են մի այնպիսի x Ձ-րից, որ ab Ձ-ների հետ մի ընդհանուր մայր ունի։

Երկրորդ խմբակցութեան Կ²detվվ Ձ-ներից էջմիածնի de Ձ-ները

նոյնանում են բազմաթիւ ընթերցուածներով (տես օրինակ՝ եր. 79, տ. 15, միայն Տ, փոխանակ հանանէ). վերոյիշեալ (Ի) գլխի անուանների նկարագիրն եւ դրանց մէջ բոլորովին նոյն է (տես եր. 59)։ Կարեւնեանցի նկարագրած Կ$^{2}$ Զ-րի անուանների նկարագրի մասին ոչինչ չգիտենք, բայց ընթերցուածներով այս Զ-րը այնքան նոյնանում է *de* Զ-ների հետ, որ նոյն-իսկ կարելի է, թէ վերջիններս Կ$^{2}$-ից ծագած լինին։ Ամստերդամի տպագիրը, *t*, անուանների նկարագրով մօտենում է *de*-ին, բայց բոլորովին նոյն չէ. ընթերցուածներով եւ այս *t* օրինակը թէպէտ յաճախ միանում է Կ$^{2}$*de* Զ-ների հետ, բայց շատ անգամ և անջատւում է նրանցից. այսպէս օրինակ՝ եր. 11, տ. 12 «երգարանաց բանաւորաց» բառերի փոխանակ *abcf* Զ-ներն ունին՝ «արագ արանց բանաւորաց», Կ$^{2}$*de* ունին՝ «առանց բանաւորաց», իսկ *t* օրինակն ունի ուղիղ ձեւով «երգարանաց բանաւորաց»։ Թոմա Վանանդեցին կարող չէ ուղղած լինել ուրիշ Զ-րի վրայ, քանի որ նա, ինչպէս յայտնել է, միայն մի Զ-իր է ունեցել ձեռքի տակ։ Այսպիսի տարբերութիւններով կամ ընթերցուածների նոյնութեամբ Կ$^{2}$*det* օրինակները, որոնք մի ընդհանուր մայր ունին, բաժանւում են երկու տեսակի. մի կողմում են Կ$^{2}$*de* Զ-ները, միւս կողմում է *t*։ Այս չորս Զ-րի ընդհանուր մայրն է Լամբրոնացու օրինակը, որից 1671 թ. Մովսէս վարդապետն արտագրել է տալիս Կ$^{2}$. բայց, ինչպէս երեւում է, նա ուրիշ օրինակներ եւ արտագրել տուած պիտի լինի. «զոր ընտրեալ մեր՝ օրինակել տուաք ուրումն գրչի, և սրբագրեցաք ըստ կարի մերում, սակս առ ուրեք ուրեք տարածանելոյ»։ Նրա մահից յետոյ, նրա «պաշտելի» Մեսրովբը գնում է նրա Կ$^{2}$ Զ-րը և «յետ սուղ ինչ ժամանակաց», 1694 թուին, նուիրում է Թոմայ առաքելոյ վանքին։ Այս պատմութիւնից պէտք է կարծել, թէ Կ$^{2}$ Զ-րը օրինակել տուող Մովսէսը Գողթնում է ապրել։ Հաւանական է կարծել, որ Թոմա Վանանդեցին իր հայրենիքում գտնուած Զ-ներից մէկը կամ դրանցից օրինակուած Զ-իր է տանում Ամստերդամ 1695 թ. տպագրելու համար, և դրանից է առաջանում Կ$^{2}$ և *t* Զ-ների ազգակցութիւնը և այս երկուսի մէջ եղած նոյն առանւորը (տ. §§ 1 և 7)։

Այս երկրորդ խմբակցութեան են պատկանում և *vv* օրինակները, Վենետիկի երկու բաղդատած տպագիրները. բայց քանի որ բոլոր ընթերցուածները չեն բերուած 1843-ի տպագրութեան մէջ՝ չենք կարող ասել, թէ արդեօք դրանք Կ$^{2}$*def* Զ-ների հետ են, թէ *t* Զ-րի հետ։ Դրանցից մէկի համար միայն կարելի է ասել, որ *t*-ի հետ լինի. եր. 64, տ. 3, *cf* Զ-ներն ունին՝ «և թէ ուսոյ»․ Տ*Ꮃabde* ունին՝ «եեթուսու»․ Վենետիկի 1881 թուի տպագիրն (*x*) ուղղած է՝ «և եթ ուսոց»։ Այս վերջին ընթերցուածը՝ մեզ յայտնի օրինակներից ունի միայն *t*-ն (որ նոյն է և *w*)։ Սրա հետ նոյնանում է ուրեմն և մի *v*, որի վրայ ուղղուած է *x*-ը։

Լ=Լայպցիգի Զ-իրը միայն Ա. Բաումգարտների վկայութիւնից գիտենք, որ *t* օրինակի տեսակից, այսինքն մեր Ա խմբի մէջ է. բայց թէ որ Զ-ներին առանձնապէս մօտ է՝ չգիտենք։ Լ*vv* պայմանական ձեւով, ուստի և փակագծի մէջ, *t* օրինակի հետ դնելով՝ մենք ստանում ենք Ա խմբի Զ-ների ազգակցութեան հետեւեալ յարաբերութիւնը.




41. Ց խմբի օրինակներից Վենետիկի տպագիրը (Վ) էջմիածնի lmnopqrs Ձ-ների դիմաց ունի մի առանձնութիւն։ Ա գրքի (Ի) գլխի անունների գրութեան մէջ ևս Վ և lmnopqrs տարբերւում են միմեանցից։ Վ-ի մէջ այս անունները գրուած են երեք սիւնակներով չորս մասի բաժանած, չորս անգամ տպագրուած լինելով «Երրայեցւոց», «Բաղդէացւոց» և «Հայոց» վերնագիրները, իսկ անունների ծանօթութիւնները գրուած են երեք շարքերի տակին՝ աստղանիշերով ցոյց տալով, թէ որ անուան են վերաբերում։ Այս նկարագիրը բոլորովին տարբեր է lmnopqrs Ձ-ների նկարագրից (տես եր. 61)։ Դրսի Ձ-ների՝ Վ օրինակին թէ lmnopqrs խմբակցութեան պատկանելը որոշելու համար, կարելի է է միջի այլոց առնել հետևեալը. Վ-ն Բ գրքի Ը գլխի վերնագրի հետ միասին ունի նոյն գլխի սկզբում «Երկրորդ Թագաւորութեան լինէր ի զաւակէ Աժդահակայ Մարաց եղելոյ Թագաւորի», որը չկայ lmnopqrs Ձ-ների մէջ։ Այս պակասը չեմ կարծում թէ տպագրողներն ուղղած լինեին Վ-ի մէջ (տ. § 37)։ Կան lmnopqrs Ձ-ների մէջ ուրիշ պակասներ ևս, որ Վ-ի մէջ չեն պակասում, այլ կան ըստ Ա խմբի, ինչպէս եր. 17, տ. 13. եր. 27,10. 113,14 (n լուսանցքում աւելացրած ըստ Ա-ի). 121,16։ Սրանց հետ միասին բազմաթիւ ընթերցուածներով էլ Վ օրինակը անջատուելով lmnopqrs Ձ-ներից միանում է Ա խմբին։ Հմմտ. եր. 10,1. 17,17. 21,4. 30,16. 30,19 (n ուղղած ըստ Ա-ի). 31,4. 45,3. 46,14. 48,18. 53,3. 55,20. 101,5. 118,11. 122,14. 123,1. 308,7. 316,2. 319,7. 321,8 (ԱՎ դտեալ, lmnopqrs եկելոց, փխ գտեալ)։ Կան ի հարկէ նաև որոշ թուով ընթերցուածներ, որոնց մէջ Վ օրինակը միւս բոլորից տարբերւում է. դրանք մի Ձ-րի առանձնայատկութիւններ են։ Այսպէս օրինակ՝ Ա խումբն ունի եր 309,6. «ի Թուղաս (կամ Թուլաս) կղզի ովկիանու», Վ օրինակն ունի «ի Թուղիս կղզի ովկիանու», իսկ lmnopqrs ունին «ի Թուղաս (կամ Թուլաս, Թողաս) կղզի ուղկիանու»։ (Սրանցից սակայն n Ձ-րը նախապէս ունեցած է ուղկիանու, յետոյ ուղղած է n վկիանու, իսկ o Ձ-րն ունի n կիանու)։ Դարձեալ՝ Վ օրինակը եր. 327,8 ունի՝ «գրելով ի վերայ վիմի Ա, Ե, Է, Ը, Ի, Ո, Ի», մինչդեռ միւս բոլորը չունին՝ «Ա, Ե, Է, Ը, Ի, Ո, Ի», (m Ձ-րն այստեղ վրիպակով է Վ-ի հետ գրուած. տես վերջը վրիպակները)։

Էջմիածնի Զ-ներից opqrs բաժանւում են lmn Զ-ներից բազմաթիւ ընթերցուածներով և մանաւանդ չիքերով, որ lmn-ի մէջ չեն պակասում։ Հմմտ. opqrs-ի չիքերի համար, օրինակ՝ եր. 10,8. 12,15. 27,14. 29,9. 33,6. 56,17. 104,5. 119,6. 121,19. 128,1. 301,9. 308,20. 315,4. 317,3 ևլն. իսկ համանման ընթերցուածների համար՝ եր. 22,12. 34,16. 35,15. 37,2. ևլն, ևլն։ Այսպիսի դէպքերում lmn Զ-ները սովորաբար միանում են Վ-ին. օրինակ՝ եր. 315,20 Վlmn օրինակներն ունին «որ այն օր», մինչդեռ opqrs ունին ըստ Ա խմբի՝ «ուրանօր»։ Տես նաև 31,15. 39,8. 51,7. 104,5. 104,15 ևլն։ Առանձնապէս պէտք է զգուշանալ, որ բաղդատութեան համար չառնուի lm, որ Ա խմբի հետ է, այլ lm. թէ չէ՝ այն մասերում, որոնց մէջ l Զ-րն Ա խմբին է պատկանում, կան բազմաթիւ չիքեր, որոնց մէջ nopqrs Զ-ները միանում են, ինչպէս՝ եր. 232,7. 258,9. 281,2. 293,5. 332,19. բազմաթիւ չիքեր էլ կան, որոնց մէջ n Զ-րն ուղղած է լուսանցքում, ըստ Ю խմբի. ինչպէս՝ 113,14 (ուր Վlm կայ, Աnopqrs չիք. n աւելացրած լուսանց.). 213,16. 76,17. 85,10. 88,11. 88,15. 138,4. 218,12. 218,18. 232,18. 246,21. 162,5 ևլն։ Կան ընթերցուածներ ևս, որոնց մէջ nopqrs միանում են, յաճախ n Զ-րն ուղղած ըստ Ю-ի. ինչպէս՝ 77,2. 74,9. 74,10. 178,14. 215,2 ևլն։ Այս բոլոր դէպքերի մէջ lm Զ-րի համար ոչինչ չենք կարող ասել, որովհետև այս մասերում lm է. բայց Վ օրինակը տարբերւում է nopqrs Զ-ներից և միանում է դարձեալ Ա խմբի հետ։ Անշուշտ Վ-ի տպագրողները չեն ուղղել այդ ամենը, այլ յաճախ իբրև առաջնորդ ծառայող Զ-րի մէջ այդպէս է եղել։

Վերևում դրածից պարզ երևում է, որ Վlmn օրինակների դիմաց opqrs Զ-ները մի առանձին խումբ են կազմում։ Բայց ինչ յարաբերութիւն կայ Վlmn օրինակների մէջ։ Սրանցից lmn Զ-ները իրենց ընթերցուածներով մի կողմից իրար մօտ են (Հմմտ. բացի վերևում դրածներից, 56,17. 64,1. 308,11. 258,4. 39,3. 80,10. 88,1. 51,7), միւս կողմից opqrs Զ-ներին. ուստի պէտք է կարծել, որ դրանք ծագում են մի x Զ-րից՝ մի կողմում lmn, միւս կողմում՝ opqrs. բայց վերջիններս ոչ անմիջապէս, որովհետև բազմաթիւ չիքերը, որ opqrs-ի մէջ կան՝ ծագում են անշուշտ մի երկրորդական մայր Զ-րից։ Աստ տեսանք, որ Վ օրինակն անջատւում է այս եօթը Զ-ներից. պէտք է ընդունել ուրեմն, որ այս Տ խմբի մի ընդհանուր մայր Զ-րից ծագում են մի կողմում Վ օրինակը, միւս կողմում lmnopqrs Զ-ների ընդհանուր մայրը, հետևեալ պատկերով.



Այս է բնական բացատրութիւնը. բայց կայ մի հանգամանք․ Վ. օրինակի (Ձ-իր № 869) մայրը, ինչպէս մեր ունեցած մի կտոր յիշատակարանից երեւում է՝ տուել է Բաղիշեցի յայտնի Վարդան վարդապետը, այն էլ սրբագրած. «Որ զայս Գ պատմագրաց օրինակն եւ. լաւ և ընտիր սրբագրեաց գրով» (տ. § 36)։ Արդ այս Վարդան վարդապետի սեպհական օրինակն է Էջմիածնի n Ձ-րը (տ. § 18), որ իսկապէս, ինչպէս տեսանք՝ շատ տեղ սրբագրուած է լուսանցքում կամ վրան ըստ Ա. խմբի Ձ-ների, երբեմն էլ ըստ Ն-ի. ինչքան էլ թուականները յարմարւում են (n գրուած է 1672 թուին Բաղէշում, իսկ Վ. 1683—4 թ. դարձեալ Բաղէշում), բայց կարելի չէ ասել, որ Վ. օրինակը n Ձ-րից է ծագում. այս հնարաւոր է ընդունել միայն այն ժամանակ, երբ № 869 Ձ-րի համեմատութիւնը ցոյց կըտայ, որ այդ Ձ-րը միանում է Նոր-ին, և տարբերութիւնները միայն տպագրութեան ժամանակ կատարած ուղղումներ են Ա. խմբի ընթերցուածներով։ Հակառակ դէպքում պէտք է ընդունել, որ Վարդան վարդապետը ոչ թէ իր n Ձ-րն է տուել արտագրելու, այլ սրա ազգակից կամ սրանից արտագրած մի ուրիշ Ձ-իր, որ աւելի շատ է ուղղուած եղել Ա.-ի վրայ, քան n Ձ-իրը։

Անցնենք opqrs փոքրիկ խմբին։ Այս Ձ-ներից pqrs բազմաթիւ ընթերցուածներով և չիքերով միանում են ընդդէմ o Ձ-րի. (հմմտ. եր. 12,16. 15,15. 28,17. 36,8. 36,13. 37,7. 91,4. 108,11. 122,5. 298,13. 295,8. 300,11. 304,3 եւն)։ Այս pqrs Ձ-ների հետ են և Վենետիկի մի վ Ձ-րը, ինչպէս տեսանք վերեւում (§ 38), և $w^1$, այսինքն Թոմաս Վանանդեցու թարգմանութիւնները։ Հմմտ. վpqrs-ի համար բացի վերեւում գրածներից նաև եր. 117,20. 121,16. 123,12. 345,14. 104,18. 39,1. 65,1 եւն. իսկ $w^1$pqrs-ի համար՝ եր. 46,9. 64,1. 103,15. 344,9. 345,3. 78,5 եւն։ Այս երկու փոքրիկ խմբերը, o և pqrs արտաքուստ զանազանւում են նրանով, որ o Ձ-րն ունի երեք գրքի ցանկերը գրքերի սկիզբներում, մինչդեռ pqrs ոչ մի գրքի ցանկ չունին. կընշանակէ o Ձ-րը ծագում է մի x ձեռագրից որ ցանկերն ունի. իսկ pqrs (դրանց հետ նաև վ$w^1$), որ ցանկեր չունին՝ չեն կարող ծագել անմիջապէս այդ x Ձ-րից, այլ սրանից ծագող մի Ձ-րից, որ ցանկերը չի արտագրած։

Այս վերջին չորս pqrs Ձ-ներից pq Ձ-ներն երբեմն իրենց ընթերցուածներով մօտենում են o Ձ-րին, երբեմն նոյն-իսկ n Ձ-րին։ Արտաքուստ եւս այս երկու pq Ձ-ները տարբերւում են rs Ձ-ներից, իսկապէս s-ից, որովհետև, ինչպէս կըտեսնենք՝ r Ձ-իրը ծագում է s-ից. Ա. գրքի (Ի) գլխի անուանների գրութեամբ pq Ձ-ները կատարելապէս նման են թէ միմեանց և թէ no Ձ-ներին. իսկ rs Ձ-ները, նման լինելով իրարու՝ մի փոքր տարբերւում են pq-ից. այն է՝ մինչ rs-ի մէջ «Սա օգնական Պրիամու» եղն ծանօթութիւնը «Գոռակ—Սկայորդի» սիւնակի տակին ունին գրած, pq Ձ-ները, no-ի հետ, նոյն ծանօթութիւնը նոյն սիւնակի կողքին ունին գրած առանձին սիւնակի մէջ։ Բացի այդ՝ «Արայ—Վատասկար» սիւնակի վերջին անունը՝ Վատասկար՝ չկայ rs-ի մէջ, մինչդեռ pq Ձ-ները նոյնն ունին։ p Ձ-րի գրիչն իրեն անուանում է «սրբագրող». «յոյժ աշխատ եղաք ի սրբագրելն, զի յոյժ էր սխալ»։

Սխալներ անելով պէտք է հասկանալ տառասխալները, որ և միայն կարող է ուղղած լինել *p*-ի գրիչը. *qs* Ձ-ների գրիչներն ևս հարկաւ ուղղած են տառասխալները, բայց և այնպէս այս երկու Ձ-րի մէջ մնում է դեռ մի այսպիսի ընդհանուր սխալ—«ի բոքուէ», փոխանակ «ի փոքուէ» (եր. 65, տ. 7), որ անշուշտ ծագում է այն Ձ-րից, որից ծագում են *pqs*: Կըլինին այս Ձ-ների մէջ այսպիսի ուրիշ ընդհանուր սխալներ ևս. բայց մենք համեմատութեան ժամանակ այսպիսի սխալները, որ բնորոշ են Ձ-ների խմբակցութիւնները որոշելու համար, ընդհանրապէս չենք առած: Սակայն այս երեք *pqs* Ձ-ներից ոչ մէկը այնպէս չի մօտենում միւսին, որ իրար աւելի մօտիկ ազգակից դրուեն. *qs* (*qrs*) խմբակցութեան չափ կարելի է ասել կան նաև *ps* (*prs*) և *pq* խմբակցութիւններ. ուստի, քանի որ *pq* Ձ-ների դիմաց միայն մի *s* Ձ-րն է մնում, պէտք է այս *s* Ձ-րը հաւասար դնել *pq* Ձ-ներին և նրա տարբերութիւնները *pq*-ից՝ համարել եղակի ձեռագրական տարբերութիւններ:

Վերևում ասացի՝ *r* Ձ-իրը ծագում է *s* Ձ-րից: Այս երկու անթուական Ձ-ները, որոնք բովանդակութեամբ նոյն են (Խորենացի, Եղիշէ, Թոմայից հատուած) բազմաթիւ մանր ընթերցուածներով բոլորովին նոյնանում են. բայց կան և հիմունքներ, որոնք ցոյց են տալիս, որ *r* Ձ-իրն արտագրած է անմիջապէս *s*-ից: Այսպէս օրինակ՝ եր. 53,17 «և անթիւ բազմութիւն մարդկան» բառերը *s*-ի մէջ անընթեռնլի են. *r*-ի մէջ նոյն բառերը չկան, բայց տեղ է թողած: Եր. 149,4 *s*-ի մէջ «զօրինակ զայս» բառերից՝ «զայս», տողի վերջում տեղ չլինելով, գրած է ներքևի վերնագրի վերջում, մի գծով բաժանած սրանից. *r* Ձ-րի գրիչը չհասկանալով *s*-ի գրչի արածը, «զայս» բառն անտեղի տարած է վերնագրից ներքև և հեռու անկախ գրած: Եր. 163,18 *s*-ի մէջ քերած է «զմարդ» բառի վերջի դ տառը. իսկ *r* Ձ-րն ունի «զմար» եւն:

**42.** Ներքևում դնում ենք բոլոր օրինակների յարաբերութիւնը մի պատկերով*), քանի որ այսպիսի պատկերներով աւելի պարզ են հասկացւում յարաբերութիւնները, քան բացատրութիւններով:

Այս խմբակցութիւնների համար սակայն պէտք է նկատել. 1) Անյայտ (*x*) Ձ-ներից կարող են ուրիշ անյայտ Ձ-ներ ևս ծագած լինել և ապա նոր սրանցից՝ յայտնիները. 2) Փակագծում առնուած օրինակների երկրորդական խմբակցութիւնները որոշուած են Ձ-ների բովանդակութեամբ և մի-երկու ընթերցուածի հիման վրայ. դրանցից մի վ և Լ օրինակները դրուած են պայմանական ձևով. 3) Վ օրինակի տեղը կարող է Լոռ Ձ-րի հետ լինել, եթէ 1843-ի տպագրողներն իրենք ուղղած լինեն Ա խմբի վրայ՝ և ոչ թէ Բաղիշեցի Վարդան վարդապետը. 4) Այս կամ այն Ձ-րը որոշ տեղերում հեռանում է իր խմբակցութիւնից, միանալով ուրիշ խմբակցութեան հետ. այդ կամ պատահական պիտի համարել, կամ այն պատճառով, որ Ձ-ները երբեմն սրբագրւում են ուրիշ Ձ-ների վրայ, կամ թէ արտագրւում են մասամբ մի օրինա-

*) Տես եր. ԼԹ.

**Ա. եւ Տ խմբերի Մայր օրինակ.**

x (Ա խմբի մայր).
x (Տ խմբի մայր).
x
x(Լամբր. օր.).
Լա
Վ(?)
x
ba
x
Կ²ed
l(վվԼ).
Լա
n
x
c
f
o
x
p
q
s(վ)
վw¹
r
l (Թ խմբի մայր).
g h i k m Կ¹ y Հ z վ վ (վ).

կից, մասամբ մի ուրիշից. այսպիսի դէպքեր կան մեզ յայտնի Զ-ների մէջ. նոյնը պէտք է ենթադրել և անյայտ (x) Զ-ների համար, որոնք իբրև մայր են ծառայել։

43. Թէ ինչպէս է եղել, որ Խորենացու Զ-ները երկու այսպիսի որոշ խմբերի են բաժանուել՝ այդ դժուար է որոշել։ Հաւանական է կարծել, որ այդ բաժանումն եղել է ոչ թէ գիտակցական սրբագրութեան կամ ուղղման պատճառով, այլ բնական ճանապարհով։ Ժամանակի ընթացքում հետզհետէ ամեն օրինակութիւն մի նոր փոփոխութիւն պիտի մտցնէր բնագրի մէջ, և առաջ պիտի գային զանազան խմբակցութիւններ, մէկը միւսից տարբեր օրինակներ։ Ենթադրենք որ եղել է ժամանակ, որ այդ կերպարանափոխուած և իրարուց հեռացած օրինակներից մնացած լինէին միայն երկուսը, և նոր օրինակութիւններն այս երկուսից կատարուէին. այն ժամանակ բնականաբար երկու էլ խումբ պիտի կազմուէր։ Ապագայում կարող են գուցէ ուրիշ Զ-ներ էլ երեւան գալ, որոնք ոչ Ա և ոչ Տ խմբին պատկանելիս լինին, այլ մի նոր երրորդ խումբ կազմեն։ Սակայն մեզ յայտնի Զ-ները վերևի ենթադրութեանն են տանում։

Թէ երբ են առաջ եկել այս երկու մեծ խմբերը՝ այդ այժմ դժուար է որոշել հին Զ-ներ չլինելու պատճառով։ Հնագոյն Զ-րի,

էջմ. № 249, հին մասը (ԱՏ), Ա խմբին է պատկանում. Լամբրոնացու օրինակն ևս Ա խմբին է պատկանած եղել. բայց հարկաւ կարող են դրանց հետ միաժամանակ նաև Տ խմբի օրինակներ եղած լինել։ Յովհաննէս Կաթողիկոսի ձեռին եղած օրինակը իր մէջ ունի թէ Ա և թէ Տ խմբերի ընթերցուածներ. Ա խմբի Զ-ներից մօտենում է աւելի f Զ-րին, իսկ Տ խմբի Զ-ներից՝ Վ օրինակին։ Բերենք մի քանի ընթերցուածներ։

1) Խոր. եր. 33,4. Ա. Ցետ ծնանելոյ զորդի իւր զԱրամանեակ (f զԱրմանեակ) ի Բաբելոն. Յովհ. (Մոսկվա. 1853) եր. 11. Արամանեկաւ որդւով իւրով, զոր ծնաւն ի Բաբիլոն.— Տ ...զԱրմենակ (նոր զԱրամենակ) ի Բաբելոնի։
2) Խոր. եր. 35,14. Ա հրոսակի. Յովհ. եր. 11. հրոսակօք.— Տ հոսակի։
3) Խոր. եր. 36,20. Ա յերկիր հարստի. Յովհ. յերկիր հարստէր.— Տ յերկիր անկանի։
4) Խոր. եր. 62,11. Միայն f Զ-րն ունի՝ Սուր. Առ սովաւ Յեսու որդի Նաւեայ։ Յովհ. եր. 14. Սուր. (Առ սովաւ Յեսու ժառանգեցուցանէր Իսրայէլի զերկիրն Աւետեաց)։
5) Խոր. եր. 62,21. abcf Վատամ. Կար. Յովհ. եր. 14. Վատամ. Կար. —Տ Վատակար.
6) Խոր. 63,19—20 Ա ի պատերազմի ընդ Շամիրամայ... յիր և ի բան՝ զԱնուշաւանն Սօսանուէր. Յովհ. եր. 13. ի պատերազմի ընդ Շամիրամայ... յիր և ի բանս (ընթերցուած յիր և ի բան) զԱնուշաւանն Սօսանուէր.— Տ ընդ Շամիրամայ ի պատերազմի... յիր և ի բան զԱնուշաւանն որ Սօս անուանիւր։
7) Խոր. եր. 71,13. Ա հնազանդեալ նուաճեաց. Յովհ. եր. 15 հնազանդեալ նուաճէր։—Վր նուաճեալ հնազանդէր. (opqrs չիք հնազանդէր)։
8) Խոր. 71,14. abde ի հինն, cf ի հին. Յովհ. 15 ի հինն. — Տ ի հինամ։
9) Խոր. 73,5. Ա մարդկութեանս. Յովհ. եր. 15. մարդկութեանս.— Տ մարդկութեան։
10) Խոր. եր. 86,9. Ա Վահունիք. Յովհ. 15. Վահունիք.—Տ Վահնունիք։
11) Խոր. եր. 34,21. Տ հեղեալ. Յովհ. 11. հեղեալ.—Ա հեղեղեալ։
12) Խոր. եր. 38,3. Տ որդւոյ իւրոյ. Յովհ. եր. 11. որդւոյ իւրոյ.— Ա որդւոյ իւրում։
13) Խոր. եր. 41,2. Տ գնաց զմիւս լերամբն արևելեան հիւսիսոյ. Յովհ. 12. գնացեալ զլերամբն արևելեայ հիւսիսոյ.—Ա գնաց զմիւս կողմամբ արևելից հիւսիսոյ։
14) Խոր. եր. 41,19. Տ Գեղամի. Յովհ. եր. 12. Գեղամի.—Ա Գեղամէ։
15) Խոր. եր. 65,14. Տ ձև և շուք. Յովհ. եր. 14. ձև և շուք.— Տ շուք և ձև։
16) Խոր. եր. 73,9. Տ գնուատոսն. Յովհ. եր 77. գնուատազոյնսն.— Ա գստրուկսն։

17) Խոր. 85,14. Տ զԿիւրոս. Յովհ. եր. 77,15. զԿիւրոս.—Ա. Կիւրոս։
18) Խոր. 86,12. Տ Վան. Յովհ. 14. Վան.—Ա. Վահան։
19) Խոր. եր. 112,16. Տ Մուրացան. Յովհ. եր. 17. Մուրացան.—Ա. Մուրացեան։
20) Խոր. եր. 118,9. Տ շինութեան և խաղաղութեան. Յովհ. եր. 17. շինողութեան և խաղաղութեան.—Ա. խաղաղութեան և շինութեան։
21) Խոր. եր. 309,6. միայն Վ ի Թուղխ. Յովհ. եր. 31. ի Թուլխ.—Ա. ի Թուղաս (Թուլաս)։
22) Խոր. եր. 306,18. Տ Շահակ. Յովհ. 31. Շահակ.—Ա. Սահակ։

Բերած ընթերցուածներից երևում է, որ Յովհաննէս Կաթողիկոսի ձեռին եղած օրինակը ոչ Ա խմբին է պատկանում և ոչ Տ խմբին. այլ դա հաւասարադաս է Ա և Տ խմբերի ընդհանուր մայր օրինակին։

Որովհետև խմբերի բաժանման ժամանակը և ծագման եղանակը բացատրուած չէ՝ ուստի առաւելութիւն տալ մի կամ միւս խմբին դժուար է, և ես չեմ ուզում այդ մասին կանգ առնել այստեղ. միայն այսքանը ասեմ, որ ամեն դէպքում պէտք է առանձին քննութիւն անել, քանի որ, յայտնի խմբակցութեանց պատճառով, կան ձևեր, որ մի խմբի մէջ աւելի հարազատ են պահուած, ուրիշ ձևեր էլ ուրիշ խմբի մէջ։ Դա արդէն բնագիրը վերականգնելուն է վերաբերում, որ իմ նպատակից դուրս է։

## ՈՒՐԻՇ ՁԵՌԱԳԻՐՆԵՐ.

44. Բացի վերևում յիշուած օրինակներից՝ կան զանազան տեղերում Խորենացու Պատմութեան ուրիշ Ձ-ներ էլ։ Ներքևում կըդնենք մեզ յայտնիները։

1. Էնայի համալսարանի գրադարանի Ձ-ը. «բաղկացած է 180 քառածալ թերթերից. չունի յիշատակարան. նոյն-իսկ առաջին երեսից սկսում է բովանդակութեան ցանկը. վերջից պակասում է Գ. գրքի ԿԸ գլուխը (Ողբը) ամբողջովին և ԿԷ գլխի վերջին հատուածը։ Վերջին երեսի վերջին տողն է «... զի զոյր տեսլեամբ հրեշտակական, մորք ծննդականն»։ Ձ-ը գրուած է բոլորագիր տառերով և սև թանաքով մագաղաթի վրայ. գլուխներն ու սկզբի տառերը գրուած են կարմիր թանաքով։ Ձ-ը լաւ է պահպանուած, բացի առաջի 2-3 թերթերից, որոնք կեղտոտ են, սակայն կարդացւում են. ունի տախտակից շինած կաշեպատ կարմիր կազմ։ Ձ-ը յիշատակարան չունենալով՝ յայտնի չէ ով և երբ է օրինակել. սակայն բազմաթիւ տառասխալները ցոյց են տալիս, որ անհմուտ ձեռքի գործ է։ Ձ-ը Էնայի համալսարանին նուիրել է պրոֆ. Կօխ, որ ինչպէս երևում է՝ ձեռք է բերել Հայաստանում ճանապարհորդելիս» (Իս. Յարութիւնեան, Հայոց Գիրը, Թիֆլիս, 1892. եր. 10. 185)։ Միակ ընթերցուածը որ ունինք Ձ-ից (բերած նոյն տեղում Յարութիւնեանից) է հետևեալ հատուածը. եր. 325 տ. 12. «Վասն որոյ մատուցեալ ոմն առ արքայն հաբէլ անուն կոչեցեալ»։ Այս

*ընթերցուածը սակայն այնպէս բնորոշ է, որ միայն սրանով իմացւում է, որ այս Ձ-րը պատկանում է Ա խմբին. որովհետև ՏԽ խմբերն ունին «Վասն որոյ մատուցեալ առ արքայն [Խ առ արքայ] քահանայի ուրումն [ՎԼ որումն] հարէլ [Խ հարեղ] անուն կոչեցեալ»: Գ. գրքի վերջին գլխի պակասով մտնում է էջմիածնի cf Ձ-ներին:*

*2. Տիւբինգենի համալսարանի գրադարանի Ձ-ր. № 67. «առանց Ա գրքի վերնագրի. Մնացածում էապէս նոյնը ինչ որ Վենետիկի 1865 թուի. (նոյն և 1843 թ.) Խորենացին»: Այս Ձ-րը Աւետիք Էնֆիաճեանցից, հարիւրից աւելի Ձ-ների հետ, գնած է համալսարանը: (System.—Alph. Hauptkatalog der Königl. Universitätsbibl. zu Tübingen. XIII. Verzeichniss der armen. Handschr. von Franz N. Finck und L. Gjandschezian, Tübingen 1907. № 67):*

*3. Մի Ձ-ր Գիւտ քահանայ Աղանեանի մօտ. (տես Միաբան Գ. Տ.-Մկրտչ. Հայկականք եր. 92): Ես անձամբ Տ. Գիւտից լսած եմ, որ իր մօտ է եղել «Լաբրոնացու օրինակը», երևի Կ² Ձ-րը, որ բաղդատել է Թիֆլիսում Կարենեանցը: Նա այդ Ձ-րը տուել է Թիֆլիսում Մկբ. Թամամշեանին. վերջինիս մահից յետոյ Ձ-րն անցել է նրա ժառանգներին, որոնցից և չի կարողացել յետ ստանալ Տ. Գիւտը:*

*4. Մի Ձ-ր Սեբաստիոյ Ս. Նշան վանքի. Եւդոկիոյ (Թոխաթ) առաջնորդ Շաւարշ ծ. վարդապետ Սահակեանը, որ 1911 դեկտեմբ. եկած էր Էջմիածին՝ անձամբ յայտնեց ինձ այդ մասին. խոստացաւ մի քանի տեղեկութիւններ և ընթերցուածներ ուղարկել, բայց յետոյ նամակով յայտնեց, թէ առ ժամանակ անկարող է եղել այդ անելու:*

*5. Մի Ձ-ր Արղնի Բարձրահայեաց ս. Աստուածածնի վանքի մատենադ. № 211. Մովսէս Խորենացի, Ստ. Տարօնեցի, Արիստակէս Լաստիվերտցի, Եւսեբի Պատմութիւն եկեղեցական. Տասն դպրութիւնք. «Գրեալ գոմոց վանք, ի թվին Մ.Ծ.է», եթէ միայն այս թիւը տպագրական վրիպակ չէ՝ փոխանակ ՌՄԾէ» (Սրուանձտեան Թորոս Աղբար. —Միաբան Գ. Տ.-Մկրտչ. Հայկականք եր. 51): Այս Ձ-րն իր բովանդակութեամբ նոյնանում է Եղեանի y Ձ-րին (տ. § 32), և որովհետև վերջինս Խ խմբին է պատկանում՝ հաւանօրէն Արղնի Ձ-րն էլ նոյն խմբից պիտի լինի:*

*6. Վիեննայի Մխիթարեան Գրադարանի № 368. Բաղդատութիւն Մովսէս Խորենացւոյ Պատմութեան Վենետկի 1752 թուի հրատարակութեան վրայ. «Այս տարբերութիւնք շատ սակաւաթիւ և աննշան են և նշանակուած չէ թէ ինչ Ձ-րի ընթերցմունքն են անոնք»: Համեմատութիւնն եղած է 19-րդ դարում (Տաշեան Ցուցակ հայ ձեռ. Մատենադ. Մխիթ. եր. 820):*

*Յաջորդ Ձ-ների մասին տեղեկութիւններն արտագրուած են տ. Մեսրոպ եպիսկոպոս Տ.-Մովսիսեանի ցուցակից, որին և շնորհակալութիւնս եմ յայտնում սրա համար.*

*7. Երուսաղէմի Ձեռ. № 341. Թուղթ, բոլորագիր, երկսիւն. գրել է տուել Ազարիա կաթողիկոս. գրիչ՝ Մարտիրոս, ՌԽԸ—1599 թ. ի քաղաքն Բաղէշ. ի բռնակալութեան Սուլթան Մամմադ խոնդքարին և ի մերում ամիրութեանն Շարաւ խանին: Բովանդակութիւն—Խորե-*

նացու պատմութիւն, Բուզանդարան պատմութիւնք, Պատմութիւն Արիստակէսի Լաստիվերցւոյ։

8. Երուսաղէմի Ձեռ. № 308. ՌԿԵ—1616 թ. Թուղթ, բոլորգիր. գրիչ՝ Գրիգոր, Ստացող Կարապետ վարդապետ Մոկացի, մականուամբ Կալօենց։ Բովանդակութիւն—ա) Մովսէս Խորենացու Հայոց Պատմութիւն («Յաղագս մերոյս յիսկզբան յայսմ բանիցս»...). բ) Յաղագս զարմից Ս. Գրիգորի և տեսիլ Ս. Ներսէսի և բովանդակ պատմութիւն ազգին Մամիկոնէից մինչև ցսուրբն Վարդան և մինչև յետ արիական ազգին հռովմայեցւոց, որ իբրև զարեգակն և լոյս և փրկութիւն ծագեցան տիեզերաց. գ) Յառաջարան տեսլեան Ս. Սահակայ Պարթևի հայոց Կաթողիկոսի,—վերջում՝ Վասն Ս. Մեսրոպայ որ Մաշթոց կոչեցաւ. դ) Պատմութիւն Ս. Վարդանայ... յԵղիշայէ սրբոյ, Դաւթա երիցու հայցեալ։

9. Երուսաղէմի Ձեռ. № 310. բովանդակութիւնը միանգամայն նման նոյն տեղի նախորդ № 308 Ձ-րին։ Թուղթ, նոտրագիր, ստացող Ակնցի Յակոբ դպիր որդի մհտի Վահրադի և Շաղատայի. ՌՂԸ—1649 թ. ի Կ. Պոլիս ընդ հովանեաւ Ս. Սարգսի զօրավարի. գրիչ Յարութիւն դպիր։

10. Երուսաղէմի Ձեռ. № 1075. գրուած 1665 թուին. Թուղթ, բոլորգիր. գրիչ Մկրտիչ երէց, յԵւդոկիա ի վայելումն Ղրիմեցի Մարտիրոս վարդապետի (պատրիարքի Երուսաղէմի)։

11. Երուսաղէմի Ձեռ. № 740. նոտրագիր։

12. Արմաշի № 185. գրուած ՌՃԻ—1671 թ. Թուղթ, 341 թերթ. 19×12,5 հրդմ. բոլորգիր, գրիչ Սոփիա. ստացող Արիստակէս վարդապետ ի Շօռօթ գիւղաքաղաք. բովանդակութիւն—Մովսէս Խորենացի և Եղիշէ։ Այս Ձ-րի ընդարձակ յիշատակարանի մէջ, որ մի երկու ընթերցուածների հետ շնորհակալութեամբ ստացայ Շուարշ ծ. վարդապետից, գրչի անուն չկայ յիշուած. ստացողն է Արիստակէս վարդ. Ղլաթեցի, գրութեան թուականը՝ ՌՃԻ, իսկ տեղը՝ «ի յերկիրս Երնջակայ ի գիւղաքաղաքն Շօռօթ կոչեցեալ ընդ հովանեաւ Ս. Աˮծածին և Ս. Լուսաւորչին։— Բ. գրքի Ը գլխի վերնագիրն ու սկիզբն ունի այսպէս. «Երկրորդ թագաւորութեան լինել ի զաւակէ Աժդահակայ Մարաց թագաւորին։ Բայց յետ կարգելոյ զտուն թագաւորին որ այժմ Մուրացանդ կոչեն, քանզի ոչ սեհն նահապետի ազգի Մուրացան տէր, այլ Մոզացւոցն տէր»։ Այս ընթերցուածից երևում է, որ Արմաշի դպրեվանքի այս Ձ-րը պատկանում է ոչ թէ Ա խմբին, այլ Տխ խմբերից մէկին. և որովհետև, ինչպէս մեր հ. Նամակագիրը հաղորդում է, այդ Ձ-րն առանձին ցանկ չունի՝ ուստի մնում է pqrs խմբակցութեան մէջ։ Եւ վերջապէս Մոզացւոցն տէր ընթերցուածով փոխ. Մարացւոցն տէր ձևի, դա նոյնանում է r Ձ-րի հետ, որը, ինչպէս վերևում տեսանք, ծագում է s Ձ-րից։ Սխալուած չենք լինիլ որ ասենք, թէ Արմաշի այս 1671 թ. գրած Ձ-րը նոյնպէս ծագած լինի էջմիածնի անթուական s Ձ-րից։

13. Արմաշի Ձեռ. № 13. գրուած ՌՃԻԷ—1678 թ. Թուղթ, 385 թերթ. 14,7×11,5. նոտրագիր, գրիչներ՝ Գրիգոր Երևանցի և Ներսէս.

բովանդակութիւն— ա) Անուանք քաղաքացն հնդկաց և պարսից. բ) Խորենացու Պատմութիւն. գ) Տեսիլ Ս. Գրիգորի... մեկնութիւն տեսլեան. դ) տեսիլ Իսահակայ. ե) Աշխարհագիր Մովսէս Խորենացւոյ։

14 Տաթևի Ձեռ. № 70. թուղթ, կաշեկազմ, թերթեր 353. մեծ. 16,3×11. նոտրագիր. բովանդակութիւն—Խորենացու Պատմութիւն և Բարդուղիմէոս եպիսկոպոսի տրամաբանութիւն։

15. Սիս, Լանգլուա, հ. 114. թուղթ, մեծագիր, Պատմութիւն Խորենացւոյ։

16. Պարիզ. Suppl. 123. թուղթ, 318 թերթ. 27,6×16,6. միասին շղագիր, արտագրութիւն La-Croix-ի։

17. Վենետկի Մխիթարեան գրադ. արտագրութիւն ի Վենետիկ։

18. Առ Աղանուր, հ. 31. Մովսէս Խորենացի և պատմագիրք. գրիչ Ներսէս աբեղայ, յերկիրն Խիզան, ի սուրբ ուխտն Բաղիձոր, ընդ հով. Սուրբ Աստուածածնի, ի յիշատակ Կարապետ վարդապետին, որ տայ զայն յիշատակ ի դուռն Վարագայ Ս. Նշանին, 1594 թուին։

19. Շիրմազանեան ց. հ. 97. ՌՃԷ—1658 թ. թուղթ, բոլորգիր, Նոր Ջուղայ, ի թագաւորութեան Շահաբաս Փոքրին և հայրապետ. Յակոբ Կթ''ղի, յառաջնորդութեան Տէր Դաւթի։

20. Որտեղ լինելն անյայտ։ ՌՃԲ—1653 թ. Ստացող Ղայդարցի, ի հայրապետութեան տ''ռն Փիլիպպոսի, ի յերկիրս Արարատեան։

21 Որտեղ լինելն անյայտ։ Գրեցաւ Պատմագիրքս այս ի թուին Հայոց ՌՃԶ (=1657) ի մայրաքաղաքն Եդեսիոյ, որ արդ Ուրհա ասեն, ի դուռն Բարձրահայեաց Սուրբ Աստուածածնի, ձեռամբ Սարգսի Եդեսացւոյ։

22. Էջմիածնի Ձ-իր, № 4351 (նոր կարգ.). մեծ. 21×15 հրդմտ. կաշեկազմ, թուղթ, նոտրագիր, միասին։ Բովանդակութիւն—Խորենացու Պատմութիւն (ցանկեր չունի) և Եղիշէ։ Վերջինս վերջից պակաս, վերջանում է կանանց նկարագրի հետևեալ խօսքերով. «և յամենայն մատեանս յիշեցին զանուանս նոցա»։ Գրիչ, գրութեան տեղ և թիւ չկայ։ Պահպանակի առաջին երեսին «Վարպետ Գալուստն եա Սիմէօն վրդպտս առաջնորդ սրբազան առաքելոյն Թադէոսի ի յիշատակ ծնողացն թուին ՌՄԾԷ (=1808) ապրիլի ժԴ որ ի Թարուէ քաղաքի»։ Երկրորդ երեսին. «Ի վայելումն տ''ն Յովհաննէսի սրբազան կ''թղկոսի յա''մ Աղուանից, յոր ի ս''բ աթոռն Գանձասարու»։ Այս Ձ-րը բազմաթիւ ուրիշ Ձ-ների հետ ուղարկել է Էջմիածնի մատենադարանին Թաւրիզից առաջնորդ Կարապետ եպիսկոպոսը։ Բաղդատութիւնը ցոյց է տալիս, որ պատկանում է s խմբին և առանձնապէս նոյնանում է pq Ձ-ների հետ։

45. Մի քանի խօսք ևս մեր աշխատութեան մասին։

ա. Խորենացու այս հրատարակութեանը Ձեռագիրների համեմատութեամբ՝ Մ. Աբեղեանը և Ս. Յարութիւնեանը ձեռնարկել էին 1901 թուականին և արդէն բաւական թւով Ձեռագիրներ բաղդատել էին Վ. տպագրի հետ, երբ 1903 թուին Էջմիածնում մի „խորհրդակցութեան մէջ որոշուեց հրատարակել «Պատմագիրք Հայոց» շարքը, որի

մէջ պիտի մտնէր և Խորենացու Հայոց Պատմութիւնը։ Մենք յանձն առանք պատրաստել Խորենացին այդ հրատարակութեան համար։ Մեր աշխատանքն այսպիսով տևեց 12 տարի ընդհատումներով։ Այս հանգամանքը, ինչպէս և յետագայում աշխատակից ընկերներիս իրարուց հեռու, ուրիշ տեղերում ապրելը, բնականաբար իր հետ կապուած ունէր շատ անյարմարութիւններ, որոնք գործին ի վնաս պիտի լինէին։

Սկզբում մենք համեմատութիւնների մէջ առել էինք բոլոր ուղղագրական տարբերութիւնները. բայց 1903 թուականի վերևում յիշուած խորհրդակցութեան մէջ ձայների մեծամասնութեամբ որոշուեց, տեղ և ժամանակ վաստակելու համար, համեմատութեան մէջ չառնել ընդհանրապէս ուղղագրական ընթերցուածներ ու Ն յօդի տարբերութիւնները և, հակառակ մեր ցանկութեան, այս հրատարակութիւնն անել ոչ թէ հին, այլ վերջին դարերի ուղղագրութեամբ, այսինքն՝ օ փոխանակ աւ, իւ փոխանակ եւ, ասէի փոխանակ ասեի ևլն։ Մենք համակերպելով այդ որոշմանը՝ այլ ևս համեմատութիւնների մէջ չառանք ընդհանրապէս ուղղագրական ընթերցուածները և պարզ կերպով աղաւաղուած բառերը. բայց Ն յօդի տարբերութիւնները պահեցինք։

Չուզենալով կրկնութիւն անել՝ ուղղագրութեան և պատուի համար հրաւիրում ենք դիմել սոյն «Պատմագիրք Հայոց» հրատարակութեան «Ագաթանգեղոսի» յառաջաբանը (եր. ԾԴ հտ. § 40), որից սակայն կարևոր է այստեղ բերել հետևեալը. «Ձեռագիրների շատ անգամ միմեանց հակասական կետադրութիւնը հարկաւ հնարաւոր չէր պահել։ Տպագրի մէջ եղածն էլ շատ տեղ ըստ իմաստի փոփոխել ենք, հազիւ երբեմն ծանօթութիւնների մէջ նշանակելով մեր մտցրած փոփոխութիւնը։ Իսկ մեր տպագրի մնացած կետադրութեան սովորական մասը, մանաւորապէս ստորակէտերի և բութերի գործածութիւնը, նաև տողադարձն ամբողջապէս թողնուած էր Ստ. Մալխասեանցի հայեցողութեանը», որ վարել է այս աշխատանքի տպագրութեան հսկողութիւնն ու տպագրական սրբագրութիւնը։

բ. Համառօտագրութիւնները նոյնն են պահուած, ինչ որ Ագաթանգեղոսի մէջ, որից կարևոր ենք համարում մէջ բերել հետևեալները։ «Ընթերցուածների պակասները նշանակել ենք չիք-երով. փխ. (=փոխանակ) համառօտագրութիւնը գործ է ածուած, երբ մի ընթերցուածի տեղ այլ Ձ-ը մի ուրիշ ընթերցուած ունի... Երբ տողի մէջ միևնոյն բառը մի քանի անգամ է պատահում՝ անորոշութիւնից խուսափելու համար չիք-ի առաջ կլոր փակագծերի մէջ գրուած է և հետևեալ բառը, օրինակ՝ «չիք և (ասաց)»... Տեղ-տեղ հանդիպող (*) աստղանշով ընթերցուածը ցոյց է տալիս, որ այդ ընթերցուածը տպագրական վրիպակ չպէտք է համարել իւր տարօրինակ գրչութեան պատճառով... Գիծը (—) նշանակում է մինչև, յատկապէս գործածուած չիք-երի մէջ... Անկիւնաւոր փակագիծը [ ] գործ է ածուած՝ այլ և այլ, մեծ մասամբ նոյն խմբի Ձ-ների նման ասացուածի մէջ այս կամ այն Ձ-րին յատուկ տարբերութիւնները նշանակելու համար, առանց կրկնելու մի քանի անգամ ամբողջ ասացուածը. օրինակ՝ «Տէր և զմեզ այժմ [Հgl յայժմ, k այսօրիկ] աշխատեցուցող [Հgrs աշխատեցուցօղ,

ք աշխատեցող դու]» տառացածի մէջ Տ և Խ խմբերի Զ-ները յար և նման ընթերցուած ունին, բացի անկիւնաւոր փակագծերով նշանակուած բառերից։ Բառերի յետևառաջութիւնը՝ ընթերցուածների մէջ առաջ է բերուած առանց որևէ նշանի, օր. բնագիր՝ «Մանուաղ ժառանգէ», ընթերցուած՝ «ժառանգէ Մանուաղ»։ Մնացած համառօտութիւններն ըստ ինքեան հասկանալի են։

գ. Բաղդատութիւնը կատարուել է հետևեալ ձևով։ Թիֆլիսի 1881 թուականի տպագրութիւնը (Վ), որ արտատպած է Վենետկի 1865 թ. տպագրից, իբրև իր ժամանակին մատչելի տարածուած օրինակ, ընտրել ենք համեմատութեան համար։ Կարդացուել է ոչ թէ տպագիրը, այլ միշտ Զ-ները, որովհետև Զ-րը կարդացւում է ոչ այնքան բառերի ընդհանուր պատկերով, որքան տառերը քաղելով, ուստի սխալները, կարծում ենք, այսպէս համեմատաբար պակաս կլինեին՝ քան եթէ տպագիրը կարդացուէր, երբ Զ-րին հետևողը աչքից շատ բան կը փախցնէր, կարծելով թէ այնպէս է գրուած, ինչպէս լսում է։ Երբեմն միայն դժուար կտորները վերծանելու համար դիմել ենք տպագրի օգնութեան։

Ընթերցուածները գրի առնելու և տպագրին հետևելու գործն ամբողջապէս Մ. Աբեղեանինն է, որ յաճախ ընթերցուածը գրի առնելուց առաջ մտիկ է տուել Զ-րի գրութեանը։ Զ-ները կարդացել է մեծ մասամբ Ս. Յարութիւնեանը, յատկապէս էջմիածնի abcdefglmq տասը Զ-ներն ամբողջապէս և h Զ-րն մինչև սոյն հրատարակութեան եր. 130, տ. 10. (Բ. գիրք, ԺԶ գլ.), որտեղից սկսած այս Զ-րը, ինչպէս և i Զ-րը, նկատելով որ g-ից են ծագում՝ համեմատուած են g-ի հետ, փոխէ-փոխ կարդալով՝ Մ. Աբեղեանը g Զ-րը, իսկ Ս. Յարութիւնեանը՝ hi Զ-ները։ Նոյն ձևով բաղդատուած է m Զ-րը l Զ-րի հետ, որից ծագում է m. Աբեղեանը հետևել է l Զ-րին, իսկ Յարութիւնեանը՝ m-ին։ Այս him Զ-ների ծագումը որոշ լինելով՝ դրանցից առնուած են միայն կարևոր համարուած մի քանի ընթերցուածներ, իսկ յօդերի և մի քանի յետևառաջութիւնների տարբերութիւնները չեն առնուած. այնպէս որ g Զ-րի հետ միշտ hi Զ-րն էլ պէտք է հասկանալ, իսկ l Զ-րի հետ՝ m Զ-րը։

էջմիածնի noprs Զ-ներին հետևել են էջմիածնի Գ. ճեմարանի աւարտած պարոններ — n-ին Յակոբ Խայըխեան, o-ին Յարութիւն Պօղոսեան, p-ին Արմենակ Բարսեղեան, r-ին մասամբ Բիւզանդ Թորոսեան և մասամբ Մեսրոպ Բարսեղեան. իսկ s-ին մասամբ Միհրան Թերլեմեզեան, մասամբ Յարութիւն Պետրոսեան և մասամբ նաև Մեսրոպ Բարսեղեան։ Այս Զ-ները, ինչպէս և q Զ-րը, միասին և միաժամանակ են բաղդատուած Վ.-ի հետ. փոխէ-փոխ կարդացուել են երբեմն մէկ և երբեմն միւս Զ-ները. և որովհետև դրանք մի խմբի են պատկանում, ուստի եթէ կարդացողի աչքից վրիպում էր որևէ ընթերցուած՝ միւս Զ-ներին հետևողներից մէկն ու մէկը նկատում էր տարբերութիւնը և ապա միւսներն առանձնապէս դիտում էին կարդացած հատուածը։

դ. Եղեանի y Զ-րի բաղդատութիւնն սկսած է գործի տպագրու-

թեան հետ միասին, որովհետև այդ ժամանակ ձեռք բերուեցաւ այդ Ձ-րը։ Առաջին չորս մամուլը, մինչև երես 64, համեմատել է Մ. Աբեղեանը մենակ՝ տպագրական թերթերի հետ. այնուհետև նկատելով որ y Ձ-րը ծագում է l Ձ-րից՝ վերջինիս հետ և շարունակել է բաղդատութիւնը, խնդրելով Խաչիկ ծ. վարդապետ Դադեանին օգնել իրեն։ Բաղդատուած է մինչև Ա. գրքի վերջը և Գ. գիրքն ամբողջ. իսկ Բ. գրքի բաղդատութիւն չի եղել, որովհետև այդ Ձ-րի մայրը յայտնի էր և բաղդատուած մասերի մէջ կարևոր ընթերցուածներ չեն երևացել։ Բաղդատելիս Մ. Աբեղեանը հետևել է l Ձ-րին, միաժամանակ և տպագիր Վ.-ին, կրկին անգամ ստուգելու համար l Ձ-րը, որ Ю խմբի մայրն է. իսկ Խաչիկ ծ. վարդապետը կարդացել է y Ձ-րը։

Գանք այժմ տպագիրներին։

Սրանցից tw հրատարակութիւնները մեր գործի տպագրութեան սկզբում միայն ձեռք բերուած լինելով՝ դրանց համեմատութիւնը չի կատարուած միակերպ։ Առաջին երկու մամուլը (32 եր.) բաղդատել է Մ. Աբեղեանը սոյն հրատարակութեան սրբագրական թերթերի հետ. Այդտեղից մինչև Բ. գրքի Թ գլուխը, եր. 118, բաղդատուած են Մ. Աբեղեանի և Ս. Յարութիւնեանի ձեռով Վ.-ի հետ. ապա նկատելով որ tw-ն պատկանում են Ա խմբին, իսկ w¹-ն Տ խմբին՝ այս Թ գլխից սկսած մինչև Բ. գրքի վերջը բաղդատութիւնն արել են d Ձ-րի հետ, հետևելով Մ. Աբեղեանը Ձ-րին, իսկ Ս. Յարութիւնեանը տպածին։ Գ. գրքից սկսած մինչև վերջը բաղդատութիւնն արել է դարձեալ միայն Մ. Աբեղեանը սրբագրական թերթերի վրայ։ Այս tw-ից, սակաւ բացառութեամբ, առնուած են ծանօթութիւնների մէջ միայն առանձին ընթերցուածներ, յատկապէս այնպիսիները, որ չեն տալիս ԱՏ խմբերի Ձ-ները։ Ծանօթութիւնների մէջ ի հարկէ բաւական կը լինէր նշանակել միայն t. բայց որովհետև համեմատութիւնն երբեմն t-ի հետ է եղած, երբեմն w-ի հետ, երբեմն երկուսի հետ ես, և որովհետև w-ն երբեմն w¹-ի վրայ սրբագրուած է՝ ուստի ծանօթութիւնների մէջ մերթ tw է նշանակուած, մերթ միայն t կամ w. այս վերջին դէպքերում, եթէ w-ն t-ից տարբերուող ընթերցուած չունի ծանօթութիւնների մէջ, t-ի հետ և w պէտք է հասկանալ, ինչպէս և w-ի հետ t։ Այս tw-ի առանձնայատուկ ձևը, անորոշ դերբայի իլ վերջով ընթերցուածները չեն առնուած։

Վենետիկի տպագիրներից x (1881 թ. տպ.) յատկապէս պահուած է եղել տպագրական թերթերի հետ բաղդատելու համար, որպէսզի բնագրի մէջ վրիպակներ չմնան։ Այս համեմատութիւնն արել է միայն Մ. Աբեղեանը և առել է միայն սակաւաթիւ ընթերցուածներ, յատկապէս այնպիսիները, որ չեն եղել միւս տպագիրներից և Ձ-ներից։ Այս տպագրի ընթերցուածներն ըստ ինքեան էլ սակաւաթիւ են եղել, որովհետև այս x-ը միևնոյն Վ.-ն է, միայն տեղ-տեղ ուղղած Ա խմբի մի ձեռագրով. այդ ուղղումները մեծ մասամբ արդէն կան Վենետիկի 1843 թ. տպագրի ծանօթութիւնների մէջ։

Անցնենք մեր աշխատանքի ուրիշ հանգամանքներին։

դ. Ձեռագիրների ու տպագիրների բազմաթիւ տարբեր ընթեր-

ցուածները, ինչպէս և տպագրուած ընթերցուածները, կարելի չէր առանց համախմբելու շարել ծանօթութիւնների մէջ. այդպիսով գրքի ծաւալը շատ կըստուարանար և մէկ էլ գիրքը գործածողը, հարկաւոր դէպքում, ինքը պիտի անէր նոյնը՝ Զ-ների խմբակցութիւնները հասկանալու համար։ Ուստի նման ընթերցուածները ի մի են համախմբուած և փոխանակ նոյն ընթերցուածն ունեցող բոլոր Զ-ներն առանձին տառերով նշանակելու՝ նշանակուած են խմբերի տառերով Ա, Տ և Խ, գործածելով անկիւնաւոր փակագիծը, ինչպէս է Ագաթ. հրատ. մէջ, խմբից անջատուող, երբեմն և խմբին պատկանող Զ-ների տարբերութիւնը ցոյց տալու համար։ Ծանօթութիւնների մէջ բնականաբար գրուած են բնագրի մէջ ընդունուած ընթերցուածներից տարբեր ընթերցուածները. բայց երբեմն կարևոր է համարուած դնել նաև բոլոր Զ-ների պատկերը։ Խ խմբի Զ-ներից կարելի էր, ի հարկէ, յիշատակել միայն Ն Զ-ը, որից ծագում են միւսները, և այսպէս վարուել ենք գրեթէ միշտ hōmy Զ-ների համար. բայց միւս նոյն խմբին պատկանող Զ-ների տարբերութիւնները մէջ են բերուած. և այս արուած է ի նկատի ունենալով նախ՝ այն, որ այդ Զ-ները սրբագրուած կարող են լինել մի ուրիշ Զ-րի վրայ, ինչպէս որ է g Զ-ը յաճախ, և ապա՝ որ այդ Զ-ների տուած ընթերցուածները կարող են Ն-ի մէջ եղած լինել, բայց բաղդատութեան ժամանակ աչքից փախած լինել։ Աւելորդ կը համարուին գուցէ այսպիսի խմբակցութիւնները՝ ՀՆ, Կ¹Ն, Վ²Ն, ԽՆ, gՆ ևն. որոնց մէջ բաւական կըլինէր յիշատակել միայն մայր Զ-ը՝ Ն։ Բայց այդպէս գրուած են ընթերցուածները երկու հիմունքով. մէկ՝ այդ Զ-ների յարաբերութիւնը ծանօթութիւնները գործածողին պարզ անելու համար, մէկ էլ նրա համար, որ Հ, Կ¹, Վ² Զ-ների ո՛ր խմբակցութեան պատկանելը խմբակցութիւնները կատարելուց յետոյ միայն կատարելապէս պարզուեց մեզ. սկզբում Կ¹ Զ-ը (քանի որ Կարենեանցը բոլոր ընթերցուածները չի տուել, ինչպէս և Վենետիկի տպագրութեան մէջ կարևոր ընթերցուածներն են միայն գրուած) նոյն-իսկ Տ խմբի մէջ էինք կարծում. և այս պատճառով այս Զ-ը գրուած է երբեմն Տ-ի հետ անկիւնաւոր փակագծերում, որը յետոյ փոխել չուզեցինք, որովհետև այսպիսի աշխատանքի մէջ ամեն նոր փոփոխութիւն և արտագրութիւն նորանոր վրիպակներ է պատճառում։ Յամենայն դէպս, կարծում ենք, մայր Զ-ր Ն-ի հետ յիշատակուած Զ-ները գործին ոչ թէ վնասում են, այլ օգուտ տալիս, քանի որ դրանցով մի անգամ էլ ճշտւում է Ն-ի ընթերցուածների ուղիղ առնուած լինելը. իսկ Ն-ը Խորենացու ամենից հին Զ-րն է։ Նոյնը պիտի ասել և r Զ-րի համար, որի ծագումը s-ից խմբակցութիւնները կազմելուց առաջ պարզ չէր մեզ համար։

Համախմբման ժամանակ առանձին ուշադրութիւն է դարձուած Էջմիածնի Զ-ներին և Վ.-ին, որոնք և կազմում են այս հրատարակութեան հիմքը. միւս հրատարակութիւնները և տպագրուած ընթերցուածները ընդհանրապէս երկրորդական նշանակութիւն ունեն, և կարելի էր մեծ մասամբ նոյն-իսկ չյիշատակել ծանօթութիւնների մէջ. որովհետև Վենետիկի 1843 թ. հրատարակութեան ծանօթութիւնների մէջ, ինչպէս և Կարենեանցի Բաղդատութիւնների և two¹-ի մէջ, գրեթէ

չկայ կարեւոր ընթերցուած, որ Էջմիածնի Ձ-ները տուած չլինեն։ Եւ այս հասկանալի է թէ ինչու. Վենետիկի ծանօթութիւնների մէջ դրուած երկու Ձ-ները, $Կ^2$ և է Էջմիածնի Ա խմբի Ձ-ների հետ են։ Վենետիկի մի Ձ-ը և $ա^1$ Էջմիածնի Տ խմբի հետ են, իսկ միւսները ծագում են Էջմիածնի Լ Ձ-ից։ Այս պատճառով կարելի էր նոյն-իսկ մէջը չառնել Վենետիկի Ձ-ների և է տպագրի ընթերցուածները. բայց բերուած են՝ դրանց խմբակցութիւնները պարզելու համար։

Առաջին գրքի ընթերցուածները համախմբել են Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան միասին. ապա Ս. Յարութիւնեանն աւելացրել է $Կ^1Կ^2$Հէ և Վենետիկի Ձ-ների ընթերցուածները. երկրորդ անգամ Մ. Աբեղեանը ճշտել է Էջմիածնի Ձ-ների (բացի Է-ից) ընթերցուածները բաղդատութեան հիմնական տեքստի մէջ նշանակուածի հետ և արտագրել է։ Երկրորդ գրքի ընթերցուածների համախմբումներն արել Ս. Յարութիւնեանը. ապա Մ. Աբեղեանը համեմատելով բաղդատութեան հիմնական տեքստի հետ՝ ստուգել է նոյնը, բացի տպագրուած ընթերցուածներից. արտագրութիւնն արել է Ս. Յարութիւնեանը։ Երրորդ գրքի բոլոր ընթերցուածների համախմբումն արել է Մ. Աբեղեանը մենակ և, որպէսզի նոր սխալներ առաջ չըգան, առանց արտագրելու տպագրութեան է յանձնել։

Աւելորդ չի լինի գուցէ յիշատակել և հետեւեալը։ Այս հրատարակութեան համար ամենից ծանր և յոգնեցնող աշխատանքը եղել է ոչ այնքան Ձ-ների համեմատութիւնը և տարբեր ընթերցուածներ նշանակելը՝ որքան ընթերցուածների համախմբումը։ Երբ բաղդատուած օրինակների թիւը սակաւ է՝ հեշտ է ծանօթութիւնները միացնել. բայց երբ նոյն օրինակների թիւը շատ է, ինչպէս այս դէպքում՝ առանձին մտքի լարում է պահանջւում, որ նման ընթերցուածները ի մի խմբուին, առանց մէկը կամ միւսը բաց թողնելու կամ սխալներ անելու՝ վատ կարդալուց կամ անզգոյշ արտագրելուց։ Համախմբումներն ու բնագիրը կազմելու ժամանակ դժբախտաբար հնարաւոր չի եղել ձեռի տակ ունենալու Ձ-ները՝ կասկածելի թուացող ընթերցուածները նորից ստուգելու համար։

ե. Բնագրի համար իբրև հիմք ընդունուած է սովորական Վ. տպագրութիւնը. բայց և շատ բան, օգտուելով Ա և Խ խմբերի Ձ-ներից, փոխուած է, մանաւանդ մութ և անհասկանալի կտորները, որոնք պարզ կերպով աղաւաղուած են Վ.-ի մէջ։ Այս աշխատանքը վերջացնելուց յետոյ սակայն, երբ պարզուած են Ձ-ների խմբակցութիւնները և երբ բոլոր ընթերցուածները մի անգամից աչքի առաջ կարելի է ունենալ՝ աւելի ճիշտ կերպով կարելի է բնագիրը վերակազմել. և այժմ իսկ տեսնում ենք, որ շատ ընթերցուածներ պէտք էր բնագրի մէջ դնել, որ մենք ծանօթութիւնների մէջ ենք առել, կամ ընդհակառակն։ Բայց այդ չէինք կարող անել այն ժամանակ, երբ թէպէտ մեծ խմբերը Ա և Տ մեզ համար պարզ էին, բայց դեռ բոլորովին պարզ չէին երկրորդական խմբակցութիւնները, անհնարին լինելով տեքստերի մէջ նշանակած ընթերցուածներով այդ պարզել։ Մեր աշխատանքի մէջ կարեւորը, կարծում ենք, ոչ այնքան բնագիրն է,

որքան ընթերցուածները։ Բնագրի վերակազմը չի կարող մի մարդու գործ լինել. դրա վրայ դեռ շատերը պիտի աշխատեն. և կարծում ենք, այսուհետև ուրիշները հեշտութեամբ կարող են վերակազմել բնագիրը՝ ի նկատի ունենալով ոչ միայն մեր տուած ընթերցուածները, այլ և ուրիշ աղբիւրներ, և ամեն մի հատուածի համար առանձնապէս ուսումնասիրութիւն անելով։ Արդարև, մինչև այժմ ևս շատ դիտողութիւններ են եղել Խորենացու բնագրի համար, բայց դրանք մեծ մասամբ մնացել են լոկ ենթադրութեամբ ուղղումներ, քանի որ հիմնուած չեն եղել Ձ-ների ընթերցուածների վրայ. այսուհետև այդպիսի ուղղումները, եթէ հաստատւում են միաժամանակ և ընթերցուածներով՝ կը դառնան ընդունելի և ստոյգ։ Յուսանք, որ մեր այս հրատարակութիւնը նոր առիթ կընծայէ շատերին Խորենացու բնագրով նոր ի նորոյ պարապելու։

Այս հրատարակութեան բնագիրը վերջնապէս կազմել է Մ. Աբեղեանը։ Առաջին գրքի բնագիրը սկզբում միասին կազմեցին Մ. Աբեղեանը և Ս. Յարութիւնեանը, իսկ Երկրորդ գրքինը՝ Ս. Յարութիւնեանը մենակ. յետոյ սակայն Մ. Աբեղեանը, աչքի առաջ ունենալով սկզբում կազմածները՝ նորից կազմեց առաջին երկու գրքերի բնագիրը։ Առաջին գրքինը ինքը վերջնապէս պատրաստեց տպագրութեան համար, իսկ երկրորդ գրքի մէջ մտցրած փոփոխութիւնները Ս. Յարութիւնեանը Վ.-ի սևագրութիւնից արտագրելով՝ պատրաստեց տպագրութեան համար։ Երրորդ գրքի բնագիրը կազմել է Մ. Աբեղեանը մենակ։ Բնագրի կազմութեանը օգնել է շատ անգամ և Ստ. Մալխասեանցը, որ վարելով տպագրութեան սրբագրութիւնը՝ ամեն մամուլի համար բազմաթիւ ցուցումներ և դիտողութիւններ է ուղարկել Էջմիածին Մ. Աբեղեանին, ցոյց տալով ծանօթութիւնների մէջ կասկածելի թուացող կամ արտագրութեան ժամանակ չնշանակած կամ թերի նշանակած կէտեր, որ նորից ստուգել և լրացրել է Մ. Աբեղեանը, ինչպէս և առաջարկելով այս կամ այն ընթերցուածը ծանօթութիւնների մէջ դնելու փոխանակ՝ բնագրի մէջ առնել, կամ ընդհակառակն։ Մ. Աբեղեանը յաճախ օգտուել է այս առաջարկութիւններից. բայց և այնպէս տպագրութեան մէջ ճշտութեամբ կատարուել են վերջնական ցուցումները Մ. Աբեղեանի, որի վրայ և ընկնում է բնագրի կազմութեան ամբողջ պատասխանատուութիւնը։ Երբեմն, երբ Ստ. Մալխասեանցի առաջարկութեանը համակարծիք չի եղել Մ. Աբեղեանը, իսկ առաջարկութիւնը կարևոր է համարուել բնագիրն այս կամ այլ կերպ հասկանալու նկատմամբ՝ Ստ. Մալխասեանցի առաջարկութիւնը, ինչպէս սկզբից պայմանաւորուած է եղել Հրատարակչական Յանձնախմբի հետ, զետեղուած է ծանօթութիւնների մէջ իր անուան սկզբնատառերով։

Ծանօթութիւնների մէջ դրուած վկայութիւնները Մ. Աբեղեանինն են. բայց Ստ. Մալխասեանցն էլ երբեմն նրա հաւանութեամբ աւելացրել է այդպիսիք։ Վկայութիւնները լիակատար մէջ բերելու դիտաւորութիւն չի եղել, այլ այնքան միայն, որքան հարկաւոր է համարուել բնագրի կազմութեան համար. քանի որ վկայութիւնների լիակատար ամփոփումը կարելի է գտնել հանգուցեալ Գր. Խալաթեանցի երկու

հատորների մէջ—(*Армянскій Эпосъ въ Исторіи Арменіи Моисея Хоренскаго, Москва 1896.* և *Армянскіе Аршакиды въ Исторіи Арменіи Моисея Хоренскаго, Москва 1903.*

Գրքի վերջում դրուած յատուկ անունների ցանկը Ա. գրքի համար կազմել է Մ. Աբեղեանը, իսկ միւս երկու գրքերի համար՝ Ս. Յարութիւնեանը. բայց սրա կազմածը սկզբնական թերթիկների վրայ ամբողջապէս վերստուգել է Մ. Աբեղեանը և ապա ճշտելով համանունները՝ արտագրել է ամբողջը։ Հանրածանօթ անունների մեծ աղաւաղումները երբեմն չեն առնուած ցանկի մէջ։ Մ. Աբեղեանինն է և այս Յառաջաբանը և Խորենացու Մատենագրութեան ցուցակը։ Վերջինս ըստ կարելւոյն լիակատար անելու համար՝ Մ. Աբեղեանի դիմումով Հ. Արսէն Ղազիկեանը սիրայօժար ուղարկեց Վենետիկից իր «Հայկ. Նոր Մատենագիտութիւն և Հանրագիտարան հայ կեանքի» դեռ չհրատարակուած գրքի այն մամուլը, որի մէջ է Խորենացու Մատենագիտութիւնը. ուստի այստեղ հարկ ենք համարում մեր շնորհակալութիւնը յայտնել Մխիթարեան Հօրը։ Զ-ների մեծ խմբերը մասամբ որոշուած էին բաղդատութիւնից առաջ, մասամբ որոշւում են բաղդատութեան ժամանակ. երկրորդական խմբակցութիւնների որոշումը միայն Մ. Աբեղեանինն է, ընագրի և ընթերցուածների տպագրելուց յետոյ։ Զ-ներից տասներկուսը նկարագրել էր Ս. Յարութիւնեանը, բայց Մ. Աբեղեանը կորցնելով նրա տետրակը՝ ստիպուած եղաւ երկրորդ անգամ նոյն աշխատանքը կատարել միւս Զ-ների և տպագիրների հետ միաժամանակ։ Ամբողջի վերջնական սրբագրութիւնը կատարել է Մ. Աբեղեանը, բացի Բ. գրքի առաջին երկու մամուլներից, որ Ս. Յարութիւնեանն է վերջնապէս սրբագրել։

Վերջում կարևոր ենք համարում յիշել և հետևեալը։ Ինչքան էլ առանձին խնամքով պատրաստուի այսպիսի աշխատանքը՝ վրիպակներն անխուսափելի են, մանաւանդ որ շատ անգամ կարդացած լինելով գրեթէ անգիր գիտենք Խորենացին, որով և աչքից կարող են փախած լինել ընթերցուածներ։ Կըլինին և ականջի սխալներ, քանի որ մէկը կարդացել է Զ-ները, միւսը հետևելով տպագրին՝ լսելով նշանակել է տարբեր ընթերցուածները։ Սխալներ առաջ են գալիս նոյն-իսկ ընթերցուածները Զ-րից արտագրելիս և ամենից շատ, ինչպէս վերևում նկատեցի՝ ընթերցուածների համախմբումի, այլ և արտագրութեան և տպագրութեան միջոցին։ Առանձնապէս պէտք է յիշատակել, որ, մի դժբախտ թիւրիմացութեամբ, Խ խմբին պատկանող ա Զ-րի համար բաւական թուով սխալ ընթերցուածներ կան նշանակուած Վ.-ի հետ. բայց Մ. Աբեղեանն այդ բոլոր ընթերցուածները նորից ճշտել է Զ-րի վրայ և սխալները դրուած են այս գրքի յետևում ուրիշ նկատուած վրիպակների հետ։ Մնացած սխալները, եթէ կան, կարծում ենք, առանձին կարևորութիւն չունին. որովհետև 1, եթէ մի Զ-րի տառի տեղ մի ուրիշ Զ-րի տառ լինի նշանակուած, ինչպէս Կ$^{1}$-ի փոխ. Կ$^{2}$, այսպիսի վրիպակը նշանակութիւն ունի միայն խմբակցութիւնները որոշելու համար. իսկ խմբակցութիւնները շատ պարզ որոշւում են հարիւրաւոր և հազարաւոր ուրիշ ընթերցուածներով. 2, եթէ որևէ

Զ-րի այս կամ այն ընթերցուածը աչքից փախած լինի՝ դա եւ առանձին արժէք չունի, քանի որ նոյն խմբին պատկանող Զ-ները բազմաթիւ են և դրանց մէկն ու մէկը անպայման տալիս է այդ ընթերցուածը, և 3, եթէ մի հատ Զ-րի միայն առանձնայատուկ ընթերցուածն աչքից փախած լինի՝ դա եւ, կարծում ենք, մեծ նշանակութիւն չունի, քանի որ այդպիսի առանձնայատուկ ընթերցուածները մեծ մասամբ անարժէք են սկզբնական բնագրի նկատմամբ։—Մենք մեր կողմից աշխատել ենք, որ մեր գործն անթերի լինի. բայց եթէ կըպատահին վրիպակներ՝ այդ ապագայում աշխատողների ներողամտութեանն ենք թողնում։

Չպէտք է մոռանալ, որ այս գործի վրայ աշխատողներս մեր օրուայ թարմ ժամանակը չենք նուիրել սրան, այլ եղել ենք մարդիկ՝ «անպարապ» իւրաքանչիւրս մեր պաշտօնի գործերից, և մեր յոգնութեան ժամերին ենք կատարել այդ և նոյն-իսկ մեր հանգստեան ժամերը նուիրել դրան տարիների ընթացքում, չխնայելով ժամանակ և եռանդ և կրելով այդպիսի տաղտկալի գործի ծանրութիւնը, որ այսպիսի բազմաթիւ օրինակների բաղդատողներն ու բիւրաւոր ընթերցուածները համախմբողները միայն կը հասկանան թէ ինչ է։ Արել ենք այն, ինչ որ կարողացել ենք։ Մենք մեզ լիովին վարձատրուած կը համարէինք, «միայն թէ շնորհակալ ոք մերոցս գտանիցի աշխատութեանցս»։

ՄԱՆՈՒԿ ԱԲԵՂԵԱՆ

ՍԵԹ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

30 սեպտեմբերի 1912.

Ս. Էջմիածին.

II.

# Մ Ա Տ Ե Ն Ա Գ Ր Ո Ւ Թ Ի Ւ Ն

## Ա. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ.

### ՄԻԱՅՆ ԲՆԱԳԻՐ.

1. Ամստերդամ, 1695. «Ազգաբանութիւն տոհմին Յաբեթեան»...
2. Վենետիկ, 1752. «Ազգաբանութիւն տոհմին Յաբեթեան»...
3. Վենետիկ, 1827. «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց»։
4. Վենետիկ, 1881. «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց»։
5. Տփխիս, 1881. «Սրբոյ հօրն մերոյ Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց»։
6. Տփխիս, 1910. «Սրբոյ հօրն մերոյ Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց»։
7. Վենետիկ, 1843. «Սրբոյ հօրն մերոյ Մովսիսի Խորենացւոյ Մատենագրութիւնք (Պատմութիւն Հայոց, Թուղթ Սահակայ Արծրունեաց իշխանի եւն)»։
8. Վենետիկ, 1865. «Սրբոյ հօրն մերոյ Մովսիսի Խորենացւոյ Մատենագրութիւնք»։

### ԲՆԱԳԻՐ ԵՒ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ.

9. Հայ-Լատիներէն, Լոնդոն, 1736. Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն եւ Աշխարհագրութիւն. *Mosis Chorenensis Historiae Armeniacae Libri* III. *Accedit ejusdem Scriptoris Epitome Geographiae... Latinè verterunt, notisque illustrarunt Gulielmus et Georgius, Gul. Whistoni Filii...*
10. Հայ-Ֆրանսերէն, Վենետիկ, 1841. Ա. եւ Բ. գրքերը միայն. *Moïse de Khorène... Histoire d'Arménie. Texte arménien et traduction française par P. E. Le Vaillant de Florival.*
11. Հայ-Ֆրանսերէն, Փարիզ, 1845. *Moïse de Khorène... Histoire d'Arménie. Texte arménien et traduction française, avec notes explicatives et précis historiques sur l'Arménie... Par P. E. Le Vaillant de Florival.*

## ՄԻԱՑՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ.

12. Աշխարհաբար, Ս.-Պետերբուրգ, 1889. «Մովսէս Խորենացու Հայկական Պատմութիւն. աշխարհաբար թարգմանեց և լուսաբանեց Խորէն Ծ. վ. Ստեփանէ»։
13. Աշխարհաբար, Ս.-Պետերբուրգ, 1898.—Նախորդ թարգմանութեան երկրորդ տպագրութիւնը, սրբագրուած և ուղղուած։
14. Լատիներէն, Ստոկհոլմ 1733. *Epitome commentariorum Moysis Armeni de origine et de rebus Armenorum et Parthorum item series principum Iberiae et Georgiae cum notis et observationibus Henrici Brenneri...*
15. Ֆրանսերէն, Պարիզ, 1836. *Histoire d'Arménie de Moïse de Khorenatzi... traduite p. P. E. Le Vaillant de Florival...*
16. Ֆրանսերէն, Պարիզ, 1869. *Moïse de Khorène. Histoire d'Arménie en trois livres. Traduction nouvelle accompagnée de notes historiques, critiques et philologiques. (Collection des Historiens anciens et modernes de l'Arménie, publiés en français... par Victor Langlois... Tome deuxième.*—Առաջին հատորի մէջ կա ունի՝ *Mar Apas Catina. Histoire ancienne de l'Arménie...*)։
17. Իտալերէն, Վենետիկ, 1841. *Storia di Mosè Corenese, versione illustrata dai Monaci armeni Mechitaristi, ritoccata quanto allo stile da N. Tommaséo...*
18. Իտալերէն, Վենետիկ, 1850. Նախորդի երկրորդ տպագրութիւնը։
19. Իտալերէն, Վենետիկ, 1841. *Mosè Coronese, storico armeno del quinto secolo, versione di Giuseppe Cappelletti.*
20. Ռուսերէն, Պետերբուրգ, 1809. *Армянская Исторія, сочиненная Моисеемъ Хоренскимъ... перевелъ съ Армянскаго... Архидіаконъ Іосифъ Іоаннесовъ.*
21. Ռուսերէն, Մոսկուա, 1858. *Исторія Арменіи Моисея Хоренскаго. Перевелъ съ Армянскаго и объяснилъ Н. Эминъ.*
22. Ռուսերէն, Մոսկուա, 1893. Նախորդի երկրորդ տպագրութիւնը, սրբագրուած և ուղղուած։
23. Գերմաներէն, Ռեգենսբուրգ, 1869. Մանակի թարգմանութիւն. *Des Moses von Chorene Geschichte Grossarmeniens. Aus dem armenischen übersetzt von Dr. M. Lauer.* Երկրորդ գրքի բնագիրը նաև Լաուերի դասագրքում՝ *Armenische Chrestomathie zu des Verfassers Grammtik der classischen armenischen Sprache. Wien, 1881.*
24. Հունգարերէն, Թարգմանութիւն Քրիստ. Սմնկոզեանի, ուսուցիչ Կերլա հայաքաղաքի, 1892.

---

## Բ. ՔՆՆՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ.

Մովսէս Խորենացուն վերաբերեալ մատենագրութիւնն այնքան ընդարձակ է, որ ամեն ինչ այստեղ դնել անկարող ենք, քանի որ ձեռի տակ չունինք ցուցակներ և գրադարան։ Բացի վերոյիշեալ թարգմանութիւնների մէջ եղածներից՝ հնարաւոր է մեզ յիշատակել և հետևեալները, որոնց աղբիւր եղել են գլխաւորապէս—ա. Գ. Խալաթեանցի երկու հատորները, Арм. Эпосъ и Арм. Аршакиды. բ. Տաշեանի «Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա». գ. Կ. Կոստանեանցի «Հայագիտութիւնն Արևմտեան Եւրոպայում», Թիֆլիս, 1910. դ. Հ. Գ. Զարպհանալեանի «Ուսումնասիրութիւնք Հայ լեզուի և մատենագրութեան յարևմուտս», Վենետիկ, 1895. ե. Հ. Արսէն Ղազիկեանի «Հայկ. Նոր Մատենագիտութիւն և Հանրագիտարան հայ կեանքի»։ Վերջինից են առնուած հայերէն պարբերական թերթերի մէջ եղած յօդուածները։

1. Աբեղեան Մ. Հայ ժողովրդական Առասպելները Մովսէս Խորենացու Հայոց Պատմութեան մէջ. Վաղարշապատ, 1901. (արտատպութիւն «Արարատ»-ից)։
2. Ադոնց Ն. յօդուած ի Византiйскiй Временникъ, т. VIII, вып. 1—2.
3. Ալիշան Հ. Ղ. Հայապատում, Վենետիկ, 1901—1902. Հին Հաւատք, Վենետիկ 1895. Բազմաթիւ տեղեկութիւններ «Այրարատ»-ի և միւս երկերի մէջ։ Յօդուած Դ. գրքի մասին «Բազմավէպ» 1851, էջ. 69։ Տես և ներքևում «Բազմավէպ»։
4. Բաումգարտներ. A. Baumgartner, Ueber das Buch die „Chrie", ի ZDMG, 1886, Heft III. p. 457—515.
—Dr. M. Lauer und das zweite Buch des Moses Chorenatzi, Leipzig, 1885.
5. Բլաու, O. Blau, Die Herren von Sophene und deren Münzen, ի Numismatische Zeitschrift, Wien, 1877. IX. p. 108.
6. Գարագաշեան, Քննական Պատմութիւն Հայոց, հատ. Ա. Կ. Պոլիս, 1880 և հատ. Ա—Դ, Տփղիս, 1894—95.
—Ճաշակք Ոսկեդէն դպրութեան, հատ Ա. Կ.-Պոլիս, 1887, էջ 23—36. հատ. Բ. Կ. Պոլիս, 1889, էջ 2—11։
7. Գաթըրճեան Հ. Յ. Տիեզերական Պատմութիւն, հատ. Ա. 1849, էջ 87 հմն.։
—Պատմութիւն Մատենագրութեան Հայոց, Վիեննա, 1851.
8. Գելցեր Հ. H. Gelzer, Africanus und die Byzantinische Chronographie I. 1880. էջ 209 և 281.
—Die Armenische Mythologie. Beiträge der Königl. Sächs. Gesellsch. d. Wissenschaften. Sitzung vom 7 dec. 1895.

—*Armenien*, ի *Realencyclop. für protest. Theologie u. Kirche*. II Bd. 1897. Հայ. թարգմ. հ. Գր. Գալեմքեարեան, Վիեննա. 1897. «Համառօտ Պատմութիւն Հայոց»։—Քննադատ. Արեւելեան Մամուլ, 1897, էջ 687. «Մշակ», 1897 Թ. 101.

—*Zur armenischen Götterlehre. Berichte über die Verhandl. d. Sächs. Gesellsch. d. Wiss. hist. phil. cl.* 1896. Bd. 48. Հայ թարգմ. հ. Յովհ. Թորոսեան, Վենետիկ, 1897. «Հետազօտութիւն հայ դիցաբանութեան»։ Քննադատ. «Մասիս», 1897, Թ. 112.

9. Գէորգեան Բ. վ. (Ճուղուրեան), Խորենացին Խորենացով պէտք է հասկանալ, Ա. Վաղարշապատ, 1889. Բ. Թիֆլիս, 1902.

10. Գուտշմիդ. A. v. Gutscmid, *Ueber die Glaubwürdigkeit der armenischen Geschichte des Moses von Khoren*, Leipzig 1876. Ausdruck aus d. Berichten ü. d. Verhandlungen d. Königl. Sächs. Gesellsch. d. Wiss. 1876 von 23 April. Հայ թարգմ. հ. Ն. Ճնտոյեան, Բազմավէպ 1877, էջ 43—51, 110—116, 213—222, 289—302.

—*Moses of Chorene*, ի *Encyclopaedia Britanica* 1883. XVI. 861—863.

—*Kleine Schriften*, Bd. III. Leipzig, 1892. էջ 282—338.

—*Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroene*. St.-Pétersb. 1889, ի *Mémoires de l'Académie Impér. des sciences St.-Pétersb.* 1887, VII. série. T. XXXV. № 1. p. 17.

11. Դաղբաշեան Յ. Փաւստոս Բիւզանդացի և իւր պատմութեան խարդախողը։ Քննութիւն Մովսէս Խորենացու աղբիւրների մասին, Վիեննա 1898։ (Ազգ. Մատեն. ԻԹ.)։ Քննադատ. «Բազմավէպ» 1898. Թ. 12. «Մշակ» 1898 Թ. 201, 202, 204, 205. (Ստ. Մալխասեանց)։ «Հանդէս Ամսօրեայ», Թ. 4. (Դաղբաշեան Ս. Մ.-ի յօդուածի դէմ)։ «Նոր-Դար» 1898 Թ. 192.

12. Դիւլորիէ, Ed. Dulaurier, *Étude sur les chants historiques et les traditions populaires de l'ancienne Arménie*, ի *Journal Asiatique* 1852. № 1. vol. XIX.

—*Les chants populaires de l'Arménie*, ի *Revue de deux Mondes* 1852.

13. Զարպհանալեան Հ. Գ. Պատմութիւն հայերէն դպրութեանց, Ա. Հին Մատենագրութիւն Հայոց, Վենետիկ 1865։ Երկրորդ տիպ, Հայկական հին դպրութեան պատմութիւն 1886։ Երրորդ տիպ 1897.

—Ուսումնասիրութիւնք հայ լեզուի և մատենագրութեան յարեմուտս ԺԴ—ԺԹ դար. *Les études Arméniennes en Europe (siècles XIV—XIX)*. Վենետիկ 1895, էջ 102, 243, 281, 338, 370. (Գ. Ա. Տրումպֆի «Հայկ. Ուսմունք յԵւրոպա» գրուածքի թարգմանութիւնն է, ուղղումներով և յաւելուածներով)։

14. Էմին Մ. Վէպք Հնոյն Հայաստանի, Մոսկուա 1850. Երկրորդ անգամ Էմինեան «Ազգագրական Հանդէս»-ի Ա. հատորի մէջ։

—Н. Эминъ, *Очеркъ Религіи и вѣров. язычн. армянъ*, Москва 1884.

—*Вахаінъ Вишапакахъ*... С.-П. 1873.

—*Мидійцы въ древней Арменіи*, Москва 1881.

—*Моисей Хоренскій и древн. эпосъ Армянъ. Москва* 1881. *Հայ թարգմ. Գր. Խալաթեանց. «Մովսէս Խորենացին և Հայոց հին վէպերը», Թիֆլիս* 1886. *Նոյնը թարգմ. Խաչ. Յովհաննիսեանց. «Մովսէս Խորենացի և Հին Հայկական վէպ». Թիֆլիս* 1887.

—*Династическій списокъ Хайкидовъ, Москва* 1884.

15. *Լա Կրոզ*, M. V. La-Crose. *Thesaurus epistolici Lacrosiani, Լայպցիգ*, 1742—1746. *հատ.* I. 358 *հան. հատ.* III. 184 *եր*.

16. *Լանգլուա*, V. Langlois, *Les sources de l'Histoire d'Arménie de Moïse de Khorène, Paris* 1858.

—*Études sur les sources de l'Histoire d'Arménie de Moïse de Khorène, ի Bulletin de l'Acad. imp. d. sciences, Mél. asiat.* 1861. *t. IV. p.* 293—368. *թարգմ. Ադաբեկեան և Ս. Պալասանեան, Տփղիս* 1860 *և* 1863.

17. *Լանդիեր*, Landière, *Notice sur Moïse de Khorène, historien de la Grande Arménie. Paris*, 1838.

18. *Խալաթեանց Բ. Հին հայոց ժողովրդ. վէպերը և Մովս. Խորենացի*

19. *Խալաթեանց Գր. Г. Халатьянцъ, Армянскій Эпосъ въ Исторіи Арменіи Моисея Хоренскаго. Опытъ критики источниковъ. Часть I. Изслѣдованіе, часть II. Матеріалы. Москва*, 1896.

—*Армянскіе Аршакиды въ „Исторіи Арменіи" Моисея Хоренскаго. Опытъ критики источниковъ. Часть I. Изслѣдованіе, часть II. Матеріалы. Москва*, 1903.

—*Начало критическаго изученія исторіи Арменіи Моисея Хоренскаго. ЖМНП.* 1894, *հոկտ.*

—*Ղազար Փարպեցի և գործք նորին, Մոսկուա*, 1883.

—*Մովսէս Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադ. ուսումնասիր. Վիեննա*, 1898.

—*Մարաբաս Մծուրնացի, կեղծ Ագաթանգեղոս, Վենետիկ*, 1898.

—*Մովսէս Խորենացու Հայոց Պատմութեան սկիզբը։*

—*Եդեսիոյ Աբգար թագաւորը ըստ Խորենացւոյ։*

—*Հայ Արշակունիք Խորենացւոյ Հայոց Պատմութեան մէջ։ Վիեննա* 1906.

—*Հայոց վէպը Մովսէս Խորենացւոյ Հայոց Պատմութեան մէջ։*

—*Մովսէս Խորենացի և իւր աղբիւրները։*

20. *Կատրըմէր*, *Quatremère, Observations sur la ville de Ninive, ի Journ. des Savants* 1850. *p.* 364 *հտ.*

21. *Կարենեանց Յ. Բաղդատութիւն Պատմութեան Մովսիսի Խորենացւոյ եւն. Տփխիս*, 1858.

22. *Կարիեր*, A. Carrière, *Moïse de Khoren et les Généalogies patriarcales. Paris*, 1891. *Rev. hist. XXV. Թ.* 387.

—*Nouvelles sources de Moïse de Khoren. Vienne*, 1893.

—*Nouvelles sources de Moïse de Khoren, Supplément. Vienne* 1894. *Հայ թարգմ. Տաշեանի «Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ» և «Յաւելուած». Վիեննա*, 1893 *և* 1894.

—*La légende d'Abgar dans l'Histoire de Moïse de Khoren. Paris*,

1895. Հայ թարգմ. «Հանդէս Ամսօրեայ» 1896. էջ 33—35, 97—101, 170—175, 238—246, 263—267 ևն. Վերջինիս դէմ Հ. Բ. Սարգսեան՝ Բազմավէպ 1894 էջ 198—210. Աբգարի զրոյցի մասին տես Халатьянцъ Арм. Аршак. եր. 76 հտ. և Հ. Տաշեան „Zur Abgarsage", ի WZKM. Bd. IV. Heft 1, 2, 3.

—Les huit sanctuaires de l'Arménie d'après Agathange et Moïse de Khoren.

—Նամակ «Հանդէս Ամսօրեայ» խմբագրութեան Մար Աբասի մասին. «Հանդէս Ամսօրեայ» 1897. յունուար։

23. Կիպերտ, H. Kiepert, Ueber die älteste Landes—und Volksgeschichte von Armenien, ի Monatsberichte d. Königl. Pr. Acad. d. Wiss. Berlin, 1869.

24. Կոնիբեր, F. Conibeare. Մովսէս Խորենացւոյ Պատմութեան աղբերաց խնդիրը. «Հանդէս Ամսօրեայ» 1902. յուլիս, օգոստոս.

—Մովսէս Խորենացու ժամանակի մասին, Byz. Zeitschr. 1901. 3—4. Heft. Հայ. թարգմ. Տաշեանի Յառաջաբանով. «Հանդէս Ամսօրեայ» 1902. յունուար և մարտ։

25. Ճնտոյեան Ն. եպիսկ. Դատաստան ի վերայ Խորենացւոյ և դատաւոր նորա. «Բազմավէպ» 1878. էջ 32—45.

26. Մալխասեանց Ստ. Մովսէս Խորենացու նոր աղբիւրները. «Մուրճ», 1892.

—Սեբէոսի Պատմութիւնը և Մովսէս Խորենացի, մատենագր. ուսումն. Թիֆլիս, 1899։

27. Մակլեր, F. Macler, Moïse de Khoren et les travaux d'Auguste Carrière ի Revue Archéolog. Paris, 1902.

28. Մառ, Н. Марръ. Къ критикѣ Исторіи Моисея Хоренскаго СПБ. 1898.

—О начальной исторіи Арменіи Анонима. Къ вопросу объ источникахъ Исторіи Моисея Хоренскаго. ի Византійскій Временникъ, 1894, II.

—Изъ лѣтней поѣздки въ Арменію. Отдѣльный оттискъ изъ „Зап. В. Отд. Имп. Р. Арх. Общ." 1890. Томъ VI. стр. 135—228.

—Арабское извлеченіе изъ сирійской хроники Марабаса ի Записки Вост. Отд. Имп. Русс. Арх. Общ. т. XIV և Отд. оттискъ СПБ. 1902.

Հայերէն թարգմանութիւններ՝ «Ամառնային ուղևորութիւնից» ևն։ «Առ քննադատութիւն պատմութեան Մ-ի Խորենացւոյ». «Անանունի Հայոց նախն. պատմութեան մասին. Մովսէս Խորենացու պատմ. աղբիւրներուն հարցի վերաբերմամբ, Կարիէրի քննադատ. յօդուածների առթիւ»։

—Յօդուած ի Византійскій Временникъ. Томъ V. вып. 1 и 2. 1898. եր. 227 հտն. (Քննադ. Խալաթեանցի Армянск. Эпосъ գրքի)։

29. Մարկվարտ, Marquart. յօդուած ի ZDMG. 1895. IV p. 656.

30. Մեսրոպ վարդ. յօդուածներ՝ «Արարատ» 1893 յունուար եր. 65—73. 1898. եր. 165—173.

—Հրատարակութիւն «Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական Պատմութիւն». Վաղարշապատ, 1897.

31. Միաբան (Գ. Տ. Մկրտչեան) Խորենացու պատմութեան ուսումնասիրութիւն, Վաղարշապատ 1896. Նոյնը «Արարատ» 1890 էջ 567—576, 674—682. 1891 էջ 87—106, 147—155, 196—207, 277—281, 384—402, 437—448.

—Հայկականք, Վաղարշապատ 1894.

—Յօդուած, «Արարատ» 1897, էջ 422.

32. Նև, F. Nève. *L'Arménie chrétienne et sa littérature*, Louvain 1886.

33. Նիկար Պ. Nicard,—Փօլ Նիքար, Տիփինոս և Սկիւլլիս Կրետացի արձանագործք, *Dipoenus et Scyllis sculpteurs crétois*, հրատար. ի Յիշատակագիրս Գաղղիոյ ազգային հնագիտաց ընկերութեան Շար չորրորդ. հատ. Ը. Փարիզ 1877. յէջս 131—275 (Զարպհ. Ուսումնասիրութիւնք հայ լեզուի... եր. 243 հտ.)։

34. Նիկոլսկի, В. М. Никольскій, *Клинообразныя надписи Ванскихъ царей. III. т.* ի Древн. Вост. труд. Вост. Ком. М. Арх. Общ. вып. III.

35. Նորայր Բ. Քննասէր Ա, Բ. տետր.

—Հայկական բառաքննութիւն, Կ.-Պոլիս, 1880.

—Յօդուած «Հանդէս Ամսօրեայ» 1893 սեպտ. 273—78. Տես և նիրքեում «Մշակ».

36. Շրումփ, D. Schrumpf, *The study of Armenian*, 1891. Տես և Զարպհանալեան։

37. Զամչեան Միք., Պատմութիւն Հայոց. 3 հատ.

38. Պալասանեան Ստ., Պատմութիւն Հայոց Գրականութեան. Տփխիս, 1865.

39. Պատկանեան Ք. К. Паткановъ, *Ванскія надписи и значеніе ихъ для исторіи Передней Азіи* ի ЖМНП. 1874—1881. և առանձին СПБ. 1881.

40. Պարոնեան Ս. Վ. Վաւերականութիւն Մար Աբասեան Մատենին որ ի գիրս Մովսիսի Խորենացւոյ։ Տես նաև «Բանասէր», «Հանդէս Ամսօրեայ»։

41. Պետերման, J. H. Petermann, *Ueber Moses Chorensis und die Quellen seiner Geschichte der Armenier*. Sitzungsber. d Berl. Acad. d. Wiss· 1851.

—*Ueber die schriftl. Quellen des Moses Chor.* նոյն տեղում 1852.

42. Պիշար, M. Pichard, *Essai sur l'histoire d'Arménie par Moïse de Khorène*, Paris 1866.

43. Ռընան, Renan, *Histoire générale des langues sémitiques*, Paris 1858. p. 262 հտ.

44. Սարգսեան Հ. Բ. Քննութիւն Մարիբասեան աւանդութեան ըստ Մ. Խորենացւոյ և անոր աղբերաց վրայ։ «Բազմավէպ» 1883. էջ 54, 111, 224 ևլն. 1884. էջ 35, 123, 228, 315. 1885. էջ 11, 108. Համառօտ բովանդակութիւն տեսութեանց, «Բազմավէպ» 1885. էջ 237—247.

—Ա. Կուդշմիդ ի Համապատումն Բրիտանականին և եղծ կարծեաց նորա։

—Քննադատութիւն ի վերայ Թղթոյն Մովսիսի Խորենացւոյ.

—Վարք ս. Սեղբեստրոսի և աղբերք Մովսիսի Խորենացւոյ, Վենետիկ 1893.

45. Սէն-Մարտէն. M. J. Saint-Martin, Notices sur la vie et les écrits de Moïse de Khorène. Journ. Asiat. 1823. II. p. 321—344.

—Fragments d'une Histoire des Arsacides, Paris 1850 I. p. 145—158.

46. Տաշեան Ուսումնասիրութիւնք Ստոյն Կալլիսթենայ, «Հանդէս Ամսօրեայ» 1891—92. և առանձին Վիեննա 1892.

47. Ֆետտեր. P. Vetter, Die Sibyllen-Citat bei Moses von Choren. Theol. Quartalschr. Tübingen, 1892. III.

—Moses von Choren, Wetzer u. Weltes Kirchenlexicon VIII. 1893.

—Das Buch des Mar Abas von Nisibis, im Festgruss R. p. Roth, 1893.

—Moses von Choren, in Nirschl's Patrologie und Patristik, Mainz 1885. Bd. III.

—Die nationalen Gesänge der alten Armenier. Theol. Quartalschrift, Tübingen, 1894. Այս բոլորի հայ թարգմ. «Ֆէթթէրի հայկական աշխատասիրութիւնք». Վիեննա, 1895.

48. Ֆրերէ. Fréret, Mémoires sur l'ère arménienne. Oeuvres Complètes. t. XII. p. 187—254. և Mémoires de l'Acad. des Inscriptions et Belles-Lettres. t. XLVII. p. 98 և հն.

Հետևեալ պարբերական թերթերը հ. Ա. Ղազիկեանի «Նոր Մատենագիտութիւնից»։ Ազգասէր, 1846, էջ 175 և 177։—Արարատ, «Խորենացու Պատմութեան ուսումնասիրութիւնը» (Միարան), 1890, 1891. —«Մովսէս Խորենացու մէկ նոր աղբիւրը» (Փ. Տ. Մովս.), 1893. 65, 283.—«Մովսէս Խորենացի և իւր աղբիւրները» (Գ. Խալ.), 1897, 531. —«Խորենացու ժամանակը որոշելու նոր փորձ (Գ. Տ. Մկրտչեան), 1897, 422. «Դիտողութիւններ Խորենացու մասին» (Գր. Վանցեան), 1900, 186.— «Մի հատուած Մովսէս Խորենացու Պատմութիւնից», 1895, 118, և Թ. 4, Յաւելուած՝ էջ 12.—1896, էջ 317.— «Ի Մովսիսէ քերթողահօրն պատմութենէ վասն Կոստանդիանոսի մեծի թագաւորին», 1894, Թ. 5. «Մովսէս Խորենացու Ուսումնասիրութիւնը», (Գ. Տ.-Մկրտչ.), 1894, էջ 148.— «Փիրմիլիանոսը Խորենացու Պատմութեան մէջ», 1894, 26.— «Մովսէս Խորենացու մեղեդին ի պատիւ Ս. Գր. Լուս.», 1895, 202.— Մակլերի «Moïse de Khoren et les travaux d' A. Carrière» գրութեան առթիւ 1904, Թ. 1։— Արեւելեան Մամուլ 1881 (Ս. վ. Պարոնեան), 1896, 470։—Արեւելք, «Մովսէս Խորենացի և Լամարթին», 1890, Թ. 1933—35, 1959։—Արծուի Վասպուրական, «Մովսէս քերթողահայր ակնաղբիւր հայոցի դպրութեան», 1858, 223։— Արձագանք 1891, Թ. 37։— Արմէնիա (հունգարերէն) Gergely, G. 1887, Heft 1։— Արշալոյս Արարատեան 1878, Թ. 1092։— Բազմավէպ,

«Մովսէս Խորենացի և իր Հայոց Պատմութիւնը» (Արշալոյս) 1847, էջ 150.—«Մովսէս քերթողահայր Հայոց» նոյն 1849, 51. (Նոյնը քաղուածոյ արտատպուած ռուսահայ լեզուով Արաքս 1893 գիրք Բ. էջ 46, Պռօշեանցի «Երանք թէ ճշգրիտ» վիպակին մէջ).— «Յաղագս Մովսիսի Խորենացւոյ Դ. անուանեալ գրոցն պատմութեան» նոյն 1851, 69.— 1894, էջ 544. Տեղայի թղթակցութիւնը, և 547, Հ. Բ. Ս-ի դիտողութիւնը.— Այլ թղթակցութիւն Տեղայի 1895, 65.— «Քննադատութիւն քննադատութեան Ա. Կարիէրի և Խորենացւոյ Ե. դարու բնագրոշմը (Հ. Բ. Ս.), 198—210.— «Մովսէս Խորենացի և Լա Կրոզ» (Ե. Տեղա) 1897, 5.— «Ազգային մեծ մատենագիր մի», 233.— «Բեեռագիր արձանագրութիւնք Ռուսաց Հայաստանում և Մ. Խորենացի» (Խ. Յովհաննիսեանց), 457.— «Սոկրատայ հին թարգմանութեան հրատարակութիւնն և Մ. Խորենացի» (Հ. Բ. Ս.), 565—575.—«Հին Պատառիկ մի Մովսիսի Խորենացւոյ» (Արշալոյս) 1898, 165—174.—«Մ. Խորենացւոյ Պատմագրութեան ուսումնասիրութեան ընթացքը և անոր հնութեան նոր ապացոյցները» (Հ. Բ. Ս.), 1903, Թ. 11, 12.—(Ասոր դէմ ՀԱ. 1904, Թ. 1—2).— 1904, Թ. 2, «Պետրոս Սիւնեցի» ևլն. Թ. 3, «Գրիգոր Սարկաւագապետ» ևլն.— «Խորենացին է Աստուածաշնչի Մնացորդաց գրքերի առաջին հայ թարգմանողը Ասորերէն բնագրից» (Բարդ. եպ. Գէորգեան), 1905, 426.— «Երկրորդ տիեղերական ժողովն ու Մովսէս Խորենացի» (Հ. Բ. Ս.) 202, 301, 418։— Բանասէր Մ. Խորենացւոյ Պատմութիւն հայոց ուղղագրեալ և ծանօթարանեալ (Հ. Ս. Պարոնեան) 1889. 93, 178, 280, 349.— 1900, 317.— 1903, 166.— Մ. Խորենացւոյ խնդիրը, պատասխան առ «Հանդէս Ամսօրեայն» (նոյն), 349.— 1904 Թ. 5—6։— Երեւակ, «Մ. Խորենացի» 1858 հատ. Դ. էջ 363.— 1859,11.— «Մ. Խորենացիին վրայ նոր քննութիւն» 1860, 12։— Լումայ, «Խորենացին քննադատութեան մէջ» (Ա. Տ.-Միք.) 1900, գիրք Ա.— «Թուղթ Սահակայ Արծրունւոյ առ Մովսէս Խորենացի և պատասխանի» անդ։— Հանդէս Ամսօրեայ 1888, էջ 8, 79, 133, 171, 223, «Պ. Ամանտ... և երկիր Հայոց».— «Քննութիւն ողբոցն Մ. Խորենացւոյ» (Կ. Յ. Պասմաճեան) 1891, Թ. 12.— «Մ Խորենացւոյ մէկ նոր աղբիւրը Ա. 1892. էջ. 150 (Ասոր դէմ Մուրճ 1892 Թ. 12, (Ստ. Մալխ.)— Բ. 373։ Ասոնց դէմ անդ էջ 343 (Հ. Ս. Պարոնեան).— «Նորագոյն աղբերք ևն Կարիէրի». 1893 էջ 116 ևլն. քննադ. Ձէթթէրի, անդ էջ 243. տես և էջ 178.— «Թղթակցութիւն Կարիէրի առ Տաշեան», էջ 309.— «Սիբիլլեայց կոչումը Մ. Խորենացւոյ քով» (Ձէթթէր) 1893 Թ. 2.— «Մովսէս Խորենացի» (Ձէթթէր), անդ, էջ 371.— «Մովսէս Խորենացի ըստ ուսուցչապետ Ն. Մառի», 1895. էջ 18 ևլն.— 1896, էջ 315 (2).—1898, 313.— «Մի հատուած Մ. Խորենացու Պատմութիւնից», (տես Արարատ 1896, յուլիս).— «Մ. Խորենացւոյ նկատմամբ «Ծաղկաքաղի» մէկ փոքրիկ դիտողութիւնը», 1897, 61 (20).— Մ. Խորենացւոյ քննադատութեան առթիւ, 1898, էջ 185 (4), 189 (15).—«Երկու անկեղծ և ճշմարիտ գիտնականներ» (մին է Մեսրոպ վարդ. որու գրութիւնը տես Արարատ 1898, Թ. 3—4, էջ 165, «Սոկրատ պատմագիր և Մովսէս Խորենացի»).—

«Մ. Խորենացւոյ պաշտպանները կընուագին», 1898, Թ. 8—9, էջ 282 (13).— «Մ. Խորենացւոյ պաշտպանները» (Նորայրի Մշակ-ի մէջ հրատարակած յօդուածոց առթիւ), Թ. 12. էջ 382 (4).— 1889, Թ. 4. էջ 116—122 ընդդիմախօսութիւն.— Տես և Բանասէր 1900 հատ. Բ. պրակ Ա. էջ 55—82. և Հանդէս Ամսօրեայ 1900, էջ 316 (41).— «Սուտ Խորենացւոյ պաշտպանին», 1903, Թ. 7, էջ 222 (3).— «Մ. Խորենացին և Բ. Տիեզերական ժողովը» (Ն. Ա.), 1904, Թ. 1—2։— Ճռաքաղ, «Այցելութիւն շիրմի Ս. Վարդապետին մերոյ և քերթողահօր Մովսիսի Խորենացւոյ որ ի Տարօն», քերթ. (Մանուկ Ժամակոչեանց) 1860, 326։— Մասիս, «Աշխարհաբառ Խորենացի» 1890, ապրիլ 15.— Պատասխան՝ Արևելք 1890 Թ. 1879.— Մշակ 1886, Թ. 120.— 1894, Թ. 132, «Պրօֆ. Մառրի նոր աշխատութիւնը», և Թ. 139.—1895, Թ. 58.—1896, Թ. 70, «Մի բացատրութիւն Մ. Խորենացու աղբիւրների առիթով» (Գր. Խալաթ.) 1897, Թ. 3.— 1898, Թ. 192, 193, 195, 203, 216, 217.— 1899, Թ. 16, 17, «Հայերէն հին գրականութեան խնդիրներ. Մովսէս Խորենացի» (Նորայր).— 1900, Թ. 151, Մամուլ։—Մառի «Մովսէս Խորենացին և նրա քննադատները». Արաբական քաղուածք Մարիբասի Սիրիական Քրոնիկից (Մ. Խորենացու Պատմութեան հարցին վերաբերեալ), քննադ. անդ՝ 1902, Թ. 224—5։— Մուրճ 1891, էջ 290.—1893, Թ. 5, էջ 808. «Մի բանասիրական խնդրի առթիւ» (Խորենացին Ուխտանէսի մօտ).— «Մովսէս Խորենացին և Թուլեաց երգքը», 1894, Թ. 3.— «Հայագիտութիւնը XX դարու սկզբում» (Ստ. Մալխ.) 1901, Թ. 1—4։— Տարազ, «Մովսէս Խորենացու հայրենիքի մասին», 1903, Թ. 33։—Փարոս, «Վերջին բանք Մովսիսի Խորենացւոյ, որք պակասին ի տպագիր պատմութեան նորա», 1874, տետր Գ.։

Աշխարհաբար թարգմանութեան համար՝ Արաքս Բ. տարի, գիրք Բ. էջ 113։— Աղբիւր 1890, Թ. 1. Բաժին Բ.։— Արևելք 1890, Թ. 1933—35։—Արմէնիա, 1890, Թ. 78։— Հանդէս Ամսօրեայ 1890, էջ 113.—1892, էջ 361։ Քննութիւն Մ. Գալեմքի Խորենացւոյ պատմութեան աշխարհաբար թարգմանութեան և բնագրի ուսումնասիրութեան մասին՝ գործոյն ի Ռ. Յ. Պէրպէրեանէ (Իզմիրեանց Մրցանակի առթիւ), Մ. Գալեմքի պատասխանը անդ՝ 1893, էջ 201.— «Երջանիկ թարգմանիչ մը», անդ 1896, էջ 90։— Մասիս 1890, Թ. 3939, 3944։—Մշակ 1889 Թ. 142 (Ս. Հախումեան)։—Մուրճ 1890, Թ. 1. էջ 102 (Լ. Ս.)։— Նոր-Դար 1890, Թ. 10—14, 195 (Ս. Տ.-Սարգսեան)։ Բազմավէպ 1898, էջ 291։ — Հանդէս Ամսօրեայ 1898, Թ. 8—9. էջ 258—267, և էջ 185։— Մշակ 1898, Թ. 58, 107։— Փէթթէր, Lit. Rdsch. f. d. Kath. D. 1900, p. 201 f.

---

## III.

### ՀԱՄԱՌՕՏ ՑՈՒՑԱԿ

### ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԻ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐԻ։

*(ՑՈՅՑ ՏՐՈՒԱԾ ՆՇԵՐԸ ՅԱՌԱՋԱԲԱՆԻՆ ԵՆ).*

t Խոր. Առաջին տպագր., Ամստերդամ, 1695. էջ թ:

w Խոր. Երկրորդ տպագր. Վիստոնեան եղբայրների, Լոնդոն, 1736. էջ դ:

w² Երկրորդ տպագր. մէջ բերուած ձեռագրական ընթերցուածները ըստ Թովմայ Վանանդեցու. էջ դ:

Վ Եօթներորդ եւ Ութերորդ տպագրութիւնները, Վենետիկ, 1843 եւ 1865, եւ սրանցից արտատպուած Իններորդ եւ Տասնումէկերորդ տպագրութիւնները, Թիֆլիս, 1881 եւ 1910. էջ է, թ, իթ:

Վ Վ¹, Վ², ՎՎ Եօթներորդ եւ Ութերորդ տպագրութիւնների մէջ՝ 1, 2, 3 եւ բոլոր ձեռագրերից բերուած ընթերցուածները. էջ ե:

x Տասներորդ տպագրութիւն, Վենետիկ, 1881. էջ գ:

Կ¹ Կարենեանցի Բաղդասարեան առաջին Ձեռագիրը, № 1379 էջմ. հիմն. մատ., գրուած 1624 թ. էջ իթ.

Կ² Կարենեանցի Բաղդասարեան երկրորդ Ձեռագիրը, գրուած 1694 թ. էջ է.

Ա Ամստերդամի խմբին պատկանող Ձ-ներ, որ են

a Էջմ. Ձ-իր № 1671 հիմն. մատ., գրուած 1687 թ. էջ ժթ:

b Էջմ. Ձ-իր № 1672 հիմն. մատ., գրուած 1666 թ. էջ ժգ:

c Էջմ. Ձ-իր № 1665 հիմն. մատ., գրուած 1691 թ. էջ ժդ:

d Էջմ. Ձ-իր № 1669 հիմն. մատ., գրուած 1680 թ. էջ ժդ:

e Էջմ. Ձ-իր № 1686 հիմն. մատ., գրուած 1675 թ. էջ ժդ:

f Էջմ. Ձ-իր № 616 հիմն. մատ., գրուած ? թ. էջ ժե:

Լ Լայպցիգի Բաղ. Մատենադար. Ձ-իր, գրուած 1696 թ. էջ ժե:

Տ Տպագրի խմբին պատկանող Ձ-ներ, որ են

n Էջմ. Ձ-իր № 611 հիմն. մատ., գրուած 1672 թ. էջ ժե:

o Էջմ. Ձ-իր № 1664 հիմն. մատ., գրուած 1699 թ. էջ ժգ:

p Էջմ. Ձ-իր № 1666 հիմն. մատ., գրուած 1690 թ. էջ ժգ:

q Էջմ. Ձ-իր № 1667 հիմն. մատ., գրուած 1641 թ. էջ ժգ:

r Էջմ. Ձ-իր № 1662 հիմն. մատ., գրուած ? թ. էջ ժէ:

s Էջմ. Ձ-իր № 615 հիմն. մատ., գրուած ? թ. էջ ժէ:

Խ Խառնուրդ խմբին պատկանող Ձ-ներ, որ են

g Էջմ. Ձ-իր № 1663 հիմն. մատ., գրուած 1639 թ. էջ ժէ:

h Էջմ. Ձ-իր № 248 հիմն. մատ., գրուած 1663 թ. էջ ժթ:

i Էջմ. Ձ-իր № 1668 հիմն. մատ., գրուած 1668 թ. ? էջ ժթ:

k Էջմ. Ձ-իր № 1035 հիմն. մատ., գրուած ԺԷ դարում. էջ ժթ:

l Էջմ. Ձ-իր № 249 հիմն. մատ., մայր Խառն խմբին պատկանող բոլոր Ձ-ների. էջ ժթ:

la Մի հին մասը, համապատասխան Ա խմբին. գրուած ԺԳ—ԺԴ դարում. էջ ժթ:

lա Մի նորոգուած մասը, համապատասխան Տ խմբին, 1567 թուից. էջ ժթ:

m Էջմ. Ձ-իր № 1661 հիմն. մատ., գրուած 1676—8 թ. էջ իա:

y Ձեռագիր Կ. Եզեանցի, գրուած 1668 թ. էջ իգ:

Հ Աղթամարի Ձ-իր, գրուած ? թ. էջ իգ:

z Ձ-իր Ճեմարանի արեւելեան լեզուաց ի Պետերբուրգ. գրուած 1668 թ. էջ իգ:

Բացի այս տառանիշներից եւ Ա. գրքի անունների համառօտագրութիւններից՝ գործ են ածուած. **Եւս**(եբիոս Կեսարացու) **Ժամ**(անակագրութիւն), **Սոկրատ** (եկեղեցական պատմութիւն), **Փաւստ**(ոս Բիւզանդ). **Կոր**(իւն). **Ղ.**(ազար) **Փարպ**(եցի). **Արիստ**(ակէս) **Լաստ**(իվերտցի). **Բառգ.**(իրք) **Հայկ**(ազեան լեզուի). **Նոր**(այր) **Բիւզ**(անդացի), Հայկական Բառաքննութիւն եւ Քննասէր Ա. եւ Բ. պրակ. **Арм**(янскіе) **Арш**(акиды) Գր. Խալաթեանցի, մասն Բ. եւյն.

Միւս համառօտագրութիւնների մասին տե՛ս յառաջաբան, էջ խե:

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՅԵՐԻՍ ՀԱՏՈՒԱԾՍ

ԱՍԱՑԵԱԼ

## *ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ*

**Ի ԽՆԴՐՈՅ ՍԱՀԱԿԱՅ ԲԱԳՐԱՏՈՒՆՒՈՅ**

---

## *ՑԱՆԿՔ ԱՌԱՋԻՆ ԳՐՈՑ*

*Ա. Պատասխանի թղթոյն Սահակայ, և խոստումն կատարել զհայցուածս նորա։*

*Բ. Թէ ընդէր, վասն զի Քաղդէացւոց և Ասորեստանեայց մատենից ցանկագոյն են մեր իրք, ի յունականէն կամեցաք մեք ցուցանել։*

*Գ. Յաղագս անիմաստասէր բարուց առաջնոցն մերոց թագաւորաց և իշխանաց։*

*Դ. Յաղագս զի ոչ սակս Ադամայ և այլոց նահապետացն միաբանեցան այլքն ի պատմագրաց։*

1 c հարց, փխ. հայոց
2 o երիս / bcef հատուածս
4 bcdeo մովսէսի / bc խորենացոյ
5 c սահակա / bceo բագրատունոյ
1-5 Տեօ չիք. (o ցանկից յետոյ երեսի սակին ունի նոյնը) / Վx փխ. այս վերնագրի ունին սորրոյ հօրն մերոյ [x չիք սրբոյ հօրն մերոյ] մովսէսի խորենացւոյ պատմութիւն հայոցս։
6 aopqrstw Առաջին գրքի ցանկ չունին / a ներք բաղած է / p ցանկի համար բաղած երեսում ունի միայն. մովսէսի "խորենացոյ յաղագս մերոյս յիշկզրանն յայսմ բանիցս ի ահակայ բակրատունոյ խնդ" լ
6 Կ'Կ³Վ ցանկեր չունին բաղդասած:
6 bef ցանկ / y ցանգ
6 bcdef չիք գրոց
6 h ցանկք առաջին դպրութեան պատմութեան հայոց ի մովսիսէ խորենացւոյ
6 bcdefo առաջին գլխի վերնագրից առաջ ունին սկիզբն ճառից
7 Տե [բացի o-ից] առաջին գլխի վերնագրի փոխանակ ունին. «յաղագս մերոյս [gk մերոյ] յիշկզրանն յայսմ բանիցս սահակայ բագրատունւոյ խնդալ [Հh խնդրեալ, m խնդալ, շինած k խնդրեալ]
7 o խոկումն, փխ. խոստումն
9 Տե ի [o չիք ի] քաղդէացւոց [l քաղթէացւոց]
bg ի քաղդէացոց / c ի քաղդէացոյն
9 Տե յասորեստանեաց [g յասորեստանեայց, Հo ասորեստանեայց]
10 Հbdefl յանկագոյն / cy յանգագոյն / o յանկագոյնք / Թերեւս յաւագոյն ի քաղդէացւոց և յասորեստանեայց մատենից յանկագոյն։ Ու. Մ.
10 bef չիք են
10 o և ի յունականէն կամեցեալ
10 Հbcdefo չիք մեք
11 cf չիք յաղագս
11 bde առաջնոց / o առաջին
11 bdeo թագաւորացն [o թագաւորաց] մերոց / cf թագաւորացն մերոց առաջնոց
11 f չիք և
13 bcdefo միաբանեն
14 Տacf այլք [o այլքն]
14 cf պատմագրացն

*ասելով զնա, այլ թագաւոր, սոյնպէս անուն խժական նմա և աննշանակ կոչելով, և ամս տալով երեսուն և վեց հազար. իսկ Թուով նահապետացն և ջրհեղեղին յիշատակաւ՝ զոյգ և հաւասար Մովսիսի,—նոյնպէս և յետ ջրհեղեղին երիս կարգելով արս անուամբք յառաջ քան զաշտարակաշինութիւնն, զկնի նաւարկութեանն Քսիսութրեայ ի Հայս՝ ճշմարտեն. իսկ անուանցն փոփոխմամբ և բազմօք այլովք ստեն։*

*Բայց ես այժմ ուրախացայց, հաւ. տանելով առաջիկայիցս իմոց բանից ի սիբիլեայն իմմէ և քան զշատս արդարախօսօղէ, ի Բերոսեանն Սիբիլլայ։ «Յառաջ քան զբուրգն, ասէ, և զբազմաբարբառն լինել ձայնի ազգի մարդկան, և զկնի նաւարկութեանն Քսիսութրեայ ի Հայս՝ Զրուանն և Տիտանն և Յապետոսթէ լինէին իշխանք երկրի»։ Որ ինձ թուին Սեմ, Քամ և Յաբեթ։*

*«Եւ ի բաժանել սոցա, ասէ, զամենայն տիեզերս ընդ իւրեանց իշխանութեամբ՝ հարստացեալ տիրէ ի վերայ երկոցունցն ես Զրուանն»։ Զոր ասա ուրեմն Զրադաշտ մոգ, արքայ Բակտրիացւոց, որ է Մեդաց, սկիզբն և հայր աստուածոցն ասաց լինել. և բազում այլ ինչ զնմանէ առասպելեաց, զոր անտեղի է մեզ այժմ երկրորդել։*

1 abcef նոյնպէս և, փխ. սոյնպէս
1 ab ախժական / c ախարժական / pqrs խժկան
1 h աննշանակն / Հ աննշանական / o կոչելով նմա և աննշանական
2 SԹ տալով նմա
2 a յլզ., c լզ., de յլզ., փխ. երեսուն և վեց / bf յլզու, փխ. երեսուն և վեց հազար
2 Կ² թուոց
2 SԹ նահապետաց [h նահապետացն, Կ¹ նախապետաց]
3 g չիք և (ջրհեղեղին)
3 SԹվ² և ի ջրհեղեղին [gno և ջրհեղեղին] / d ջրհեղեղէն
3 Հg չիք յիշատակաւ—յետ ջրհեղեղին (տ. 4)
3 abchoqrs մովսէսի
3 p նոյն, փխ. նոյնպէս
4 k երից, p երեց, փխ. երիս
4 hpqrs զարս
4 ab զ յաշտարակաշինութիւնն / fg զաշտարակաշինութիւն
5 fg նաւարկութեան
5 c քսիսութրա / f քսիսութրայ
5 h ճշմարտութե՛ն
6 i անուանց / p բազումք
6 e ասեն, փխ. ստեն
7 a չիք ես
7 Կ¹ հաւանելով, o հաւաքելով, pqrs հաւ. առելով, փխ. հաւ. տանելով
7 a առաջիկա / p առաջիկայիցն
8 SԹԿ²cd ի սիբիլեայն [Հ ի սիբիլեայն] / hprs չիք ի (սիբիլեայն)
8 Կ²d քանզի, Կ¹ քան, փխ. քան
8 a զշարս, փխ. զշատս
8 acf արդարախօսօղէն / SԹ յարդարախօսօղէ [oy արդարախօսօղէ)
8 Ա բիւռոսեան / SԹ բիւռոսեանն [l բեւռոսեանն, tv բերիոսեանն], Ուղղում եմ՝ բերոսեանն։ Հմմտ. Եւս. Ժամ. եր. 18 ծն. եւ ծան. 7։
9 Կ²acf սիբիլլա / bd սիբիլլայ / c սիբիլլեա / SԹ սիբիլլեայ / tvx սիբիլլեայ
9 acd զբուրգնն / opqrs զբուրգն
9 Ա զաշտարակաշինութիւնն [f զաշտարակաշինութիւն], փխ. ասէ
9 Ա զբազմաբարբառ
9 ԱSԹ լինելոյ. Ուղղում եմ՝ լինել
10 fg նաւարկութեան / f քսիսութրայ
11 g տիտանն
11 bdef յապետոսթէ / c յապետոսթե / rs յապետոսթէ և լինէին
11 b յերկրի / t որք
12 Ա թուի / cf չիք և
13 hpqrs ի բաժանելն / bh նոցա
14 tv հպարտացեալ, փխ. հարստացեալ
14 Ա երկուցն եղբարց [c եղբարցն] զրուանն
15 t չիք ուրեմն / b զրադաշ
15 a բակտրիացւոց / Հg բակտրացւոց Հմմտ. Եւս. Ժամ. Բ, եր. 34
15 Աx մակաց, փխ. մեդաց
16 abcfgn աստուածոց / Հtv աստուծոց(ն)
16 tv լինիլ (միշտ)
16 p բազումք
17 k երկրորդ, փխ. երկրորդել

«Արդ՝ ի բռնանալն, ասէ, Զրուանայ՝ ընդդիմացան նմա Տիտանն և Յապետոսթէ, ի մարտ պատերազմի ընդ նմա գրգռելով, վասն զի թագաւորեցուցանել զորդիս իւր ի վերայ ամենեցուն խորհէր։ Եւ յայսպիսում խռան յափշտակեաց, ասէ, Տիտանն զմասն ինչ ի ժառանգութենէ սահմանացն Զրուանայ։ Ասա ի մէջ անցեալ քոյր նոցա Աստղիկ՝ համոզեալ դադարեցուցանէ զազմուկն. և յանձն առնուն թագաւորել Զրուանայ. բայց դաշինս ուխտից և երդմանց ի միջի հաստատեն, սպանանել զամենայն արու՝ որ ծնանիցի Զրուանայ. զի մի ազգաւ ի վերայ նոցա թագաւորեսցէ։ Ուստի և արս հզօրս ի Տիտանացն ի վերայ ծննդոց կանանց նորա կարգէին։ Եւ սպանեալ զերկուս ոմանս վասն երդմանն և ուխտին հաստատուն կալոյ՝ խորհի այնուհետև քոյր նոցա Աստղիկ հանդերձ կանամբք Զրուանայ, հաւանեցուցանել զոմանս ի Տիտանացն՝ ապրեցուցանել զայլ մանկունս, և յարեմուտս կոյս յուղարկել ի լեառն, որ անուանեալ կարդային Դիւցընկէց, իսկ այժմ կոչի Ոլիմպոս»։

Արդ՝ զայսոսիկ այլ ոք թէպէտ առասպելս, թէպէտ ճշմարտութիւն հաշուեալ համարեսցի՝ բայց որպէս ես հաւանեալ եմ, բազում ինչ ճշմարիտ է։ Քանզի և որ Կիպրացւոց Կոստանդեայ եպիսկոպոս Եպիփանոս ի Հերձուածոցն Յանդիմանութեան, յորժամ ճշմարիտ և արդարադատ

1 bcdef ի բռնանալ
1 a զզրուանայ
1 B տիտանն բէլ
2 a յապետոսթէ / c յապետեսթէ
2 գ չիք ընդ
3 p խորհել
4 p յայսպիսուն / tv այսպիսում
4 a խռան բախտն / bef բախտն, փխ. խռան
4 ty տիտան ասէ / a չիք տիտանն
4 Sա ի ժառանգութեան [gh ի ժառանգութենէ]
5 glt սահմանաց
5 twy աստի ի
5 chlnopqrst քոյրն
5 p չիք նոցա
6 Ա դադարեցուցանել
6 de թագաւորեցուցանել
7 d չիք բայց դաշինս—ծնանիցի զըրուանայ (s. Տ)
7 o դաշ ինչ, pqrs դաշինչ, փխ. դաշինս
7 abcef երդմանց և ուխտից հաստատեն
8 k սպանանելն / n սպանել
8 c չիք զամենայն
8 e ծնանի / p ծնանիցեն
8 f ի զրուանայ
9 Ա մեր, փխ. նոցա
9 g ի տիտանեացն
10 bcdef չիք ծննդոց
10 r կանաց
10 bcef նոցա, փխ. նորա
10 Ա կարգեցին
10 hg ի սպանանել / k սպանանել
11 Sա երդման ուխտին / bc երդման
11 abcdeg քոյր / միւսն. քոյրն
12 b հաւանեցուցանէ
13 hg ի տիտանեացն
13 Ա զայլսն
13 bf մանկունսն / p մանուկս
13 k յուղարկել / io ուղարկել
14 Sաd ի լեառն
14 cef կարդացին։ Թերևս ուղղելի կարդայրն, կամ զոր... կարդային
14 e դիւցընկեց
15 b ոլոմպիոս / c ողիմպոս / Sաadef ոլիմպոս [hopqrs ոլիպոս]
16 f այլ ոք եթէ թէպէտ
16 Sա զայսոսիկ թէպէտ առասպելս [g զառասպելս] ոք, թէպէտ ճշմարտութիւն [gr ճ"շթե"] հաշուել համարեսցի, բայց ես [opqrs չիք ես] որպէս հաւանեալ
18 iq չիք և
18 c կիւպրացոց / Sա ի կիպրացւոց [pq չիք ի]
18 c կոստանդնայ
18 a եպիսկոպոսի / f եպիփանէս
19 d ի հերձուածողացն
19 ek յանդիմանութիւն

զԱստուած ձեռնարկէ ցուցանել, և վասն ջնջելոյ որդւոցն Իսրայէլի զհօթն ազգսն ասէ այսպէս, եթէ արդարադատապէս Աստուած զազգսն զայնոսիկ ջնջեաց յերեսաց որդւոցն Իսրայէլի. զի ի բաժնին որդւոցն Սեմայ հասանել էր երկիր կալուածոցս այսոցիկ, և բռնութեամբ Քամայ ի վերայ եկեալ յափշտակեաց զերկիրն։ Իսկ Աստուծոյ իրաւունս պահեալ զերդման ուխտին՝ վրէժ հատուցանէ ազգին Քամայ, ի բաց դարձուցանելով զժառանգութիւնն՝ որդւոցն Սեմայ։ Այլ զՏիտանն և զԹափաղիման յիշէն աստուածային Գիրք։

Բայց պարտ է մեզ զոմանց անգիր հին զրոյցս, որ պատմեալ եղեն վաղ ուրեմն ի մէջ իմաստնոցն Յունաց, (և հասին մինչև ի մեզ այս զրոյցք ի Գորգի և ի Բանան անուն կոչեցելոց, եւ երրորդ ոմն Դաւիթ), թէպէտ և յոյժ սակաւուք՝ երկրորդել։ Յորոց մի ոմն ի Նոցանէ, վարժեալ փիլիսոփայութեամբ, ասէր այսպէս, թէ «Ո՛վ ծերք, յորժամ էի ի մէջ Յունաց զիմաստութիւն վարժելով՝ դէպ եղև ի միում աւուր, զի վասն աշխարհագրութեանց և բաժանմանց ազգաց ի մէջ արանց իմաստնոց և հմտագունից բան ճառիւր. ոմանք այլազգաբար և ոմանք այլաբանաբար զրոյցս մատենից տային. իսկ որ կատարելագոյնն էր ի նոսա, Ոլիմպիոդորոս անուն, այսպէս ասաց. «Պատմեցից ձեզ, ասէ, և զրոյցս անգիրս յաւանդութենէ ի մեզ հասեալ, զորս և բազումք ի գեղջկաց զրուցեն մինչև ցայժմ։ Մատեան լեալ զՔսիսութրեայ և զորդ-

1 f ձեռնարձակէ
2 r չիք զհօթն ազգսն—իսրայէլի (s. 3)
2 a այսպէս ասէ թէ
2 ԱՀվ՝qs արդարապէս
2 p եթէ ազգսն արդարադատապէս աստուած զայսոսիկ / g զայսոսիկ
3 Տպabdef ի բաժնի [p բաժանել]
3 cp որդոց
4 Ա չիք էր
4 ԱՀ կալուածոյս / Կ* կալուածոյ
4 Տպ չիք և / Տպ բամ
5 Տպ չիք զերկիրն
6 opqrs ուխտ
7 ԱՀg զժառանգութիւն
7 Տպ չիք որդւոցն
8 gknoqrs զԹափաղիմն / p զ յափաղիման / Վm զԹափաղիմս
9 abc պարտէ
9 Ա մեզ զանգիր հինս [Կ* հին] զոմանս
10 befg իմաստնոց
10 r հասին ի մէջ մինչև ի մեզ
11 f զրոյցքս
11 abdef բան, p բանն, փխ. բանան / c բանուան, փխ. բանան անուն
11 Ա կոչեցելոյ
11 Հglo եւ և / p յերրորդ
12 k դաւիթի / Հgk որոց
13 p վարժել
13 c այսպէս ասէր
13 o ովք / c որպէս, փխ. ով
14 f էի եւ / c չիք էի
14 Հhpqrs չիք ի (մէջ)
14 Տպ աւուրց [p յաւուրց]
15 cf չիք զի
15 o բաժանման / pqrs ի բաժանմանց
16 alde ճառիւր և / c ճառէր և / f ճառել և
16 ck չիք և ոմանք այլաբանաբար
17 Ա զրոյց / ghl զզրոյցս
17 n մատենիցն / o մատենիցս
17 d չիք որ
18 Ա ի Նոցանէ էր
18 abd ող՛ոմպիադորոս / cf ող՛ոմպիոդորոս / e ոլոմպիադորոս / g ողոմպիադոս / l ողոմպիոսիորոս / Հ ոլոմպիադոս / միւսն. ոլիմպիոդորոս: Ուղղ. ոլիմպիոդորոս: Տե՛ս եր. 22, 8. 3
18 bcd ոմն անուն
18 Ա ասաց այսպէս
19 Տպ չիք և (զրոյցս)
19 Ա զրոյցս ոմանս
19 b առ ի մեզ / Վm զոր
20 Ա բազումք ոմանք
20 Ա գեղջակաց / knopqrsy գեղկաց [n ուրիշ ձեռով շինած՝ գեղջկաց]
20 p զրուցեն մեզ
20 h քսիսութրեայ
20 n զորդւոցն

ւոց նորա, որ այժմ ոչ ուրեք երեւի, յորում, ասեն, կարգ լեալ բանից այսպիսի։ Յետ նուաճելոյն Քսիսութրեայ ի Հայս և դիմելոյ ցամաքի, գնայ, ասէ, մի յորդւոց նորա կոչեցեալն Սեմ ընդ արեւմուտս հիւսիսոյ դիտել զերկիրն, և դիպեալ դաշտի միում՝ փոքու առ երկայնանստի միով լերամբ, գետոյ ընդ մէջ նորա անցանելով, ի կողմանս Ասորեստանի, դադարէ առ գետովն երկլուսնեայ աւուրս, և անուանէ յանուն իւր զլեառնն Սիմ, և դառնայ անդրէն յարեւելս հարաւոյ, ուստի ելն։ Իսկ ի կրտսերագունից որդւոցն նորա Տարբան անուն, երեսուն ուստերօք և հնգետասան դստերօք և նոցին արամբք մեկնեալ ի հօրէն՝ բնակէ անդէն ի նոյն գետեզր, յորոյ անուն և զգաւառն անուանէ Տարաւն, և զանուն տեղւոյն ուր բնակեցաւն՝ կոչէ Ցրօնս. զի անդ զառաջինն սկիզբն եղև բաժանելոյ որդւոց նորա ի նմանէ։—Նորին դարձեալ և առ եզերբ սահմանացն Բակտրիացւոց ասէին բնակել սակաւ աւուրս, մնացեալ և մի ոմն յորդւոց նորա անդ։ Քանզի կողմանք արեւելից Զրուան զՍեմ կոչեն, և Զարուանդ զգաւառն անուանեալ ասեն մինչև ցայժմ։

1 p նորայ
1 hopqrstwy յորժամ, փխ. յորում
1 Հg չիք կարգ լեալ
1 abcf բանից լեալ / de չիք բանից
2 Վm նուաճելոյ
2 f քսիսութրայ
2 ad դիպեալ / bc դիպել / c դիպե՛ց / f դիպեաց
3 Ա գնաց / h որդւոցն
3 o սէմ / rs սեմ / միւսն. սիմ
3 bp ընդ յարեւմուտս
4 i դիտեալ
4 g դիպել
4 p առ ներկայնանստի
5 i միովք
5 gi լերամբք
5 b կեցոյց / միւսն. գետոյ։ Ուղղում ենք գետոյ
5 pqrs անցուցանելով
5 c չիք ի (կողմանս)
6 g չիք դադարէ
6 jp անուն
7 Տաbd զլեառն
7 p իմ, փխ. սիմ
7 k յարեւ, փխ. յարեւելս
8 abef ի կրսերագունից / c ի կրսերագունաց / o ի կրտսերագունիցն
8 hio որդւոց
8 Հgi տանբան, փխ. տարբան / prc տարբանաւուն, փխ. տարբան անուն
8 a նորա ոմն որդւոյն ոմն տարբանիտ անուն / b նորա յուՄն յորդւոյն տարբան անուն / cf նորա ոմն յորդւոցն ոմիտար անուն / de նորա յորդւոցն ոմն տարբանամիտար անուն
9 g չիք և (հնգետասան)
10 d անդ / Տա անդրէն [o անդէն]
10 g գետեզերբք / hlopqrs գետեզերբ / Վmntwx գետեզերբն / Կ ի նոյն եզերբ գետոյն
10 hrs անունն
10 Ա զգաւառն այժմ ասեն անուանեալ
10 g տարաւն / Կ² տարօն / միւսն. տարօն
11 hopqrs որ բնակեցաւ
11 f ցրւանս / l ցրաւնս
11 hpqrs զառաջինն
12 d եղև և
12 ab բաժանմամբ / cef բաժանման / d բաժան / hopqrs բաժանել
12 dhnpr որդւոյն
12 h չիք ի (նմանէ)
13 e եզերբք / tw եզերբ
13 p չիք սահմանացն
13 Աhlnopq բակտրացւոց [c բակտրացոց] / Հg բակտրացւոցն / rs բակրտացւոց / tw բակտրիացւոցն
13 b բնակեալ / tw բնակիլ
13 Ա աւուրս սակաւ
13 c միացեալս
14 f չիք և / c չիք և մի ոմն
14 b որդւոց
14 Տա ոմն անդ յորդւոյն [p որդւոյն, g որդւոց] նորա. քանզի
14 Ա և քանզի
14 f կողմունք / g ամանք, փխ. կողմանք
14 bf յարեւելից
15 tw զսիմ
15 Ա կոչեցին, զրուանդ
15 Հ զարուան, փխ. զարուանդ
15 Ա ցայսօր ժամանակի, փխ. ցայժմ

*Բայց առաւել յաճախագոյն հինքն Արամազդեայց ի նուագս փանդռան և յերգս ցցոց և պարուց զայսոսիկ առեն յիշատակս։ Եւ այսոքիկ զրոյցք սուտ և կամ թէ արդարև լեալ՝ մեզ չէ ինչ փոյթ։ Այլ վասն գիտելոյ քեզ զամենայն, որ ինչ ի լրոյ և որ ինչ ի գրոց՝ անցանեմ ընդ բնաւն ի գիրս յայսոսիկ, զի իմասցիս զառ քեզ պարզմտութիւն իմոյ խորհրդոցս։*

## Է

**Յայտարարութիւն սակաւուց, թէ ըստ արտաքնոցն ասացեալ Բէլ՝ ըստ աստուածային բանից ճշմարտութեամբ է Նեբրովթ։**

*ԶԲելայ, առ որով նախնին մեր Հայկ՝ բազումք բազում ինչ այլ ընդ այլոյ պատմեն. բայց ես ասեմ զԿռոնոսդ անուն և զԲէլ՝ Նեբրովթ լեալ. որպէս Եգիպտացիք թուեն հաւասար Մովսիսի՝ Հեփեստոս, Արեգակն, Կռոնոս, որ է Քամ, Քուշ, Նեբրովթ, թողեալ զՄեստրայիմ։ Զի առաջին առեն խրբեանց մարդ լեալ զՀեփեստոս և գտակ հրոյ։ (Եւ ընդէ՞ր սա գտակ հրոյ, և կամ Պրոմեթէոս գողացեալ առ ի յաստուածոցն զհուր և շնորհեալ մարդկան,—որ է այլաբանութիւն,—ոչ բերէ ասել*

1 ԱՎmnx արամազդեաց / ktv արամազդեայցն / hlopqrs արամազդեայց
1 Ա փանդռան / ՏԹ բամբռան [^ փամբռան]
2 Ա ցուոց / ՏԹ ցցոց [gir ցոյց, c ցցոյց]
2 opqrs զայսոսիկ
2 p չիք առեն—այսոսիկ
2 ՏԹ յիշատակօք
2 tv այսոցիկ զրոյցք սուտք
3 Ա սուտք [abcd սուտ] կամ արդարև [abcd արդարք] լեալ / h արդարք
3 ՏԹ լեալք [i լեալ]
3 a մեզ ինչ ոչ [bcdef ոչինչ] է փոյթ
5 a ընաւն / f ի գիրս
5 ՏԹ ի գիրս յայս [h այս]
5 a գիտասցես, փխ. իմասցիս
5 c զի մի իմասցիս զառ քեզ պատերազմութիւն իմոյ
5 de պարզմտութիւն / g պարզմտութեանց / միւսն. պարզամտութիւն
6 tvy իմոցս / k չիք իմոյ
6 a խորհրդոց / r խորհրդոյս
8 rs յաղագս յայտարարութիւն
8 կ՛ արտաքնոցդ
8 Տ ասացեալ է
8 al բէլթ / g բէլ / g թէ ըստ
9 c բան / a ճշ՛տութեամբ
9 ac Նեբրովթ / cf է Նեբրութ / ՏԹ Նաբրութ [l Նեբրութ, opqrs Նաբրութ, tv Նեբրովթ] է
10 abhw զբելայ / r աբելայ / qs բելայ (սկզբից sառի sեղ բաղած) / միւսն. զբէլայ
10 Թnopqrs չիք առ
10 p այլ ընդ այլ
11 g զկռաւնոսդ / Հltv զկռոնոսդ
11 cf Նեբրութ / g Նաբրովթ
12 Ա որպէս և
12 a Եգւպտացիք / hpqrs Եգիպտացիքն
12 abcdehiopqrs մովսէսի
12 ԱՏԹ Եփեստոս: Ուղղում ենք՝ Հեփեստոս. տե՛ս եր. 28, ն. 2:
13 gitw կռոնոս
13 h զմեստրիմ
13 Ա զմեստրայիմ կռոնոս, որ քամ, քուշ [c քաւշ] Նեբրովթ [cf Նեբրութ]
13 Ա չիք զի
14 a առաջինան / c լեալ և
14 ԱՏԹ զեփեստոս [a զփեստոս, d չիք զեփեստոս]: Ուղղում ենք զՀեփեստոս
14 opqrs չիք և ընդէ՞ր սա գտակ հրոյ
15 abde պրոմիթոս, cf պրոմեթոս / ՏԹ պրոմիթէոս [tv պրոմիթէոս]: Ուղղում ենք Պրոմեթէոս
15 Ա զողանալ
15 ՏԹ զառ [o առ] ի յաստուածոցն հուր
16 ԱՀhknp չնորհել
16 ՏԹabde և ոչ
16 g առէ / Հ սա, փխ. առել

կարգ բանիս)։ Որում և հարստութեանցն Եգիպտացւոց կարգ, և ամացն ժողովումն ի Հովուացն հարստութենէ մինչև ցՀեփեստոս՝ վկայէ հաւասար Եբրայեցւոցն լեալ, որ է ի Յովսեփայ ժամանակացն մինչև ցՍեմ, Քամ և ցՅաբեթ։

Եւ այսոքիկ բաւական լիցին առել այսչափ։ Զի եթէ զամենայն եղեալսն յաշտարակագործութենէն մինչև առ մեզ ի հասողութիւն քեզ ի մերումս ածել ջանասցուք պատմութեան, երբ ապա յըղձալին քո հասանիցեմք զրուցաց պատմութիւնն. մանաւանդ զի և առաջիկայս մեր երկար է գործ, և ժամանակ մահկանացուաց սուղ և անյայտ։ Այլ սկսեալ ցուցից քեզ զմերն, թէ ուստի և որպէս։

## Ը

### Թէ ո՛վ կամ ուստի՛ զայսպիսի եգիտ զրուցարանութիւնս։

ԶԱրշակ մեծ, արքայ Պարսից և Պարթևաց, որ և ազգաւ իսկ Պարթև, ապստամբեալ ասեն ի Մակեդոնացւոց և թագաւորեալ ի վերայ ամենայն արևելից և Ասորեստանեայց, և սպանեալ զԱնտիոքոս թագաւոր ի Նինուէ՝ հնազանդեցուցեալ զամենայն տիեզերս ընդ իւրով ձեռամբ։ Սա թագաւորեցուցանէ զեղբայր իւր զՎաղարշակ ի վերայ աշխարհիս Հայոց, պատեհ համարեալ այսպէս իմն անշարժ իւրոյ թագաւորութեանն մնալ։ Եւ քաղաք թագաւորութեան տայ նմա զՄծբին, և

1 Ա բանից / g բանի
1 Հմմտ. Եւս. Ժամ. 97։
1 Հg հարստութեանց
1 ՏԹ ամենայն, փխ. ամացն
2 p հովուաց հաստատութենէ
2 t հարստութեան
2 i հեփեստոս / tv ցեփեստոս
3 ՏԹc չիք ի (յովսեփայ)
3 dgk ժամանակաց
4 Աo յաբեթ / g զաբեթ / Հ ցյաբէթ / Հմմտ. Եւս. Եր. 97. 103։
5 g լիցի / Ա չիք առել
6 ՏԹ եղեալս [g եղեալսն]
6 k յէշտակագործութենէ
6 ՏԹ քեզ ի մէջ [opqrs ի մէնջ] ածել [g ածեալ] ջանայցեմք պատմութիւն
7 b ապա
7 abf ըղձալին
7 c քեզ, փխ. քո
8 Ա զրուցապատմութիւնս
8 Հgp պատմութիւն
8 ՏԹ չիք և
9 Կ°de չիք է
9 p չիք և (ժամանակ)
12 ԹՀtv որով, փխ. ով
12 ՏԹeftv զայսպիսի
12 tv զրուցարանութիւնն
12 a զասարկ սեղում նոյն ձեռով. «Մասացող սորին յամթցի մնաս վ՟րպ՟ն յշ՟ց»։
13 ՏԹ արշակ [Խօշ զարշակ, զ արշակ, բայց սկզբում Զ գլխատառի համար տեղ թողած] / r աարշակ / s յարշակ
13 k արքայն
14 ԹՀվ°nqrs ապստամբել
14 ՏԹ ի մակեդոնացւոցն / Հ ի մակեդովնացւոց
14 վ°bghkpqrs թագաւորել
15 ՏԹef ասորեստանեաց [gpqrs ասորեստանեայց]
15 Հghr սպանանել / k սպանել / s սպ՟ննել
15 Ա թագաւորէ / k թագաւորն
16 Հabefgk հնազանդեցուցանել
16 c իւր
17 Հgil ձեռամբ [i ձեռամբն] իւրով
17 hpqrs զվաղարշակ զեղբայր իւր
18 Ա երկրին, փխ աշխարհիս
18 c պատեհ է
18 ՏԹ պատեհ իմն համարեալ այսպէս անշարժ
18 fg թագաւորութեան (մնալ)
19 ՏԹ լինել, փխ. մնալ
19 b թագաւորութեանն (տայ)

*սահմանս հատանէ նմա զմասն ինչ յարեւմտեայ Ասորւոց և զՊաղեստին և զԱսիա և զամենայն Միջերկրեայս և զԹետալիա, ի ծովէն Պոնտոսի մինչև ի տեղին՝ ուր Կաւկաս յարեւմտեանն յանգի ի ծով, և զԱտրպատական. «և այլ որչափ միտք քո և քաջութիւն հասանիցեն. զի սահմանք քաջաց, ասէ, զէնն իւրեանց, որքան հատանէ՝ այնքան ունի»։*

*Սորա կարգեալ զիշխանութիւն իւր մեծապէս, և հաստատեալ զթագաւորութիւն իւր՝ կամ եղև գիտել սորա, թէ ոյք արդեօք և որպիսի արք տիրեալ իցեն ի վերայ աշխարհիս Հայոց մինչև ցնա. զքաջա՞ց արդեօք եթէ զվատաց անցեալ ունիցի զտեղի։ Եւ գտեալ զոմն ասորի Մար Աբաս Կատինայ, այր ուշիմ և վարժ քաղդէացի և յոյն դպրով, զոր յղէ առ եղբայրն իւր Արշակ Մեծ արժանի ընծայիւք, բանալ նմա զդիւանն արքունի։ Եւ գրէ առ նա ձև բանից օրինակ զայս.—*

## Թ

### Թուղթ Վաղարշակայ արքայի Հայոց առ Մեծն Արշակ արքայ Պարսից։

*«Արշակ թագաւոր երկրի և ծովու, որոյ անձն և պատկեր—որպէս և է իսկ—մեր աստուածոց, իսկ բախտ և պատահումն ի վեր քան զամենայն թագաւորաց, և մտաց լայնութիւն՝ որչափ երկնի ի վերայ երկրի. Վաղարշակ կրտսեր եղբայր քո և նիզակակից, որ ի քէն կարգեալ արքայ Հայոց. Ողջ լեր ամենայն յաղթութեամբ։*

1 abcef յարեւմտեայց / h յարեւմտեան / o արեւմտեան
2 adef զասիա / Հ ասիա / միւսն. ասիայ
2 abde միջերկրեայսն / Հl միջերկրայս / c միջագետայսն / f միջագետեայսն
2 Հ զթիտալիայ / adefg զթետալիա, / c զթետաղիայ / o զիտալիա / միւսն. զթիտալիայ։ Եւս. Ժամ. 5, 45, 160, 161 Թետաղացիք
3 cd ցտեղին / c որ, փխ. ուր
3 Հabdeg Կովկաս
3 Հabdef յարեւմտեան / Տթc յարեւմտեանն [g յարեւմտեան]։ Այսինքն Կասպից ծովը, որ խոսողի եղած տեղից դեպի արևմուտք էր ընկնում։
3 b անգի / Տթ չիք ի (ծով)
4 Տթ հատանեն [Կ'k tx հասանեն], փխ. հասանիցեն
4 abc սահման / d սահմանք
5 Ա չիք ասէ
5 Ա իւրեանց է / c ունին
6 abc զիշխանութիւնն
6 h մեր, փխ. իւր
7 abdet զթագաւորութիւնն
7 hopqrs չիք իւր
7 Ա կամ եղև նմա գիտել թէ [c կամք եղև նմա գիտել սորա թէ] / x նմա, փխ. սորա
7 Տթ չիք արդեօք / Ա որպիսիք
8 Ա ի վերայ տիրեալ իցեն յաշխարհիս [ef աշխարհիս] / Տթ տիրեալ են
8 Ա ցնորա թագաւորութիւնն, փխ. ցնա
8 a և զքաջաց
9 Ա թէ / a զվատ
9 bcdef անցեալն / hopqrs չիք անցեալ
9 Ա ունիցին / klt ունի
10 Աptw մարիբաս / pqrs կատինեայ
11 Տթ առ մեծ եղբայրն իւր [h մեր, փխ. իւր] արշակ արժանի / cdef եղբայր
11 b իւք և
12 ab դիւանն / p ձև բանից առ նա
14 r վաղարշակ / tw արքային
14 p առ մեծ արքայն արշակ թագաւոր
14 b թագաւոր, փխ. արքայ
15 Ա արշակ արքայ թագաւոր
15 a որ / w որոց / h յանձն
16 Ա չիք իսկ
16 Հ աստուծոյ / tw աստուծոց
16 y ի վերայ քան
17 Ա երկլին / h երկնի և
18 Ա կրսեր
19 Ա լինել, վ' եր, փխ. լեր
19 b յամենայն / Տթ չիք ամենայն

«Քանզի պատուէր ընկալայ ի քէն՝ քաջութեան և ամենայն իմաստութեան հոգ տանել՝ ոչ երբէք անփոյթ արարեալ զքոյոյդ անցի զխրատու, այլ խնամ տարեալ հոգացայ ամենայնի, որչափ միտք և հասողութիւն բաւեցին։ Եւ այժմ ի քումմէ խնամակալութենէ զետեղեալ զթագաւորութիւնս՝ խորհուրդ ի մտի եդի գիտել, թէ ոյք ոմանք յառաջ քան զիս իցեն տիրեալ աշխարհիս Հայոց, և ուստի նախարարութիւնքս որ աստ կան։ Զի ոչ կարգք ինչ աստ լեալ յայտնի, և ոչ մեհենից պաշտամունք. և ոչ գլխաւորաց աշխարհիս առաջինն յայտնի է, և ոչ վերջինն, և ոչ այլ ինչ օրինաւոր, այլ խառն ի խուռն ամենայն և վայրենի։

«Վասն որոյ աղաչեմ զքո տէրութիւնդ, հրամայել բանալ զդիւանդ արքունի ընդդէմ առնդ եկելոյ առաջի քոյոյ հզօր տէրութեանդ. զի գտեալ զըղձալին եղբօր քո և որդւոյ՝ բերցէ փութապէս. և զմեր հեշտութիւն, որ ի կամակատարութենէ լեալ՝ քաջ գիտեմ խնդութիւն քեզ լեալ։ Ողջ լեր երևելիդ ընտրութեամբ ի մէջ դիցն»։

Եւ ընկալեալ Արշակայ Մեծի զգիրն ի ձեռաց Մար Աբայն Կատինայ՝ մեծաւ լրջմտութեամբ հրամայէ առաջի առնել նմա զդիւանն արքունի որ ի Նինուէ, միանգամայն և ուրախացեալ ընդ այսպիսի միտս ունել եղբօր իւրոյ, որում զկէս թագաւորութեան իւրոյ հաւատացեալ էր։ Եւ խուզեալ նորա զամենայն մատեանս՝ գտանէ մատեան մի հելլենացի գրով, յորոյ վերայ էր, ասէ, վերնագիր այսպիսի.

2 tw երբեք / o քոյով
2 ՏՄ չիք անցի
3 ՏՄ խրատու
4 ՏՄ բաւեցին
4 c զետեղ
5 hpqrs զթագաւորութիւնս / միւսն. թագաւորութիւնս
5 c չիք թէ
6 Ա տիրեալ իցեն յառաջ քան զիս / k տիրել
7 Ա կան աստ / c կարգ
7 ՏՄ լեալ աստ
8 p չիք աշխարհիս
8 Ա յայտնի առաջին, և ոչ
8 k չիք յայտնի է և ոչ վերջինն
9 cdef վերջին / a չիք և ոչ վերջինն
9 a յօրինաւոր
9 k խուռն ի խառն
9 o չիք ամենայն
9 p և ամենայն վայրենի
11 c տէրութիւնքդ
11 ՏՄ հրամայեա / g հրամեա այեալ / k հրամեա / Կ² չիք հրամայել
12 Ա հզօր քոյոյ / lg քոյ
13 p գիտեալ
13 tw քոյ / միւսն. քո
13 ahpqrs ըղձալին
13 a բերցեն / rs բերիցէ
13 ՏՄ բերցէ զատոյգն փութապէս
13 cg հաշտութիւն / t հաշտութիւնն
14 Կ²d ի կամակորութենէ
14 k չիք քաջ գիտեմ—լեալ (տ. 15)
15 c ընտութեամբ
16 k ընկեալ
16 Ա չիք մեծի
16 pqrs ի ձեռն
16 ՏՄ մար աբայ [klnoqrs մարիբայ, p մարիբասա, tw մարիբաս]
17 c առաջի նորա առնել զդիւանն
18 Ա ի Նինուէի [Կ² ի Նինուէ]
18 c միայն ունի ընդ / միւսն. չիք ընդ
19 Ա ունելոյ եղբօրն
19 վ²gkloqrsy որով / n որով, չինած որում / վ²ptw որոյ
19 cdef թագաւորութեանն
19 c չիք իւրոյ
19 հաստատեալ, փխ. հաւատացեալ
20 f չիք էր
20 ՏՄ նորա
20 Աhopqrs զմատեանսն
20 Ա չիք մի
21 ՏՄ հելլէն [tw հելլեն]
21 tw որոյ
21 c ասէր / k այս, փխ. ասէ
21 ՏՄ վերնագիրն
21 kltw այսպէս / de չիք այսպիսի

## ՍԿԻԶԲՆ ՄԱՏԵՆԻՆ

*«Այս մատեան հրամանաւ Աղեքսանդրի ի Քաղդէացւոց բարբառոյ փոխեալ ի յոյն, որ ունի զբուն հնոցն և զնախնեացն բանս»։*

*Որոյ սկիզբն լինել ասէ զԶրուանն և զՏիտանն և զՅապետոսթէ, յորում և զիւրաքանչիւր ոք ի ծննդոց երից նախարարականացս այսոցիկ արանց, զարս անուանիս, կարգաւ շարադասեալ յիւրաքանչիւր տեղիս մինչև ցբազում ամս։*

*Յայսմ մատենէ Մար Աբաս Կատինայ զմերոյ ազգիս միայն հանեալ զպատմութիւն հաւաստի՝ բերէ առ Վաղարշակ արքայ ի Մծբին յոյն և ասորի գրով։ Զոր առեալ անձնադիրն և քաջագեղանն արին Վաղարշակայ, կորովաբանոյն և հանճարեղի, առաջին իւրոյ գանձուն համարելով՝ դնէ յարքունիսն ի պահեստի մեծաւ զգուշութեամբ, և զմասն ինչ յարձանի հրամայէ դրոշմել։ Յորմէ մեր հաւաստի ի վերայ հասեալ կարգի գրուցացս՝ երկրորդեմք այժմ քում հարցասիրութեանդ, ձգելով զմեր բնիկ նախարարութիւնս մինչև ցՔաղդէացւոց Սարդանապաղոս, և ևս մօտագոյն։ Յորում է սկիզբն բանիցն այսպիսի.*

*«Ահեղք և երևելիք առաջինքն ի դից, և աշխարհի մեծամեծ բարեաց պատճառք, որ սկիզբն աշխարհի և բազմամարդութեան։ Եւ ի սոցանէ հատեալ զաւան ազգ սկայիցն, անհեղեդք, յաղթանդամք մարմնով և վիթխարիք. որք յղացեալ ամբարտաւանութեամբ՝ ծնան զամբարիշտ*

1 Այս վերնագիրը չունին kx / cf մատենից
2 բոլորը բացի x-ից աղեքսանդրի
2 b մատեանն
2 a չիք ի (քաղդէացւոց)
3 i փոխել / Տպ ի յոյնն
3 o զրան, փխ. զրուն / Տպ հնոց
3 g զնախնեաց / o հնոց և նորոց նախնեաց / Ա չիք և զնախնեացն
3 o չիք բանս
4 hopqrs որ
4 gh զրուանն / p տիտանն
4 c յապետոսթէ / ghlnopqrstu զապետոսթէ
5 abcef նախարարականացն
6 Տպ արանցս
6 Հgh շարադասեալ / r շարադասիլ / միւսն. շարադասել
6 p յիւրաքանչիւր իւր
8 Աhklnopqrstu մարիբաս
9 a արշակ, փխ. վաղարշակ
9 Տպ արքայ վաղարշակ
9 o չիք ի մծբին
10 b անձնդեղոյն
10 Տպ քաջագեղան / a չիք արին
11 Տպ վաղարշակ
11 ab կորովաբանւոյն
11 b առաջի
12 Տպ դնէր
12 Ա յարքունիսն մեծաւ պահպանութեամբ ի պահեստի զգուշութեամբ /
12 k պահեստ / p մեծ
13 Տպ ի յարձանի
14 Հghprs գրուցացն
14 Տպ քոյ
15 Ա նախարարութիւն
15 ab սարդանապաղոս / cdej սարդանապալոս / hopqrs սարդանապալլոյ / Վlmn սարդանապաղոյ / k սանդրապաղոյ / tu սարդանապալոյ
16 Ա չիք և
16 ky յորմէ, փխ. յորում է
16 abc բանից / Տպf բանիցս
17 a երևելեօք / Կ՝ և զարմանալիք
17 Տպ ի դիցն
17 p չիք և (աշխարհի)
17 Ա մեծամեծաց [c ի մեծամեծաց] աշխարհի բարեաց
19 b հատեալ զաւան ազգք
19 gkl սկայից / tu հսկայից(ն)
19 Հg անհեթեթք / p անհեղեղեակ / rs անհեղեղակ
20 Կ²abc վիթխարիթք
20 p զամբարիշտս

*խորհուրդ աշտարակաշինութեանն, և ի նոյն լինէին ի գործ անկեալք. յոր հողմ ահագին իմն և աստուածային շնչեցեալ ի գիցն ցասմանէ՝ ցրէ զամբարտակն, և մարդկանն անլուր բարբառս իւրաքանչիւր ումեք բաշխեալ, աղմուկ շփոթի ի մէջ արկանէին։ Յորոց մի էր և Յաբեթոսթեանն Հայկ, անուանի և քաջ նախարար, կորովաձիգ և հաստաղեղն»։*

*Եւ այս կարգ զրուցաբանութեան զադարումն առցէ. զի հանդէս է մեր՝ ոչ զպատմութեանն ողջաբանութիւն գրել, այլ ջանալ ցուցանել զառաջինսն մեր և զբուն հին նախնիս։ Արդ ի նոյն մատենէ սկսեալ ասացից. Յաբեթոսթէ, Մերոդ, Սիրաթ, Թակլադ. որ է Յաբեթ, Գոմեր, Թիրաս, Թորգոմ։ Յետ որոյ նոյն ժամանակագիր յառաջ մատուցեալ ասէ. Հայկ, Արամանեակ, և զայլսն ի կարգի, զորոց յառաջագոյն ասացաք։*

## Ժ

### Ցաղագս ապստամբութեանն Հայկայ։

*Այս, ասէ, Հայկ գեղապատշաճ և անձնեայ, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ։ Սա ի մէջ սկայիցն քաջ և երևելի լեալ, և ընդդիմակաց ամենեցուն, որք ամբառնային զձեռն՝ միապետել ի վերայ ամենայն սկայիցն և դիւցազանց։ Սա խրոխտացեալ ամբարձ զձեռն ընդդէմ բռնաւորութեանն Բելայ, ի տարածանել ազգի մարդկան ընդ լայնութիւն ամենայն երկրի, ի մէջ բազմակոյտ սկայիցն, անհուն*

1 Հgpqrsw խորհուրդս
1 Հ/g աշտարակաշինութեան / k աշտարակաշինութիւն
1 p չիք ի (նոյն)
1 hopqrs չիք ի (գործ) / p անկեալ
2 o որ / [illegible]tw կոզմն
3 Հg ցրուէ / t ցրվէ / k ցրտէ / l ցրտէ
3 rs զամբարտական / q զամբարշտական
3 b մարդկան
3 Ա անլուրս բարբառս շնորհեալ իւրաքանչիւր ումեք. աղմուկ
4 de անկանէին / Հմմտ. Եւս. Եր. 18 Եթ.
4 Վ յապետոսթեանն
5 Sթ նախարարն / glt հաստաղեղնն
6 h զրուցաբանութիւնս
7 Հbdfg զպատմութեան / k պատմութիւն
7 Հghpqrs ողջաբանութիւնս
8 c զառաջինս
8 Ա զբունսն / p բուն
8 a հինսն / bcdef հինս
8 Հo նախնիսն
9 c յապետեսթորէ
9 Ուղղելի k մերոդ
9 Հabdef սիրադ
9 Աg թադդաթ [/ թադդադ] / Հl թակդաթ / t թակլաթ
9 Կ²abdef գամիր
11 Sթ արմենակ [lot արամենակ]
11 cpqrs զոր / Վklmnotwx զորոյ
11 c յառագոյն
14 bf ապստամբութեան
14 c յաղագս պատմութեան և ապստ...
15 p զայս
15 Հ չիք գեղապա(տշաճ)
16 c հաստբազուկ
16 tw միջս Սըսկայ(իցն)
16 bcdef չիք և (երևելի)
16 Sթ չիք և (ընդդիմակաց)
17 q ընդդիմաց / r ոյք
17 y ի միապետել
17 h չիք ի վերայ
18 Հg չիք ամենայն / de դիւցազանցն
18 Ա հպարտացեալ, փխ. խրոխտացեալ
18 Կ² զձեռն իւր
19 c բռնութեանն / g բռնաւորութեան / Հ բռնութիւն
19 l բեղ՚այ / gh բելայ / միւսն. բէլայ
19 tw ի տարածանելն
20 Ա անհունց

խոլաց և ուժաւորաց։ Քանզի անդ մոլեգնեալ այր իւրաքանչիւր, սուր ի կող ընկերի իւրոյ ձգելով՝ ջանային տիրել ի վերայ միմեանց. ուր պատահմունք ի դէպ եղանէին Բելայ՝ բռնանալ ունել զամենայն երկիր։ Որում ոչ կամեցեալ հնազանդ լինել Հայկայ, յետ ծնանելոյ զորդի իւր զԱրամանեակ ի Բաբելոնի՝ չու արարեալ գնայ յերկիրն Արարադայ, որ է ի կողմանս հիւսիսոյ, հանդերձ որդւովք իւրովք և դստերօք և որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք, թուով իբրև երեքհարիւր, և այլովք ընդոծնօք և եկօք յարեցելովք ի նա և բոլոր աղխիւ։ Երթեալ բնակէ ի լեռնոտին միում ի դաշտավայրի, յորում սակաւք ի մարդկանէ յառաջագոյն ցրուելոցն դադարեալ բնակէին. զորս հնազանդ իւր արարեալ Հայկ՝ շինէ անդ տուն բնակութեան կալուածոց և տայ ի ժառանգութիւն Կադմեայ որդւոյ Արամանեկայ»։ Այս արդարացուցանէ զանգիր հին ասացեալ զրոյցս։

«Եւ ինքն խաղայ, ասէ, այլով աղխիւն ընդ արեւմուտս հիւսիսոյ. գայ բնակէ ի բարձրաւանդակ դաշտի միում, և անուանէ զանուն լեռնադաշտին Հարք, այս ինքն թէ հարք են աստէն բնակեալք՝ ազգի տանն Թորգոմայ։ Շինէ և գիւղ մի, և անուանէ յիւր անուն Հայկաշէն»։ Յիշի և աստանօր ի պատմութեանս՝ ի հարաւոյ կողմանէ դաշտիս այսորիկ, առ երկայնանիստիւ միով լերամբ, բնակեալ յառաջագոյն արք սակաւք, ինքնակամ հնազանդեալ դիւցազինն։ Արդարացուցանէ և այս զասացեալ զրոյցս անգիրս։

1 p խոլաց ազեղնաւորաց և / w խոլացն
1 acf ուժաւորաց / Կ²bd ուժաւորաց
1 c մոլեգեալ / a այլ. փխ. այր
2 p առ ի կող / Ա ի կողս
2 Հ չիք իւրոյ
4 a կամեցեալ հայկայ հնազանդ լինել հայկայ / bcdef կամեցեալ հնազանդ լինել հայկայ / Տհ կամեցեալ հայկայ [Հ չիք հայկայ] հնազանդ լինել [gtw լինիլ] բելայ [ghx բելայ]
5 f զարմանեակ / Տհ զարմենակ [lno զարամենակ, t զարամենեակ]
5 bcf ի բաբելոնն / ade ի բաբելոնին
5 Հg արարատայ / l արարա / r արա բաբելոնի (վրան ջնջման նշանով) բագայ
6 c հիւսւսոյ
6 b չիք և դստերօք և որդւոց որդւովք / opqrs չիք իւրովք և դստերօք և որդւոց որդւովք / Հghi որդեօք
7 p չիք զօրաւորօք / a թուովք
7 p չիք թուով իբրև երեք հարիւր, և այլովք / r չիք իբրև
8 b ընդօծնօք / cdi ընդոծնովք
8 abcde եկովք / c յարեցելով
9 Հdg ի լեռնոտի
9 Ա չիք ի (դաշտավայրի)
10 a ցրելոյ / bdef ցրուելոյ / c ցրուելոց
11 p հայկայ / Կ²def կալուածոյ
11 p տանի, փխ. տայ
12 fhrsw¹ արմանեկայ / lnot արամեն-ակայ / Վopq արմենակայ
12 l արդացուցանէ
12 Ա հնացեալ, փխ. հին ասացեալ
13 p զրոյց
14 Աtw աղխիւ
15 Տհ լեռնադաշտակին
16 c եթէ
16 Տհ չիք թէ հարք են
16 Կ²abdef աստ / Հl աստեն / c չիք աստէն
16 c բնակեալ / Տհ բնակեալքս
16 altw ազգ ի տանն
17 aiqrs գեւղ / bch գեաղ / p գդեաղ
17 d չիք մի / a իւր
17 bf անունն / c չիք յիւր անունն
17 cef յիշէ
18 Տհ աստանօր պատմութիւնս. հարաւոյ / c հարաւոյ (չիք ի)
19 d սակաւուք
20 Տհ հնազանդել [o հնազանդեալ, tw հնազանդիլ]. tw ի ձեռագրի անորոշ դերբայը սովորաբար իլ ձեւով ունին:
20 q չիք ինքնակամ—արդար(ացուցանէ)
20 bhp զայս / l արդացուցանէ
20 Ա զանգիրն [a անգիրն] ասացեալ զրոյցս / hprs ասացեալ

# ԺԱ

## Յաղագս պատերազմին եւ մահուանն Բելայ:

*Եւ յառաջ մատուցեալ զբանս իւր ասէ, թէ ի հաստատել Տիտանեանն Բելայ զթագաւորութիւն իւր առ ամենեսեան՝ առաքէ ի կողմն հիւսիսոյ զմի ոմն յորդւոց իւրոց առ Հայկ արամբք հաւատարմօք, գալ նմա ի հնազանդութիւն և կեալ խաղաղութեամբ։ «Բնակեցեր, ասէ, ի մէջ ցրտութեան սառնամանեաց. այլ ջեռուցեալ մեղկեա զցրտութիւն սառուցեալ քո հպարտացեալ բարուցդ, և հնազանդեալ ինձ՝ կեաց ի հանդարտութեան, ուր հաճոյ է քեզ յերկրիս իմում բնակութեան»։ Եւ ի բաց դարձուցեալ Հայկայ զպատգամաւորսն Բելայ՝ խստութեամբ պատասխանեաց։ Դառնայ առաքեալն անդրէն ի Բաբելոն։*

*Ապա զօրաժողով լինի ի վերայ նորա Տիտանեանն Բէլ ամբոխիւ հետևակ զօրաց. գայ հասանէ ի հիւսիսի, յերկիրն Արարադայ, մերձ ի տունն Կադմեայ։ Փախստական լինի Կադմոս առ Հայկ, քաջընթացիկս առաջի իւր առաքէ. «Գիտեա, ասէ, ով մեծդ դիւցազանց, զի դիմեալ գայ ի վերայ քո Բէլ յաւերժիւք քաջօք և երկնադիզօք հասակօք սկայիւք մրցողօք։ Եւ իմացեալ իմ զմերձ լինելն նորա ի տունն իմ՝ փախեայ, և գամ աւասիկ տագնապաւ։ Արդ՝ աճապարեա խորհել զոր ինչ գործելոց ես»։*

*Իսկ Բէլն, յանդուգն և անճոռնի զօրութեամբ ամբոխին, որպէս յորձան ինչ սաստիկ ընդ զառ ի վայր հեղեղեալ՝ փութայր հասանել ի սահմանս բնակութեանն Հայկայ, ի սիրտ և ի մարմին վստահացեալ*

1 Այս գլխից սկսած է բաղդատուած k w-ի հետ, եւ առանձնայատուկ ընթերցուածները միայն վերցրած:
2 Ա պատերազմին հայկայ
2 gx բելայ. միւսն. բէլայ
2 c մահ / Հfhlnoqrs մահուն / g մահուան / p զմահուն
3 g և ասէ / i և թէ
3 cd տիտանեան / hp տիտանն
4 gx բելայ, l բելեայ. միւսն. բէլայ
4 a զթագաւորութիւնն
5 c հիւսիսւոյ / i որ, փխ. ոմն
5 k որդոց / o որդւոյ
6 af եկեալ, փխ. կեալ
7 Կ¹Կ²d սառամանեաց
7 p չիք այլ / l մեղկեայ ցրտութիւն
8 Հ սառնացեալ / p չիք ինձ
9 k ի հանդարտութիւն / qk յերկիրս
9 h մերում, փխ. իմում
9 Ա բնակութեանս
10 Ա հայկայ՝ խստութեամբ պատասխանեաց զպատգամաւորսն որդւոյն բէլայ / x բելայ. միւսն. բէլայ
11 de անդրէն առաքեալն
11 w ի բաբելօն / f ի բաբիլոն
12 bcef տիտանեան
13 Ա հետեւակօք զօրուցն / i հետեւակազօրաց / հետեւակաց զօրաց
13 Ա ի հիւսիս [c ի հիւսիսւոյ]
13 a երկիրն
13 Կ²g արարատայ / k արարատեա / l արարադեայ
13 t չիք մերձ—կադմեայ (ս. 14)
14 k ի տուն / Ա հայկն
14 klwy քաջընթաց իսկ, փխ. քաջընթացիկս
15 Կ¹abcd մեծդ և դիւցազանց
16 Տա յաւէրժիւք [gh յաւերժիւք]
16 ԱՏա երկայնադիզօք [c երկայնադիզակօք, opqrs երկնադիզօք]
16 opqrs չիք հասակօք
17 k չիք զմերձ լինելն նորա ի տուն իմ
18 p չիք և
18 Ա փախեայ և աւասիկ գամ
18 k անդ, փխ. արդ / Ա ի խորհել
18 Տաcdef որ [g զոր]
20 g բէլ / b անճոռի
20 d բազմութեան, փխ. զօրութեամբ
20 a ամբոխն
21 k յորձայն / Տա հեղեալ
22 Տաf բնակութեան
22 Տա հայկին [Կ¹gk հայկայ]

արանց զօրաւորաց։ Աստ ուշիմ և խոհեմ սկայն, քաջագանգուրն և խայտակնն, աճապարեալ հաւաքէ զորդիս իւր և զթոռունս, արս քաջս և աղեղնաւորս, թուով յոյժ նուազունս, և զայլսն ևս որ ընդ իւրով ձեռամբ. հասանէ յեզր ծովակի միոյ, որոյ աղի են ջուրքն, մանունս ունելով յինքեան ձկունս։ Եւ կոչեցեալ զզօրս իւր՝ ասէ ցնոսա. «Յելանելն մեր հանդէպ ամբոխին Բելայ՝ դիպել ջանասցուք տեղւոյն, ուր անցեալ կայցէ ի մէջ խուռն քաջացն Բէլ։ Զի կամ մեռցուք, և աղխ մեր ի ծառայութիւն Բելայ կացցէ, կամ զաջողութիւն մատանց մերոց ի նա ցուցեալ՝ ցրուեսցի ամբոխն, և մեք եղիցուք յաղթութեան ստացեալք»։

Եւ յառաջ կոյս անցեալ բովանդակ ասպարէզս՝ հասանեն ի միջոց ինչ դաշտաձև՝ լերանց բարձրագունից։ Եւ յաջմէ ջուրց հոսանաց ի բարձրաւանդակում կուռ կալով ի տեղւոջ, ի վեր զերեսս ամբարձեալ՝ երևեցաւ նոցա բազմութիւն անկարգ հրոսակի ամբոխյն Բելայ, ցան և ցիր յանդուգն յարձակմամբ ընդ երեսս երկրին սուրալով. իսկ Բէլ հեզ և հանդարտ ամբոխիւ մեծաւ ի ձախմէ ջուրցն ի վերայ ոստոյ միոյ, իբրև ի դիտանոցի։ Ծանեաւ Հայկ զխումբ վառելոյ ջոկատին, յորում Բէլ առաջի ամբոխին եկեալ հասեալ ընտրիւք և վառելովք ոմամբք. և երկար միջոց ճանապարհի ընդ նա և ընդ ամբոխն։ Եւ ինքն զլխանոց ագուցեալ երկաթի, նշանաւորօք վերջիւք, և տախտակս պղնձիս թիկանց

1 *p* արանց և
1 *b* յուշիմ | *w* հսկայն
2 Տխ*def* խայտակն
2 *c* աճապարեալ փախչի, հաւաքէ
2 *f* չիք հաւաքէ
2 *f* զորդիս և զթոռունս իւր
3 Տխ զայլ [*gx* զայլս, *k* այլ]
3 *hpqrs* իւր
3 *f* ձեռամբ իւրով
4 *h* եզր
5 Տխ ունելով ձկունս յինքեան [*pqrs* յինքեանս]
5 *c* զօրս
6 *c* ի յելանելն | *c* ամբոխի
6 *gx* բելայ. միւսն. բէլայ
6 Տխ դիպեալ [*h* ա-ն ջնջած]
7 Ա որ [*c* ուր], փխ. ուր
7 Տխ կայ | Ա խռանն
7 *f* բէլայ, փխ. բէլ
8 *bdef* աղխք
8 Ա ի ծառայութեան կայցեն բէլայ. և [*c* չիք և]
8 *ghx* բելայ. միւսն. բէլայ
8 *f* զյաջողութիւն
9 *de* չիք մերոց | *p* ցուցցուք
10 *h* ստացեալ
11 Հ*abg* ասպարէզս
11 Ա հասանէին ի մէջ ինչ դաշտաձև լերանցն | *w* ի միջոյ
11 *ghopqrs* հասանեն, փխ. հասանեն
12 Կ՝ դաշտաց և լերանց | Տխ ջուրցն
13 Տխ ի բարձրաւանդակութն
13 *p* կռան, *rs* կռո, փխ. կուռ
14 *cf* հրոյ սաստիկ, Տխ հոսակի [*g* հրոսակի], փխ. հրոսակի
14 *gx* բելայ. միւսն. բէլայ
14 *opqrs* բէլայ ցիր և յանդուգն
15 *h* և յանդուգն
15 *opqrs* արձակմամբ
15 *d* դաշտին, փխ. երկրին
15 Կ²*abcef* զբէլ
16 Տխ հեց [Հ*gin* հէց, *k* հէնց, *ow* հեզ, *p* հեցծ]
16 Ա խմբաւ, փխ. ամբոխիւ
16 *f* չիք մեծաւ
17 Ա չիք ի (դիտանոցի)
17 Ա հայկն
17 Ա ճակատին, փխ. ջոկատին
18 *h* չիք և (վառելովք)
18 *rs* չիք և (երկար)
19 *p* յերկար
19 Տխ ճանապարհին
19 *p* և ընդ նմա ընդ ամբոխն
19 Հ*ghopqrs* զլխանոցս | *a* չիք զլխանոց
20 Տխ*a* վերջօք [*o* վերջնօք]
20 *a* պղնձի
20 Ա թիկանց և միջոց [*c* միջացն. *f* միջայ] և լանջաց

և լանջաց, և պահպանակս բարձից և բազկաց. գօտեօրեալ զմէջսն, և յահեկէ զսուրն երկսայրի. և նիզակ անարի ի ձեռին իւրում աջոյ, և յահեկումն վահան, և ընտիրք յաջմէ և ի ձախմէ։ Եւ տեսեալ Հայկին զՏիտանեանն կուռ վառեալ, և զարս ընտիրս ընդ նմա աջինս և ահեկինս՝ կարգէ զԱրամանեակն երկու եղբարբք ընդ աջմէ, և զԿադմոս և զայլս երկուս յորդւոց իւրոց ի ձախմէ, զի արք կորովիք էին յաղեղն և ի սուսեր. և ինքն առաջի, և զայլս հրոսակին զկնի իւր կարգեաց. երեքանկիւնի իմն կարգեաց ձևով, հանդարտ յառաջ մատուցեալ։

Եւ հասեալ երկոցունց կողմանց սկայիցն ի միմեանս՝ ահագին դղրդմունս ի վերայ երկրի առնէին շահատակելով, և ահս պակուցանողս տարազուք յարձակմանցն սկայազունքն զմիմեամբք արկանէին։ Անդ ոչ սակաւք յերկոցունց կողմանց արք յաղթանդամք բերանոյ սրոյ դիպեալք՝ տապալ յերկիր կործանէին, և մարտն յերկոցունց կողմանց մնայր անպարտելի։ Զայսպիսի անակնունելի դիպուած տարակուսանաց տեսեալ արքայն Տիտանեան զարհուրեցաւ, և ի նոյն բլուր ուստի էջն՝ վերջոտնեալ ելանէր. քանզի խորհէր ի միջոցի ամրոխին ամրանալ, մինչև հասցէ բովանդակ զօրն, զի միւսանգամ ճակատ յօրինեսցէ։ Զայս իմացեալ աղեղնաւորին Հայկայ՝ յառաջ վարէ զինքն, մօտ հասանէ յարքայն, լի քարշէ զլայնալիճն, դիպեցուցանէ զերկրթևեանն կրծից տախտակին, և շեշտ ընդ մէջ թիկանցն թափանցիկ լեալ՝ յերկիր հարստի սլաքն. և այսպէս ճոխացեալն Տիտանեան կործանի յերկիր զարկուցեալ, և փչէ

1 dhopqrsw պահանակս
1 Ա զմէջն / l ահեկէ
2 ՀԿ$^{2}$adegi զսուինն / bcf զսուսին / p զսուսինան / Վhklmnoqrs զսուսինն․ Ուղղում եմ՝ զսուրն
2 p յերկսայրի
2 Տփ նիզակն արի
2 p ի ձեռն / f յաջոյ
3 d յահեկում
3 c յահեկէ, փխ. ի ձախմէ
3 w հայկն
4 Ա վառեալ, և զօրս [a զօրս, c զաւրս] ընդ նմա վառեալ աջինս և / wy արս
4 hoq յաջինս / hoqprs յահեկինս
5 f զարմանեակն / Տփ զարմենակ [o զարամենակ, rs զարմանեակ]
5 d զարամանեակն իւր երկու
5 f եղբարբք / pqrs եղբայրք
5 s յաջմէ
6 e երկուց / g երկուսս
6 fhp որդւոց
7 Ա զայլսն
8 hpqrs զանկիւն / k զանգիւնի (= գ. անկիւն) / Վ երեքանգիւնի
8 o ձևով կարգեաց
8 Տփ մատուցանելով
9 b կողմանցն / w հսկայիցն
10 Տփ դղրդիւն
10 Տփ շահատակելովն
11 cf տարազունք / h արձակմանցն
11 Տփ չիք սկայազունքն
11 t հարկանէին
12 a երկոցունց
12 Տփ կողմանց սկայիցն [w հսկայիցն]
13 o տապեալ / p տապեալք
13 pqrs կողմանցն
14 k չիք զայսպիսի անակնունելի
14 abdef դիպուածս
15 b և զարհուրեցաւ, և
15 bhy վերջոտեալ / w վերջատեալ
16 Տփ ելանէ
16 b ի միջոց / o ի միջոցն
16 Տփ ամրանալ ամրոխէն
17 i օրինեսցէ
18 a հայկա
19 Տփ լի քարշէ ալինդ զլայնալիճն, դիպուցանէ [ghnow դիպեցուցանէ, pq դիպեցանէ]
19 b զերկթևեանն
20 rs չիք մէջ
20 a հաւատի, c հաստի, Տփ անկանի, փխ. հարստի
21 cf ճոխացեալ / rs տիտանայնն
21 Աty կործանեալ / Կ՝ անկեալ կործանի
21 c զարկուցէ / Ա չիք և

*զոգին։ Իսկ ամբոխն տեսեալ զայսպիսի անհագին գործ քաջութեան՝ փախեան իւրաքանչիւր դէպ երեսաց իւրեանց։ Եւ վասն այսորիկ այսչափ բաւական լիցի ասել։*

*Բայց զտեղի ճակատուն շինէ դաստակերտ, և անուն կոչէ Հայք, վասն յաղթութեան պատերազմին. այսորիկ աղագաւ և գաւառն այժմ անուանի Հայոց ձոր։ Իսկ զբլուրն, ուր քաջամարտիկքն անկա Բէլ՝ անուանեաց Հայկ Գերեզմանս. որ այժմ ասին Գերեզմանք։ Բայց զդիակն Բելայ պաճուճեալ դեղովք, ասէ, հրամայէ Հայկ տանել ի Հարք, և թաղել ի բարձրաւանդակ տեղւոջ, ի տեսիլ կանանց և որդւոց իւրոց։ Իսկ աշխարհս մեր կոչի յանուն նախնւոյն մերոյ Հայկայ՝ Հայք։*

## ԺԲ

**Յաղագս որ ի Հայկայ ազգք եւ ծնունդք, եւ թէ զի՛նչ իւրաքանչիւր ոք ի ծնողաց գործեաց։**

*Բազում ինչ զկնի այսորիկ պատմի ի մատենին. այլ մեք՝ որ ինչ պիտոյն մերոյ հաւաքմանս է, շարեսցուք։*

*Զկնի այսորիկ դառնալ ասէ Հայկին ի նոյն տեղի բնակութեան, և կազմեալ թոռին իւրում բազում ինչս յանկածէ պատերազմին պարգևէ, և յիւրոց ընդոծնացն արս անուանիս։ Հրամայէ զնոյն տեղի բնակութեան ունել նմա զառաջնոյ իւրոյ տանն, և ինքն երթեալ դադարէ յանուանեալ դաշտին Հարք։ Սա կեցեալ ամս՝ ծնանի զԱրամանեակ*

1 *h* ամրոխին
1 **Տպ** քաջութեանն [*ghopre* քաջութեան]
2 *hopqrs* յիւրաքանչիւր
2 *kp* իւրոց
3 **Տպ** բովանդակ [*go* բաւական]
3 **Ա** ասացեալդ
4 *p* հայկ, փխ. հայք
5 *abcdef* անուանեալ է
6 **Տպ***c* բլուրն
6 *pq* որ, փխ. ուր
6 **Ա** անկանի
7 *c* հայկն / *o* այժմ եւ
7 *cf* ասեն, Կ*de* ասի, *hpqrs* կոչին, փխ. ասին
7 **Տպ** գերեզմանք
8 *x* բելայ. միւսն. բէլայ
8 **Տպ** պաճուճեալ իմն դեղովք, ասէ [*ghlopqrz* ասէ դեղովք / **Հ** *fi* դեղօք / **Ա** չիք ասէ
8 *h* չիք ի (հարք)
9 *k* չիք ի տեսիլ—որդւոց
9 *hrs* իւրեանց
9 *wy* իսկ անուն աշխարհիս մերոյ կոչի յանուն
10 *gk* աշխարհիս / *hk* անուն
10 **Ա** յանուն [*a* անուն] նախնոյն [*a* նախնւոյն] մերոյ հայկայ [*a* չիք հայկայ] կոչի
10 *c* հայկք, փխ. հայք
12 *cf* ի հայկայ է ազգք
12 *ipqrs* ազգ
12 *c* չիք և (թէ)
12 *abef* եթէ / *rs* չիք ոք
14 **Ա** պատմին
14 *de* չիք ի (մատենին)
15 *de* մերոց
15 *r* հաւաքման
15 *wy* շարագրեսցուք
16 *f* հայկն ի նոյն տեղին
17 **Ա** թոռինն
17 *cy* իւրոյ / *f* իւր
17 **Տպ** ինչ [*o* չիք ինչս]
17 **Հ** յանգածէ
17 **Տպ** պարգևեաց
18 *abef* ընդոծնեաց / *cd* ընդոծնաց
18 *p* տեղին
20 *a* անուանեալ
20 **Տպ***b* տեղին [*p* տեղի], փխ. դաշտին
20 **Տպ** ծնաւ
20 *f* զարմանեակ / **Տպ** զարմենեակ [*glnot* զարամենակ, *w* զարմենակ]

ի Բաբելոնի, որպէս վերագոյն ասացաք։ Յետ որոյ կեցեալ և այլ ևս ամս ոչ սակաւս՝ մեռանի, յանձն առնելով զբովանդակ ազգն Արամանեկայ որդւոյ իւրում։

Իսկ նորա թողեալ զերկուս յեղբարց իւրոց, զԽոռ և զՄանաւազ, ամենայն աղխիւն իւրեանց ի կոչեցեալն Հարք, և զորդի Մանաւազայ զԲազ. յորոց Մանաւազ ժառանգէ զՀարք, իսկ որդի նորա Բազ՝ յարևմտից հիւսիսոյ զեզր ծովուն աղւոյ, և զգաւառն և զծովն անուանէ իւրով անուամբ։ Եւ ի սոցանէ ասեն լեալ զնահապետութիւնս Մանաւազեան և զԲզնունեաց, և Որդունին անուանեալ, որք աստ ուրեմն յետ սորոյն Տրդատայ բարձեալ ասին ի միմեանց պատերազմաւ։ Իսկ Խոռն ի կողմանս հիւսիսոյ բազմանայ, կարգէ զշէնս իւր. և ի նմանէ ձգեալ ասի մեծ նախարարութիւն ազգին Խորխոռունեաց, արք քաջք և անուանիք, որպէս և որք առ մեօք են այժմ երևելիք։

Իսկ Արամանեկայ առեալ զամենայն բազմութիւնն՝ խաղայ յարևելս հիւսիսոյ, և երթեալ իջանէ ի խորին դաշտավայր մի, ի բարձրագագաթանց պարսպեալ լերանց, գետոյ կարկաջասահի յարևմտից ընդ մէջ անցանելով։ Եւ զդաշտն արևելից գոգցես ինձ իբրև որսայսեալ, ձիգ յարեգակն կոյս զերկայնութիւն պարզեալ. և առ ստորոտովք լերանցն

1 abde ի բաբելօնի
1 Ա որպէս ասացաք [cf ասաց] վերնագոյնն [cf վերագոյնն, d ի վերնագոյնն)
1 Ա չիք և այլ ևս
2 o սակաւ
2 c զբոլոր, փխ. զբովանդակ
2 c արեմանեկայ / fhpqrs արմանեկայ / Վ Խmno արմենակայ
3 ՏԽ իւրոյ [g իւրում, y իւր]
4 hpqrs չիք նորա
4 ԱՏԽ երկուս (bw երկուց, g զերկուս)
4 abc եղբարց
4 qrs զխուռ
5 Ա աղխիւ / p իւրոց
5 Ա իւրեանց ի կոչեցեալն իւրեանց հարք
6 o ժառանգէ մանաւազ
6 p չիք նորա
6 Ա յարեելեւլից [Կ²c յարեելից], փխ. յարևմտից
7 c հիւսիսւոյ / Կ²de յեզր
7 c ծովու
7 Ա զծովակն
8 ՏԽ անուամբն [g անուամբ]
8 Կ²bde մանաւազնեան
9 c զբազնունեաց / o բզնունեաց
9 Կ²abde որդուն ունին / c որդու ունին / Հgilno որ զնուին / k որդունին / hpqrsՎ³ որ զնունի / Կ¹ որ զնունին
9 hnopqrsw անուանել
10 c ասեն
10 Հg խոռ / pqrs խուռն
10 Ա ի կողմանէ
11 c հիւսւսւոյ
11 c ասէ
12 Ա նախարարութիւնս / i նահապետութիւն, փխ. նախարարութիւն
12 p յազգէն / Ա չիք ազգին
12 gi խորխոռունեաց / w խորխորունեաց
12 b քաջ
13 Ա չիք որպէս և—երևելիք
13 h մեօքն
14 f արմանեկայ / ՏԽ արմենակայ [hopqrs արմանեկայ]
14 fgk բազմութիւն
15 Ա չիք և
15 p խորխորին / Ա չիք խորին
15 ՏԽc դաշտավայրի [k պաշտավայրի]
16 c չիք պարսպեալ լերանց
16 ՏԽ գետս կարկաջասահ ի յարևմտից / x գետոց կարկաջասահից յարևմտից
17 Ա անցելոց [c անցելոյ]
17 Ա արևելեայց
17 a գոգոցես իբրև ինձ
17 ՏԽ ինձ գոգցես իբր
17 ՀԿ²deghopqrsw որսայս [w որ այս] եղեալ / l որսայսել ի ձիգ / y որսայսելի ձիգ
18 b արեգակն / d յարեգական
18 b զերկայնարութիւն / f զերկարութիւն
18 ՏԽ չիք առ
18 ԱՀg ստորոտով

բազումք ականակիտ բղխեալ աղբերք, որք ի գետոց եկեալ հաւաքումն հեզաբար։ Առ սահմանօք նոցա, ծնիւք լերամբք և եզերօք դաշտին՝ պատանիք ոմանք իբր առ երիտասարդուհեօք ճեմիցին. այլ հարաւայինն արեգակնաճեմ լեառն, սպիտակափառ ունելով գագաթն, ուղղորդ յերկրէ բուսեալ, երեքօրէիւ, որպէս ասաց ոմն ի մերոցն, քաջագօտեաց առն շրջապատեալ ճանապարհաւ, և առ փոքր փոքր ի շեշտումն անկեալ, ծեր ոմն արդարև լեառն ի մէջ երիտասարդացեալ լերանցն։ Յայսմ խորութեան դաշտի բնակեալ Արամանեկայ՝ շինէ զմասն ինչ ի հիւսիսոյ կողմանէ դաշտին, և զոտն լերինն ի նոյն կողմանէ, և զլեառնն անուանէ յանկագոյն յիւր անուն Արագած, և զկալուածսն՝ ոտն Արագածոյ։

Բայց սքանչելի ինձ ասէ պատմագիրն, թէ ի յոլով տեղիս գտանէին բնակեալք ի մարդկանէ յերկրիս մերում ցան և ցիր սակաւք յառաջ քան զգալուստ բնկին մերոյ նախնւոյն Հայկայ։

Այս Արամանեակ կեցեալ ամս՝ ծնաւ զԱրամայիս. և յետոյ կեցեալ ամս շատ՝ մեռաւ։ Իսկ որդի նորա Արամայիս շինէ իւր տուն բնակութեան ի վերայ ստոյ միոյ առ եզերբ գետոյն, և անուանէ զնա յիւր անուն Արմաւիր. և զանուն գետոյն յանուն թոռին իւրոյ Երաստայ՝ Երասխ։ Եւ զորդի իւր զՇարայ, զյոլովածին և զշատակեր, առաքէ

1 Տ𝔚d բազում
1 pqrsվ[1] բազմականակիտ, փխ. բազում ականակիտ / Կ[2] ակնակիտ
1 Ա չիք բղխեալ / b աղբերք
1 Տ𝔚 որ [x որք ի] գետոց հաւաքումն եղեալ [x եկեալ] հեզաբար առ սահմանօք / Ա սահմանօքն
2 Կամ՝ ի գետոց եկեալ հաւաքումն՝ հեզաբար առ սահմանօք…։ Մs. Մ.
2 Ա ծննդիւք [cf ծննդիւքն], փխ. ծնիւք
3 Ա իբրև / Տ𝔚def չիք առ
3 cf երիտասարդուհօք / Կ[3]gklnuվ[1] երիտասարդուհիւք / Վabdemopqrs երիտասարդուհիք։ Ուղղում ենք՝ երիսարդուհեօք
3 ԱՀpqrs ճեմեցին [Կ[2] ճեմեյին] / h ճեմեցան
3 g հարաւային / Ա հարաւակողմն, c հարաւակողմ, փխ. հարաւայինն
4 a սպիտակափայլ. qrsվ[1] սպիտակ ասի առ, p սպիտակ ատակաս առ, փխ. սպիտակափառ / w սպիտակափառն
4 a ի գագաթն / Հ զգագաթն
4 a ուղորդ / k ողղորդ / Տ𝔚 ի յերկրէ
5 Տ𝔚d առնն
7 ab ի լեառնն / cdef լեառնն
7 Տ𝔚abde լերանց
8 c դաշտին
8 c արամանակայ / fhpqrs արմանեկայ / Հgouw արմենակայ / Վklmn արամենակայ
9 Ա չիք դաշտին—կողմանէ
9 Տ𝔚 զլեառն
10 Ա յանգագոյն [cef յանկագոյն] անուանէ յիւր [b իւր]
10 gk զկալուածս / Տ𝔚 արագածու
11 p թէ յոլով ի տեղիս / h եթէ
11 Կ[2]cdef չիք ի (յոլով)
11 cf գտանին / Տ𝔚 գտան
12 Տ𝔚 բնակեալ [qrs բնակել, w բնակեալք]
12 ck յերկիրս / Ա ցիրք
12 վ[1] սակաւուք / Ա չիք սակաւք
13 fsվ[1] բնակին / kl բնիկ / p բանակին
13 cf նախնւոյ / hpqrs չիք նախնւոյն
14 Տ𝔚 արմենակ / w արամենակ
14 ԱՏ𝔚 զարմայիս [g նախ զարամայիս գրած և ապա ջնջած զարմայիս, k արամայիս, l զարամայիս]
15 b շատ, և մեռաւ
15 ԱՏ𝔚 արմայիս [g նախ արամայիս, ապա ջնջած արմայիս, kl արամայիս]
16 rst չիք զնա / adet իւր
16 p զնա իւր յանուն
17 no անունն / cl չիք անուն (արմաւիր)
17 k անուն, փխ. յանուն
17 Հcgln թոռինն
17 Տ𝔚 արաստայ [o արաստու, w երաստայ]։ Մինչև այստեղ tw-ն S-ի հետ են. այստեղից սկսած մտնում են Ա խմբի մեջ:
18 Տ𝔚 զորդին
18 p չիք իւր / c յոլովածին

ամենայն աղխիւ իւրով ի դաշտ մի մօտաւոր, արգաւանդ և բերրի, յորում գնան ջուրք ոչ սակաւք, ի թիկունս հիւսիսոյ լերինն, որ անուանեցաւ Արագած. յորոյ անուն և զգաւառն ասեն անուանեալ Շիրակ։ Վասն որոյ թուի արդարանալ առասպելին, որ ասի ի մէջ գեղջկաց. «Թէ քո Շարայի որկորն է՝ ասեն, մեր Շիրակայ ամբարքն չեն»։ Այս Արամայիս կեցեալ ամս՝ ծնանի զորդի իւր զԱմասիա. ի վերայ որոյ կեցեալ և այլ ևս ամս՝ մեռանի։

Ամասիա բնակեալ յԱրմաւիր՝ յետ ամաց ծնանի զԳեղամ, և յետ Գեղամայ զՓառոխ արի և զՑոլակ։ Եւ յետ ծնանելոյ զսոսա՝ անցանէ զգետովն մերձ ի լեառնն հարաւոյ, և շինէ անդ առ խորշիւք լեռնոտինն մեծապէս ծախիւք երկուս տունս, զմին յարևելս կոյս, մօտ յակունս աղբերցն, որ առ ստորոտով լերինն ելանեն. իսկ զմիւսն յարևմուտս կոյս նորին տանն, բացագոյն իբր մեծօր հասարակ աւուր միոյ հետևակագնացի առն ճանապարհի։ Եւ ետ զնոսա ի ժառանգութիւն երկուց որդւոց իւրոց, արւոյն Փառոխի և կայտառին Ցոլակայ. յորս բնակեալ՝ յիւրեանց անուն զտեղիսն կոչեցին, ի Փառոխայ՝ Փառախոտ, և ի Ցոլակայ՝ Ցոլակերտ։ Բայց զլեառնն՝ Ամասիա անուանէ իւրով անուամբ Մասիս. և ինքն դարձեալ յԱրմաւիր՝ եկաց ամս սակաւս, և մեռանի։

Իսկ Գեղամ յետ ամաց անցանելոյ ծնաւ զՀարմայ յԱրմաւիր. և

1 ա ամենայնիւ / abdef ամենայնիւ իւրով աղխիւ
1 c չիք իւրով
1 a ի դաշտի / b արգաւան
1 ՏԹ բարրի, փխ. բերրի
2 cf սակաւ / p ի հիւսիսոյ
2 Ա անուանեցաւն
3 Կ²abcefio ասեն և զգաւառն
3 ՏԹcf անուանել [g անուանեալ]
4 deo վասն որոյ առրայ թուի / ab առրա, փխ. որոյ
4 ՏԹ արդարանալ թուի
4 ef ի մէջ գեղջկաց ասի
4 k գեղկաց
5 t արայի, փխ. շարայի
5 Ա ասէ
5 r մ՚բմինք, փխ. ամբարքն
6 ԱՏԹ արմայիս [lopqrs արամայիս]
6 hnopqrs ծնաւ
6 a զամասիա / միւսն. ամասիայ
7 b չիք և / cdefio այլս
7 y այլ ևս այլ / cdef չիք ևս
7 Ա ամաց
8 abd ամասիա / f այս ամասիա / միւսն. ամասիայ
8 y բնակեալ էր
9 f չիք արի
9 de ծնանելոյն
10 opqrs ի լեառն
10 g ի լեռնոտին / k ի լեառն ոտինն / hopqrs ի լեռնոտինն
11 a երկու / deghlnopqr զմինն
11 Ա յարևելից կուսէ մօտ յակունս
11 p յանկինս, փխ. յակունս
12 ab աղբերացն / Հcfghio աղբերացն / de աղբիւրացն
12 Հ զմիւս / p զմինն, փխ. զմիւսն
13 Ա մեծ, փխ. մեծօր
13 c հասարակ աւուրն / ՏԹ հասարակօրոյ
13 ab հետեւագնացի / gl¹ հետակագնացի / p հետևակ գնացի
14 ՏԹ առնն
14 Ա ճանապարհորդի / ՏԹ ճանապարհի։ Թերևս ուղղելի ճանապարհաւ
15 d այրւոյն / Կ² արոյն
15 Կ²abcdet փառախոտի / o փարոխի
16 a իւրեանց / c զտեղիս
16 Ա անուանեցին, փխ. կոչեցին
16 o ի փառախայ
16 a չիք և
16 hopqrs չիք ի (ցոլակայ)
17 c զլեառնն. միւսն. զլեառն
17 ad ամասիա / միւսն. ամասիայ
17 ՏԹcde իւր [g իւրով]
17 c անուամբն
18 t չիք և (ինքն)
18 h չիք և (մեռաւ)
19 Ա անցելոց / acox զհարմա
19 copqrs չիք և թողեալ—յարմաւիր (եր. ֈ! . 8. 1)

*թողեալ զՀարմայ յԱրմաւիր հանդերձ որդւովք բնակել, և ինքն գնաց զմիւս լերամբն արևելեան հիւսիսոյ, յեզր ծովակի միոյ։ Շինէ գեղ ծովակին, և թողու անդ բնակիչս. և յիւր անուն և սա զլեառնն անուանէ Գեղ, և զշէնսն՝ Գեղարքունի, որով կոչի և ծովն։ Աստ ծնաւ զորդի իւր զՍիսակ, զայր սէգ և անձնեայ, բարեգեղ, կորովաբան և գեղեցկադեղն։ Սմա զմեծ մասն ընչից իւրոց տուեալ և ծառայս անձինս բազումս՝ սահմանս հատանէ նմա ժառանգութեան ի ծովէն ընդ արևելս մինչև ցդաշտ մի, ուր գետն Երասխ հատեալ զքարանձաւս լերանց՝ անցանէ ընդ խոխոմս ձիգս և նեղս, ահագին դղրդմամբ իջանէ ի դաշտն։ Աստ բնակեալ Սիսակ՝ լնու շինութեամբ զսահմանս բնակութեան իւրոյ. և զաշխարհն կոչէ իւրով անուամբն Սիւնիք. այլ Պարսք յըստակագոյնս ևս Սիսական կոչեն։ Ի սորա ծննդոց աստ ուրեմն Վաղարշակ, որ առաջին ի Պարթևաց արքայ Հայոց, գտեալ արս անուանիս՝ տեարս աշխարհին կարգէ, որ է Սիսականդ ազգ. և զայս առնէ Վաղարշակ՝ ի պատմութենէն ստուգեալ։ Այլ այս թէ որպէս է, յիւրում տեղւոջ պատմեսցուք։*

*Բայց ինքն Գեղամ դառնայ անդրէն ի դաշտ անդր, և առ ոտամբ նորին լերինն ի ձորակի միում ամրոջ շինէ ձեռակերտ մի, և կոչէ զանուն նորա Գեղամի, որ յետոյ ի Գառնկայ թոռանէ նորա անուանեցաւ Գառնի։ Ի սորա ծննդոց աստ ուրեմն առ Արտաշիսիւ թոռամբ*

1 abdx զհարմա / c որդովք
1 Տխ որովք բնակէրն, փխ. որդւովք բնակել
1 Կ[7]abcw բնակիլ
2 Ա կողմամբ, փխ. լերամբն
2 Ա արևելից / h յարևելեան
3 a չիք և (թողու)
3 c աւանդ, փխ. անդ
3 bdghpqs զլեառն
4 g զշէնս / p շէնսն
4 Վabcklmno գեղաքունի / f գեղարքունիս
4 cf որով և կոչի և
4 c ծնանի
5 l սեգ
5 Ա չիք և (գեղեցկադեղն)
5 de գեղեցիկադեղն
6 pqrs սա, փխ. սմա
6 Տխ յընչից
7 h յարևելս, փխ. ընդ արևելս
8 Ա ի դաշտ
8 Տխa որ, փխ. ուր
8 a կոչի, փխ. գետն
8 Ա հատանէ
9 p չիք ընդ
9 Տխ խոխոմաձիգս, փխ. խոխոմս ձիգս
9 p դնեղս
9 Ա դըդղմամբ / p դրնդղմամբ
9 Ա ի դաշտ մի
10 Տխ բնակեալ. միւսն բնակէ
10 g սիսակայ. (այ աւելացրած k գլխին) / ; սիսակայ
10 Ա իւրոյ բնակութեանն [f բնակութեան]
11 k աշխարհն / dghopqrs անուամբ
11 p պարսկք
11 Տխ յըստակագոյն ևսկ [qrs չիք ևսկ]
12 c սիսականս / hc[1] սիսիական
12 c ևսկ սորա
12 Ա աստ ուրեմն առաջին ի [c չիք ի] պարթևաց վաղարշակ արքայ
14 Ա որպէս, փխ. որ է
14 gkp սիսական
14 w ազն, փխ. ազգ / Ա չիք ազգ
14 c չիք և
15 r ի պատմութենն (պա.)
15 kl չիք թէ / Ա չիք է
15 cf տեղւոյն / Տխ ժամու, փխ. տեղւոջ
16 f պատմեցից
17 Ա չիք անդրէն / y չիք և
17 Կ[2]abcef ոտամբն
18 Ա լերին
18 c ի միում / Տխ մի
18 d դաստակերտ, փխ. ձեռակերտ
19 Ա գեղամէ / h գեղամին
19 k որոյ, փխ. որ յետոյ
19 Աo թոռնէ
20 Ա արտաշէսիւ

Վաղարշակայ ոմն Վարաժ անուն պատանի լեալ, աջող յորս եղջերուաց և այծեմանց և վարազուց, դիպաձգութեամբ նետից կորովի. զսա ի վերայ որսոց արքունականաց կարգէ, և չէնս պարգևէ նմա առ եզերբ գետոյն, որ անուանեալ կոչի Հրազդան։ Եւ ի սմանէ ասեն լինել զտունն Վարաժնունի։ Այս Գեղամ, որպէս ասացաք, յետ ամաց կենաց իւրոց ծնանի զՀարմայ. յետ որոյ կեցեալ և այլ ևս՝ և մեռանի։ Եւ հրամայեաց որդւոյ իւրում Հարմայ բնակել յԱրմաւիր։

Այս Հայկ որդի Թորգոմայ, որդւոյ Թիրասայ, որդւոյ Գամերայ, որդւոյ Յաբեթի, նախնի Հայաստանեայց. և այս ազգք նորա և ծնունդք և աշխարհ բնակութեան նոցա. և յայսմ հետէ սկսան, ասէ, բազմանալ և լնուլ զերկիրն։

Իսկ Հարմայ կեցեալ ամս՝ ծնանի զԱրամ։

Արամայ բազում գործք քաջութեան պատմին մարտից նահատակութեան, և ընդարձակել զսահմանս Հայոց յամենայն կողմանց. յորոյ անուն և զաշխարհս մեր անուանեն ամենայն ազգք, որպէս Յոյնք՝ Արմէն, իսկ Պարսիկք և Ասորիք՝ Արմէնիկք։ Բայց զընդարձակութիւն պատմութեան սորա և զգործս քաջութեան, թէ զիարդ կամ առ որով ժամանակաւ, թէ կամիցիս՝ արտաքոյ այսորիկ գրոց կարգեսցուք, և կամ թողցուք. ապա թէ ոչ՝ ի սմին։

1 Տպa վարժ [no վարաժ]
1 Ա չիք լեալ
1 Տպcf աջող [h յաջող]. միւսն. յաջող
1 cf ի յորս
2 Կ[2]abdef չիք և (այծեմանց)
2 Ա գեղեցկութեամբ, փխ. դիպաձգութեամբ / w դիպաձգութեան
3 hopqr որսուց / Տպ արքունեաց
3 det չէն / h զչէնս
3 Ա եզր [c եզեր]
4 Ա հրասդան [e հրաստան]
4 g չիք և / h ի նմանէ
4 def լինիլ / pqrs լեալ
4 cf զտուն
5 c վարաժունի / kl վրաժնունի
5 Ա չիք կենաց իւրոց
6 Ա ծնանի / Աx զհարմա
6 c և յետոյ, փխ. յետ որոյ
6 Տպ չիք կեցեալ
6 rs չիք յետ որոյ—հարմայ (տ. 7)
6 abcd այլ / y զայլս
6 ghknopq չիք ևս
6 c չիք և (մեռաւ)
6 Ա հրամայէ
7 ac որդոյ / hklopq իւրոյ
7 bc հարմա / fk բնակիլ
8 hp հայկա
8 abdefghw գամիրայ
9 a յաբէթի / p նախնոյ
9 f հայաստանեացս / lno հայաստանեաց
9 pqrs ազգ
10 c աշխարհք / d աշխարհս
10 Տպ չիք նոցա / a այսմ
10 c սկսանին բազմանալ
10 abdefw ասէ, սկսան [f սկսանին]
11 o զերկիր
12 bcd հարմա
13 hors արմայ, p արամէ, փխ. արամայ
13 Տպ մարտիւք
14 Տպ ընդարձակեալ [h ընդարձակել, pq ընդարձակիլ, r ընդարդարձակել, s ընդ յարդարձակել]
14 h ամենայն
14 Կ[7] որոյ
15 Տպ և ամենայն ազգք զաշխարհս մեր անուանեն
16 Տպ և, փխ. իսկ
16 Աg ասորիք (abcw ասորիկք) և պարսիկք / h ասորիկիք
16 Կ[2]aw արմէնիկք / Տպ արմենիք [gl արմընիկ, Հh արմենիկ]
17 k չիք պատմութեան
17 b նորա, փխ. սորա
17 Աhoqrs զգործ / p գործ
17 k զի թէ արդ, փխ. զիարդ
17 Տպb չիք առ
17 Ա ժամանակի
18 det չիք արտաքոյ
18 Տպ գրոցս
19 k չիք և կամ թողցուք

և տալ տանել յերկիրն Թուժաստանի յԱնուշն կոչեցեալ բերդ։ Եւ բազում զօրս գումարեալ ի ձեռն Մեհրուժանայ Արծրունւոյ և Վահանայ Մամիկոնէի, ուրացողաց զՔրիստոս, արձակէ յաշխարհս Հայոց. որք եկեալ նստան շուրջ զբերդաւն Արտագերից։ Եւ թէպէտ ոչ ինչ կարէին առնել նմա վասն անմատչելի ամրութեանն, բայց զի բարկութիւնն Աստուծոյ էր ի վերայ Արշակայ՝ մարդիկ ամրոցին ոչ անսային մեալ համբաւուն Պապայ, այլ անձնատուրք եղեն ի կամաց, և ոչ ի բռնութենէ։ Զորս գերեալ հանդերձ գանձիւքն և տիկնաւն Փառանձեմաւ խաղացուցին ի յԱսորեստան. և անդ ընդ այլի ցից հանեալ՝ սատակեցին։

Ի նմին ժամու եհաս հրաման ի Շապհոյ արքայէ, զի քանդեալ աւերեսցեն զամրութիւն ամենայն քաղաքաց, և զՀրէայսն խաղացուսցեն ի գերութիւն, և զայն Հրեայսն, որ նովին հրէութեան օրինօք կային ի Վանն Տոսպայ, զորս ածեալ էր Բարզափրանայ Ռշտունւոյ յաւուրս Տիգրանայ. զորս բնակեցոյց Շապուհ յԱսպահան։ Գերեցին և զայն Հրեայսն որք յԱրտաշատ և ի Վաղարշապատ, զորս ածեալ էր նոյն Տիգրանայ արքայի, որք յաւուրս սրբոյն Գրիգորի և Տրդատայ հաւատացեալ էին ի Քրիստոս. ընդ որս և զԶուիթայ երէց Արտաշատու։ Յայնժամ մատուցեալ առ Շապուհ Մեհրուժան և Վահան չարախօսէին զԶուիթայ երիցուէ Արտաշատու, եթէ յայն սակս եկն ընդ գերութիւնն, զի խրատեսցէ զնոսա պինդ ունել զօրէնս քրիստոնէութեան։ Վասն որոյ Շապուհ հրամայեաց

1 prs տալ
1 abcdetw յանյուշն
2 l բազումս
2 Ա զօր բազում
2 ՏԽab մերուժանայ
2 abc արծրունոյ
3 Վlmno մամիկոնոյ / pqrs մամիկոնւոյ / Հgk մամիկոնեայ
3 b արձակ
3 cf յունաց, փխ. հայոց
5 detw չիք նմա
5 Հgr ամրութեան
5 ՏԽ չիք զի
5 Հgl բարկութեան
5 Հk յաստուծոյ
6 abdetw մարդիկք
6 ԱՀl համբաւուն / միւսն. համբաւոյն
7 cd զոր
8 ԱՀg գանձիւք
8 g խաղացին / k խաղաղացին
8 Աgky չիք ի (յասորեստան)
9 ՏԽ ընդ այլացից
9 ԱՀ հարեալ, փխ. հանեալ
10 ՏԽ հրաման շապհոյ, զի / a չիք ի (շապհոյ) / c շապուհ
10 k քանդի
11 pqrs չիք աւերեսցեն
11 Ա զամենայն ամրութիւն
11 Ա զՀրէայսն խաղացուցանել
12 Ա հրէայք / p հրեայս / tw հրէայսս որք
12 ՏԽ նոյն
12 Ա չիք հրէութեան
12 ՏԽ օրինօքն / o օրինօքն հրէութեան
12 Ա ի վան / p ի վանս
13 ՏԽ զոր
13 abdegp բազափրանայ / k բազրափրանայ / q ի բարզափրանայ
14 gk զոր / q բնակե
14 p և գերեցին զայն
14 c չիք և
14 k զայլ, փխ. զայն
14 abdefιw հրէայս
15 dkoprs զոր / k չիք էր
16 ՏԽ որ / c չիք և
17 gk զուիթայ / d էրէց
17 abdetw և, փխ. յայնժամ
17 f չիք յայնժամ մատուցեալ—արտաշատու (տ. 19)
18 abde մերուժանայ / tw մեհրուժանայ / ՏԽ մերուժան
18 abde չիք և վահան
18 abde չարախօսեաց զզուիթայ երիցու
19 d թէ / b այն
19 Կabcdetw ընդ գերեալսն / Հ ընդ գերեալս / gp ընդ գերութիւն / noqrs ընդ գերութիւնս
20 Ա զհաւատսս(ն), փխ. զօրէնս
20 Հ հրամայեաց շապուհ

չարչարել զՋուիթայ, զի թողցէ զօրէնս քրիստոնէութեան. որում ոչ հաւանեալ, կատարեցաւ: Զայս ամենայն աղէտս թշուառութեանց լուեալ Արշակայ՝ սաւուղաբար արար ընդ անձին իւրում. որ թագաւորեաց ամս երեսուն:

## ԼԶ

### Անցք ընդ մեզ չարեացն որ ի Մեհրուժանայ, եւ թագաւորել Հայոց Պապայ:

Յետ մահուանն Արշակայ գումարեաց Շապուհ զօր բազում ի ձեռն Մեհրուժանայ, և արձակեաց ի Հայս, ի նա հաւատալով զաշխարհս: Եւ տուեալ նմա կին զքոյր իւր զՈրմզդուխտ, և հրովարտակս բազում շինից և դաստակերտաց ի Պարսից աշխարհին, և խոստացաւ տալ նմա զՀայոց թագաւորութիւնն, միայն թէ զնախարարսն նուաճելով՝ ի դէն մազդեզանց զաշխարհս դարձուցէ: Որոյ յանձն առեալ և եկեալ, և զբազումս ի նախարարաց կանանց կալեալ՝ ի բերդս բերդս տայր պահել, զդարձ արանցն յուսալով: Եւ զամենայն կարգ քրիստոնէութեան ջանայր խափանել: Զեպիսկոպոսս և զքահանայս հարկաց պատճառաւ կապեալ՝ յերկիրն Պարսից տայր տանել: Եւ զորս միանգամ գիրս գտանէր՝ այրէր, և հրաման տայր մի ուսանել զդպրութիւն յունարէն, այլ զպարսիկ, և մի ոք իշխեսցէ յոյն խօսել կամ թարգմանել. այսպէս ինչ պատճառաւ, զի ամենեւին մի լիցի Հայոց ընդ Յունաց ծանօթութիւն և հաղորդութիւն սիրոյ, այլ ճշմարիտ՝ խափանել զքրիստոնէութեան ուսումն. զի յայնժամ գիր դպրութեան Հայոց չև ևս էր լեալ, և յունականաւն վարէին եկեղեցւոյ կարգք:

1 Ա չարչարել զգուիթայ հրամայեաց Շապուհ
1 a զթողցի, փխ. զի թողցէ
1 Ա զօրէնս / միւսն. զհաւատս
2 Ա թշուառութեան տեսեալ արշակայ
3 Ա սաւուղաբար անձինն [de անձին] արար որ / p ընդ անձին իւրում արար
3 Խ իւրոյ
6 c չարեաց նորին մեհրուժանայ
6 Տաe մերուժանայ
6 g չիք և / Ա չիք հայոց
8 c զօր բազում, և առաքեաց ի հայս ի ձեռն մեհրուժանայ
8 Վ[2]l զօրս բազում / gk զօրս բազումս
9 Տա մերուժանայ / abdefiw արձակէ
9 Ա և ի նա հաւատայ
9 opqrs չիք ի հայս—զաշխարհս
10 prs չիք իւր / Ա բազումս
11 վ դաստկերտաց
11 Ա նմա տալ [b տալ նմա] զթագաւորութիւնն հայոց
12 g թագաւորութիւն / abc եթէ
12 Ա նուաճեսցէ և ի դէն [de ի դենի]
13 Տա ի դեն / Ա զաշխարհն
14 Աg չիք և / p ի նախարարացն
14 Ա զբազումս նախարարաց կանայս կալեալ՝ ի բերդս տայր / p կապեալ
16 Ա զեպիսկոպոսունս
16 lnqrs քահանայս / k զքահանայսս
16 Տա պատճառաց [Հ պատճառաւ]
17 Կ[2]abef կապել / c կալեալ, փխ. կապեալ
17 abcdetw զոր
17 k միանգամայն / Հgk գիր
18 s տայ / b մի յուսանել
18 Ա դպրութիւն / o զդպրութիւնս
19 d զպարսիկ / միւսն. պարսիկ
19 Ա մի իշխեսցեն խօսել յոյն
19 Հ խօսիլ կամ թարքմանել
20 a իմն, փխ. ինչ / վ ամենեւիմբ
20 ab հայոյ / Ա ընդ յոյնի
21 d հաղութիւն / Ա բայց, փխ. այլ
22 p չեւ, փխ. չև ես
23 Ա կարգք [b կարգ, c կար] եկեղեցւոյ վարէին

*Արդ՝ իբրև լուաւ մեծն Ներսէս զչարիսն ամենայն, որ հասին ի վերայ Հայոց, և զմահն Արշակայ՝ աղաչեաց զինքնակալն Թէոդոս, խնդրելով ի նմանէ օգնականութիւն։ Եւ թագաւորեցուցանէ զՊապ որդի Արշակայ. և ընդ նմա գումարեաց զօր բազում ի ձեռն քաջ ստրատելատին Տերենտիանոսի։ Եւ մեծին Ներսիսի առեալ զամենայն նախարարսն, որք կամակից էին ընդ տէրութիւնն Պապայ և որք ոչ, և զապրեալ Կամսարականն Սպանդարատ՝ սոցա միաբանութեամբ ածէ զՊապ յաշխարհս Հայոց։ Եւ եկեալ գտանեն զամբարիշտն Մեհրուժան պետացեալ կալեալ զերկիրս Հայոց. և հալածական արարեալ՝ յինքեանս թափեն զաշխարհս։ Բայց Մեհրուժան հրամայէ պայկացն՝ զբերդիցն պարապաց կախել զկանայս նախարարացն, մինչև մեռցին. և թողուլ նոյնպէս ի կախաղանին զդիակունսն, զի լուծեալ անկցին՝ զեշ կերակուր լինել թռչնոց։*

## ԼԷ

**Յաղագս մեծի պատերազմին՝ որ եղև ի Ձիրաւ, և սատակման ամբարտաւանին Մեհրուժանայ։**

*Ազդ արարեալ Մեհրուժանայ յերկիրն Խորասանայ առ Շապուհ զամենայն օգնականութիւն Թէոդոսի զոր արար առ Պապ՝ ելանէ հրամանն ի Շապհոյ՝ ամենայն զօրացն Պարսից երթալ ընդ Մեհրուժանայ ի Հայս ի պատերազմ։ Նոյնպէս ազդեն ինքնակալին Թէոդոսի Պապ և Տերենտիանոս զՇապհոյ, թէ ամենայն զօրացն հրամայեաց ելանել ի*

1 Խ զչարիս / Ա չիք ամենայն
3 ԱՀ թագաւորեցուցանել
4 Խ զօրս
4 abcef քաջ / Կ$^{2}$dtw չիք քաջ
4 d սպարապետին, փխ. ստրատելատին
5 Ա մեծին [a մեծ] տիրէնտիանոսի [abf տէրինտիանոսի, cde տերենտիանոսի] / Վklmn տէրէնտիանոսի / opqrs տէրտիանոսի
5 bcdef Ներսէսի
6 Հgk կամակիցք / a չիք ընդ
6 Հfg ընդ տէրութիւն / Կ$^{2}$adetw ընդ տէրութեանն
6 Ա պարսից, փխ. պապայ
6 a չիք և որք ոչ / Կ$^{2}$bcdeftw ոչն
6 Ա զապրեալն կամսարական
7 a սրանդարատ / o սպանդարատ կամսարական
7 Ա չիք սոցա / c ածել
8 ՏԽ մերուժան [Հ մեհրուժանայ]
8 k պիտացեալ կապեալ զերկիրս
9 y զերկիրն / Ա զաշխարհս, փխ. զերկիրս
9 op հալածականս
10 Ա չիք զաշխարհս
10 ՏԽ մերուժան [Հ մեհրուժան]
10 Կ$^{2}$abcr պայկացն / վo պայականացն / d սպայականացն / միւսն. պայակացն
10 ՏԽ զբերդից պարապացն
11 y թողլուլ այնպէս ի
12 opqrs անկանիցին / deo լինել
15 opqrs մեծ
15 l ի ձի իրաւ / y ի ձի աւիրաւ
15 Ա սատակումն
15 f չիք ամբարշտին
16 ՏԽ մերուժանայ
17 ՏԽ մերուժանայ [Հ մեհրուժանայ, l մերժանայ]
17 ly խորասանայ
19 ՏԽ զօրաց
19 ՏԽ մերուժանայ [y մերուժան]
20 abdef ի պատերազմ ընդ մեհրուժանայ [a մեհր] ի հայս
20 c ի պատերազմ ի հայս
20 p ի հայս պատերազմել
20 Հ չիք ինքնակալին
21 ab տերինտիանոս / ՏԽ տէրէնդ [gh տերէնտ, op տերենտ]
21 Ա եթէ

վերայ մեր, բայց ի դրանկացն։ Ապա և Օգոստոսն Թէոդոս հրամայեաց Ագգէի կոմսին մեծի երթալ յօգնականութիւն Պապայ, առնուլ զամենայն զօրս Յունաց, ոչ զոր թողուլ՝ զոր ոչ առցէ. այլ և զհետեակս պահապանս քաղաքացն, որք զմետաքսեայսն ունէին զվիշապս։

Եւ խմբեցաւ պատերազմն ի դաշտին որ կոչի Ձիրաւ, և մատեան ճակատ առ ճակատ։ Եւ մանկունք քաջ նախարարացն Հայոց, ինքնակամ նահատակեալք, մտին ի մէջ ճակատուցն, առաջնորդութեամբ սպարապետին իւրեանց Սմբատայ ասպետի, որդւոյ Բագարատայ, որ յազգէն Բագրատունեաց։ Ելին և ի զօրացն Պարսից համաձայնք նոցա, և խաղացին ի մէջ ճակատուցն. և ցիրք ընդ ցիրս լինէին։ Եւ ի դառնալ մանկանցն Պարսից, ընդ հուպ դարձեալ մերոցն զհետ նոցա, օրինակ իմն որպէս փոթորիկ յանտառէ տերևաթափ, այնպէս երագ յերիվարացն առեալ նիզակօք, զի ցուրտ յերկիր ընկենուին, ոչ կարելով նոցա յիւրեանց ճակատն մտանել։ Իսկ յորժամ պարսիկքն զմերն շրջէին՝ նոքա ի վահանափակն Յունաց իբր յամուր քաղաք մտանէին, առ ոչ ինչ մնասելոյ։ Քանզի այնպէս արար Գորգոնոս իշխան հետևակ զօրուն, իբր պարսպապատեաց վահանօք զճակատն Պապայ։

Քանզի զօրքն Յունաց վառեալ էին ի զէնս ոսկւոյ և արծաթոյ, և երիվարք նոցա նոյնպէս զարդու, և էր տեսանել իբրև զպարիսպ ինչ, յորոց յոլովք ի ջղեայ և ի կաշեայ պահպանակաց զգեստուն զկարծրութեան վիմաց բերէին երևոյթս. և ի վերայ նոցա անխալամ զէնք նշանք արձակեալք իբր զատագարթս ինչ հոլանաւոր ծառոց։ Բայց զվիշապացն մանուածս, ահագին բերանաբացութեամբ ուռուցեալ ի փչմանէ օդոյն,

1 Ա բաց [cdef բայց] միայն ի / ԽԿ'nops բաց ի
1 ՏԽ չիք և
1 abdef օգոստոսն / g օգոստոս / Ձ աւգոստոս
2 c ագէի / o չիք ագգէի
2 Ա կոմսի / Ձkl կոսին
2 y օգնութիւն
3 d որ / Ա առցէ զկնի
3 k ինչ, փխ. ոչ
3 k պահականս
4 Ա զմետաքսեայս, loprs զմետաքսայսն
5 o մտանեն, փխ. մատեան
6 Վkm մանկունքն
6 abcefr նախարարաց
7 c չիք մտին
7 c ճակատուց / prsy ճակատոցն / o ճակատացն
9 gl չիք և (ի զօրացն)
9 Ձc խաղային
10 Ձ ճակատոցն
10 ՏԽ ցիր ընդ ցիր լինէր [n ցիրք ընդ ցիրս լինէին]
10 Ձg ի դառնալն մանկանց [g մանգանց] / k մանկանց
11 g մերոց
12 Ա տերևաթափաց
12 Ա չիք այնպէս
12 Ն/ երիւարացն
13 f չիք զի ցուրտ / վ զիացուրտ
13 Ն/ իւրեանց
14 Ձ չիք մտանել
15 Ն/ իբրև
15 b քաղաքն / d քաղաքի
15 Ա մնաս առնելոյ
16 Ա գորգիանոս [f գորգիանոս] / Ձ գորգոնոս
16 pqrs իշխանն
16 Ա պարսպօք [c պարսպաւք]
17 c պատահեաց, փխ. պատեաց
17 Ա վահանօքն
18 k զօրն / abc ի զէն
19 abce երիւարք / bcde իբր
20 a յորովք ի ջլեայ / tw իջլեայ
20 d պահանակաց
20 f զգեստուն / k զգեսուն
21 abcef բերէր / klpqrs բերին
21 Ա անխալատ զէնք նշանս
22 l յարձակեալք / ՏԽ զատագարթ
22 nopqrs զվիշապաց
23 k բանուածս, փխ. մանուածս
23 k օդոյն

ոչ ինչ ուրեք կարեմ նմանեցուցանել, այլ միայն իբրև զլեառն ինչ ադամանդեայ խոնարհիլ ի ծով—բովանդակ ճակատն Յունաց ի պարսկական զօրսն: Քանզի և զնոսա էր տեսանել իբրև զհզօր ինչ գետ առ ի կողմն ի լայն ծաւալեալ. արդարև զջրոյ գոյն զրահազգեստացն բերէր տեսութիւն:

Արդ՝ իբրև ետես մեծն Ներսէս զայն ամենայն՝ ել նա ի կատար լերինն Նպատայ. և ամբարձ զձեռս իւր յերկինս, անխոնարհելի պահելով ի խնդրուածս, հանգոյն նախամարգարէին Մովսէսի, մինչև պարտեցաւ երկրորդն Ամաղէկ:

Իսկ ի ծագել արեգականն ընդդէմ մերոց զօրացն, ի պղնձապատ վահանացն նշոյլք զլերամբքն փայլատակէին իբրև յամպոյ մեծէ, և ի նոցանէ ի դուրս ոստչէին ի մերոց նախարարացն քաջ զրահաւորք՝ որպէս փայլատակունց ճառագայթք. յորոց միայն ի տեսութենէն զանգիտեալ պարսկական գունդն, սակաւ ինչ և մերն, վասն ոչ կարել հայել ընդդէմ արեգականն ծագման: Իսկ ի բաղխել զմիմեանս՝ եղև ի վերայ հովանի ամպոյ, և հողմ սաստիկ ի մերոցն կուսէ ընդդէմ պարսկականին փչեալ: Եւ ի խառնակել մարտին՝ պատահէ Կամսարականն Սպանդարատ խմբի մեծի, յորում էր քաջն Շերգիր Ղեկաց արքայ, զգլուխ միջին գնդին պնդութեամբ զտեղի ճակատուն կալեալ: Եւ յարձակեալ Սպանդարատ, և հերձեալ զխումբն, որպէս զշանթահար յերկիր կործանէր զքաջն, և զխումբն պատառեալ՝ ի փախուստ դարձուցանէր: Եւ այսպէս ի վերին օգնականութենէն զօրացեալ առ հասարակ զօրքն Յունաց և Հայոց, դիակամբք թշնամեացն լցին զդաշտն ամենայն, և զմնացորդսն ամենայն ի փախուստ շրջեալ հալածեցին: Ընդ որս և զՈւռնայր Աղուանից արքայ, խոցոտեալ ի Մուշեղայ որդւոյ Վասակայ Մամիկոնենի, հանին ի պատերազմէն:

1 Հgk ուր. փխ. ոչ
1 Հ չիք իբրև / c լեառն
1 bcdefopqrstw անդամանդեայ
2 c խոնարհել
2 p բովանդակ / միւսն. զբովանդակ
3 g իբր / Ա որպէս, փխ. իբրև
3 ap հզօր
3 pqrs չիք առ ի կողմն
4 Հ որ արդարև
4 Ավ ջրագոյն / վ զջրագոյն, փխ. զջրոյ գոյն
4 d զրահազգեստուցն
4 Հ զտեսութիւն / Ա զնմանութիւն, փխ. տեսութիւն
5 c զայս
6 abdeftw զձեռն
6 c յերկինս զձեռս իւր
7 qrs ի խնդրուած / bcdefo մովսէսի
8 f երկրորդ / a ամաղեկ
9 b ընդ, փխ. ընդդէմ
9 gk մերոյ / p մեր
9 y զօրացն մերոց
10 cg զլերամբք / lpqrs զլերամբն
11 Ա ոստնչէին / f և ի մերոց
11 Ա քաջք զրեհաւորք
12 Կ[1]Հd փայլակացն / l ի փայլատակաց / Կ[1]Վ[2]gnopqrsy ի փայլատակացն
12 Ա ի տեսութենէն միայն
12 p չիք ի (տեսութենէն)
13 y ի պարսկական
14 ab ծագմանն
14 c զբախելն / del ի բախել / tw ի բաղխել / միւսն. ի բախելն
15 agl հողմն / Հ սաստից
15 Հfgk ի մերոց
17 a չիք քաջն
17 a գեշգիր / Վbfkmno շէրգիր
17 Կ[2]abdef զգլուխն / Տw միջի
19 b զգունդն, փխ. զխումբն
19 odqrs չիք որպէս—և զխումբն (ե. 20)
19 Տwd շանթահար
20 Հ չիք զքաջն
20 abcefiw պատառեալ զխումբն
21 Տw հասարակ
22 Տw թշնամեաց / j չիք թշնամեացն
24 o ի մուշեղէ / k վասակայի
24 Ա մամիկոնէի / w չիք որդւոյ—մամիկոնենի

Բայց ամբարշտին Մեհրուժանայ վիրաւորեալ ձին՝ ոչ կարաց երագել ընդ փախստեայսն. որում աճապարեալ հասանէ սպարապետն հայոց Սմբատ, և զօրս ընդ նմայն էին կոտորեալ՝ ձերբակալ առնէ զվատաշուէրն յեզեր շամբին Կոգայովտի։ Եւ զմտաւ ածեալ, թէ գուցէ թափիցէ զնա մեծն Ներսէս, այնորիկ աղագաւ ոչ ածէ ի բանակն. այլ զտեղօքն գտանէ պատրաստական առ ի կորուստ ամբարշտին զամանս խորանաւորս հուր լուցեալ, և շամփուր երկաթի՝ միս խորովելոյ. զոր ջեռուցեալ, կրկնեաց բոլորեալ որպէս պսակ, և յոյժ արտաշէկ արարեալ, ասէ. «Պսակեմ զքեզ, Մեհրուժան, քանզի ի խնդիր էիր թագաւորել Հայոց. և ինձ ասպետիս պարտ է զքեզ պսակել ըստ սովորական իշխանութեան իմոյ հայրենեացս»։ Եւ մինչ դեռ տաքն էր իբրև զհուր՝ եդ ի գլուխն Մեհրուժանայ, և այնպէս սատակեցաւ չարն։ Եւ յայնմ հետէ խաղաղեցաւ երկիրն, ընդ ձեռամբ Պապայ նուաճեալ։

## ԼԸ

### Եթէ ո՛րպէս Պապայ դեղ մահու արբուցեալ սրբոյն Ներսիսի՝ ելոյծ ի կենցաղոյս։

Յետ սպառելոյ պատերազմացն և խաղաղանալոյ երկրիս, մեծն Ներսէս դնէր վկայութիւն ի մէջ արքային Պապայ և ի մէջ նախարարացն՝ գնալ յամենայն ճանապարհս արդարութեան, զի վկայեսցեն ըստ հաւատոց քրիստոնէութեան և գործքն. և զի արքայն մի հօրն խրում նմանեսցի, անխրատել և զրկել, այլ վարեսցի ուղղութեամբ, հայրաբար խնամովք առ նախարարսն. և նոքա մի ևս յաւելցեն վատարանջել, նշկահելով զնա, այլ ծառայել միամտութեամբ։ Յայնժամ արքայն Պապ դարձոյց ի Կամսարականն Սպանդարատ զամենայն ինչ՝

1 c ամբարիշտն
1 Տխ մերուժանայ [Հ մեհրուժանայ]
2 l ընդ փախստայսն / y ընդ փախստեանսն
3 Տխ կոտորէ / c զվատաշուերն
4 acf կոգառովտի / վl կոգայովտի / k կագառովտի / Հ կագայովտի
5 c տեղօքն
6 a չիք գտանէ
7 Տխ ի միս խորովեալ
7 gky ջեռացուցեալ
8 c արտաշէկ
9 Տխ մերուժան
9 վcopqrs չիք ի (խնդիր)
10 ab ասպարապետիս, փխ. ասպետիս
10 bcde իշխանութեանն
10 o իմոյ հայրենեաց իշխանութեան
11 Տխ տաք / Տխabcf ի գլուխ
12 Տխ մերուժանայ
12 Ա սատակեաց զչարն
12 Հctw խաղաղացաւ
15 pqs թէ
15 cor պապ / c արբուց
15 cdefors Ներսէսի / ctw և ելոյց
16 ce ի [c չիք ի] կենաց
17 oprs պատերազմաց
17 Ա երկրին
18 Տխ ի մէջ արքային և նախարարացն
19 Հ չիք զի։ Այստեղ վերջանում է Հ-ի համեմատությունը։
20 abcdetw քրիստոնէութեանն
20 k չիք և (գործքն)
20 խՏ և զի [խopqrs չիք զի] արքայի մի հօր խրում նմանել [Հ նմանիլ]
21 Հgk չիք անխրատել
21 c վերասցի
22 d հայրենաբար / Տխ խնամով
22 Տխ մի ևս յաւելցին
23 Ա վատարանգել [c վատանգել]
23 k չիք նշկահելով զնա, այլ ծառայել
24 Ա արքայն հայոց պապ
24 c զամենայն որ ինչ

զոր յափշտակեալ էր հօր իւրոյ Արշակայ, զգաւառն Շիրակայ և զԱրշարունեաց, որ լեալ էին ազգին Կամսարականաց, ոչ իբրև զանիրաւ ագահութիւն հօր իւրոյ Արշակայ, այլ իբրև պարգևս ընդ վաստակոց քաջին Սպանդարատայ, որ սպան զՂնեկաց արքայն։ Այլ և զայլոց նախարարացն դարձոյց զզրկանս, և յայժմ անընչասիրաբար ցուցանէր զիւր ախորժակն, և առատաբար կեայր։

Բայց զի ամօթալի ախտիւ զազրագործ էր, և յանդիմանեալ կշտամբէր ի մեծէն Ներսիսէ, ընդ ակամբ հայէր ի նա, խորհելով չարիս, և ոչ իշխէր յինքնակալէն Թէոդոսէ յայտնի ինչ առնել նմա չարիս. դեղ մահու զաղտնի արբուցեալ սրբոյն Ներսիսի՝ ելեալ ի կենցաղոյս. որ կալաւ զաթոռ եպիսկոպոսութեանն ամս երեսուն և չորս։ Եւ փոխեալ յաշխարհէս երանելին Ներսէս ի գաւառին Եկեղեաց, ի գեօղն որ կոչի Թախ, բարձեալ զմարմին նորա արքային Պապայ՝ թաղեաց ի Թիլն աւանին, զանխլաբար ունելով զեղեալսն։

## ԼԹ

### Յաղագս աթոռակալութեանն Սահակայ, և սպանմանն Պապայ ի Թէոդոսէ։

Ապա տեսեալ թագաւորին Պապայ սգացեալ զամենայն Հայս ի վերայ երանելւոյն Ներսիսի, հարկաւորեալ յուղեաց և եգիտ զոմն յազգէ և ի ժառանգութենէ Աղբիանոսի, որում անուն Սահակ կոչէր, ոչ հեռի ի զովութենէ. զոր կացոյց փոխանակ Ներսիսի առանց մեծի արքեպիսկոպոսին Կեսարու. որ կալաւ զաթոռն ամս չորս։

Բայց Պապայ լուեալ, եթէ մեծն Թէոդոս եկ ի Բիւզանդիոյ ի Հռոմ կայր, և մտեալ ի Թեսաղոնիկ հանդերձ սպայիւն, և յաղագս իշխավանին եղև խռովութիւն ընդ նա և ընդ քաղաքացիսն, և մարտ խռովութեան,

1 l զաշարունեաց / Կ[7]tw արշարունեաց
2 Sb չիք որ լեալ էին ազգին կամսարականաց / c չիք ազգին
2 de զանիրաւութիւն, փխ. զանիրաւ
3 Sb զագահութիւն
3 Sb որպէս, փխ. իբրև / x պարգև
4 abde էսպան / Sb արքայ
4 Ա. բայց, փխ. այլ
5 opqrs ընչասիրաբար / tw անընչաբար
6 Ա. ախորժակս / Sb կայր
7 abdef ախտի
8 abdeno կշտամբիւր
8 bcef Ներսէսէ
8 Ա. հայէր նմա խորհելով ի չարիս
8 y խորհէր
9 gk չիք ինչ / Ա. չարութիւն
10 Ա. Ներսէսի
11 adefgkpr եպիսկոպոսութեան / l եպիսկոպոսապետութեանն
12 bcdeftw եկեղեց
12 cn ի գիւղն / g ի գեւղն
13 opqrs կախ, փխ. խախ
13 c և բարձեալ / d չիք արքային
13 Ա. ի Թիլս / w ի Թիղս / g ի Թիլ
15 rs շահապայ / tw խաահակայ
15 Աgko սպանման
15 o պապայ թագաւորին
16 b ցեալ, փխ. սգացեալ
17 Sbc երանելւոյն
17 bdef Ներսէսի / c Ներսեսի
17 y ոմն
18 Sb շահակ [opqrs շահապ]
18 Sbabde կոչիւր
19 l կացոյ
19 abdef Ներսէսի / c Ներսեսի
20 d երեք, Կ[3]abetw Դ, փխ. չորս
21 c պապ
21 abf ի բիւզանդիայ / c ի բիւզանդիա
21 Ա. ի Հռոմ
22 d ի Թեսաղոնիկէ
22 ad իշխաւաց / bcef իշխանաց / Կ[3] իշխաւանաց / g իշխանին / tw իշխավանաց
23 dek ընդ նոսա, փխ. ընդ նա
23 gk և մարտ խռովութիւն

*և յաղթեալ ինքնակալին՝ սատակեաց ի քաղաքացեացն արս հնգետասան հազար։ Զայս լուեալ Պապայ, վարկուցեալ յերկարել այսպիսւոյ խռովութեանն՝ արհամարհեալ ՚նշկահեաց. և գրգռեալ զնա կորստեանն իւրոյ՝ հալածեաց զՏերենտիանոս հանդերձ զօրօքն, և սկսաւ պատրաստել ի պատերազմ։ Եւ հասեալ հրաման ի մեծէն Թէոդոսէ, ընդ կրունկն դարձաւ քաջն Տերենտիանոս։ Եւ ըստ իւրում պատահման բախտին յանկարծակի անկեալ ի բանակն, զոմանս կոտորեալ սրով, և զոմանս փախստեայս արարեալ. ուր սաստկապէս նահատակեալ քաջութեամբ ընդդիմամարտ լինէր Գնէլ նահապետ Անձևացեաց և սպարապետ Պապայ արեւելեան զօրուն. զոր յաղթողին Տերենտիանոսի իւրովի արարեալ սուսերաւ կիսակտուր զգլուխ նորա, ըմբռնեաց զթագաւորն Պապ։ Եւ Պապայ յաղերս աղաչանաց անկեալ, զի մի մեռցի, այլ յանդիման լինել արքային. և քաջին Տերենտիանոսի գթացեալ՝ շնորհեաց նմա զմաղթանսն։ Եւ երկաթեղէն կապանօք երթեալ առաջի մեծին Թէոդոսի՝ ըստ իւրում անզգամութեանն սակրով վճարի, թագաւորեալ ամս եօթն։*

Խ

**Յաղագս թագաւորելոյն Վարազդատայ, եւ կապանաց նորին։**

*Բայց Աւգոստոս բարեպաշտարան Թէոդոս, որ և մեծ, ի քսաներորդ ամին իւրում թագաւորեցոյց Հայոց փոխանակ Պապայ զՎարազդատ ոմն ի նմին տոհմէ Արշակունեաց։ Այս Վարազդատ էր տիովք մանուկ,*

1 p չիք և (յաղթեալ)
1 y ի քաղաքացոցն
1 cde տասն և հինգ
2 Ա հազարս / Տխ լսելով
2 a այսպիսեաց / gk այսպիսի
2 a խռովութիւն / b խռովութեանց
3 g կորստեան / e իւր
4 bc զտէրինտիանոս / Վadefklmr զտէրէնտիանոս
4 a զօրականօքն / g զօրու / Վ²lnopqrs զօրաւն / Վkm զօրուն
5 a ընդ կրունկ
6 bc տէրինտիանոս / Վaefklmo տէրէնտիանոս
6 abcef բախտի
7 k օգնեալ, փխ. անկեալ
7 Կ²abcefiw ի բանակն և
7 k չիք զոմանս կոտորեալ սրով և
7 h կոտորեաց / abcd չիք սրով
7 b փախստեայս
9 bcdef նահապետն / c անձաւացեաց
9 abdefiw արեւելեայ / c յարեւելեայ
10 ef զօրու
10 bnopqrs տէրինտիանոսի / Վakm տէրէնտիանոսի
10 Ա չիք սուսերաւ
11 rs սուսերակտուր
11 Ա ըմբռնեալ / n ըմբռնեաց և
11 ab զթագաւորն զպապ
12 c այլ զի յանդիման լիցի կայսեր. և
12 Խo չիք այլ / de լինիլ
13 bnopqrs տէրինտիանոսի / Վaefkm տէրէնտիանոսի
13 o զմաղթանս
14 c առաջին
15 abefgk անզգամութեան
15 Ա սակրաւ / k չիք ամս եօթն
15 a ով սրբասնունդ հանդիպողք այսմ մատենի յիշեցէք ի թափանցիկ յաղօթս ձեր զտառացող գրօղս զմինաս աստուածարան քաջ բարունին յամթեցի հանդերձ ծնողօքն և ամենայն արիւնառու մերձաւորօքն
18 abdefgl օգոստոս
18 gl բարեցապարան / h բարեպաշտն / o չարեացանպարտն, փխ. բարեացպարան
18 Ա մեծն
19 Աg իւրոյ / Ա չիք հայոց
20 d ի նոյն
20 f ազգէ և տոհմէ / opqrs չիք էր
20 Աn տիօք

սրտեայ, անձնեայ, ուժեղ, լի ամենայն գործովք արութեան, և յոյժ կորովի նետաձգութեամբ։ Որ ի ժամանակի ի փախստեանն Շապհոյ գնացեալ ի դուռն կայսեր նահատակեցաւ, նախ ի Գիսաս դրանամարտիկն յաղթելով. դարձեալ յԱրեգ քաղաքի Ելլադացւոց յոր հասարակի կատարեաց առիւծս, յորում փառս Ողոմպեայ խաղուն հանդիսի յըմբշամարտակացն եհեղ և յարգի։ Այլ որ առ ազգին Ղանկուարտացն նորա արութիւնք քաջութեան՝ համարձակիմ ասել հաւասար սորայն Տրդատայ. քանզի հինգ նահատակս ի Թշնամեացն ընդդէմ իւր յարձակեալ՝ ի վերայ իւրեաց սպան սուսերաւ. և ի բերդ ինչ դիմեալ, ի վերայ պատուարին եօթնևտասն այր նետիւք հարեալ՝ վերուստ ի վայր հոսեաց միմեանց զկնի, իբր ի սաստիկ իմն մրրկէ վաղահասուկ թզենեաց։

Որ եկեալ թագաւորութեամբ յաշխարհս մեր ի յիսուն և հինգ ամին Շապհոյ, առաջին մարտին պատահեաց աւազակաց ոմանց Ասորւոց ի դժուարս Դարանաղւոյ, և փախստեայս արարեալ՝ հետամուտ լինէր։ Իսկ նոցա անցեալ ընդ նեղուցս կամրջին Եփրատայ՝ ընկեցին զփայտն զկնի իւրեանց. այլ նորա հասեալ՝ վազեաց զԵփրատաւ առաւել քան զղակոնացին Փիոնեայ վազսն քսան և երկուց կանգնոց չափ։ Եւ անդ էր տեսանել նոր զօրն Աքիլլես ընդ Սկամանդրոս գետ վազելով։ Յորմէ զարհուրեալ աւազակացն՝ զէնընկէց լինելով ի ձեռն եկին։

Յաղագս որոյ արբեալ ի մանկութեանն արութիւնս, առ այսոքիւք և ի թագաւորութեանն ոչ հնազանդէր խրատու վերակացութեան զօրացն Յունաց։ Վասն որոյ առաքէ հրեշտակս առ Շապուհ, զի տացէ ի դստերաց

1 Ա քարութեան, փխ. արութեան
2 bdefto ի փախստեանէն / միւսն. չիք ի
3 Ա ի պիսակս [c պիսի ան ակս] / y ի պիսաս
3 f դրանամարտիկն
4 Կ[2]abdefto յաղթեալ
4 c չիք յաղթելով, դարձեալ
4 bcdefto ի յարեգ / f յէլլադացւոց
4 Ա օր [c ուր] / Խվ'pqrs հասակի
5 Ա որում
5 ae ողոմպիա / f ողոմպիական / opq յոլոմպեայ / to օլիմպիա
5 Աօ ըմբշամարտկացն
6 cf եբեհլի և / opqrs չիք առ
6 abdef լանկուարտաց / c լաւկուարտաց
7 c արութիւն
7 lnopqrs քաջութեանն
8 Ա գհինգ / l է, փխ. հինգ
8 Ա նահատակսն / bf արձակեալ
9 abdefto էսպան / f դիպեալ
10 Sխ վիրաւոր, փխ. վերուստ
10 o թափեաց, փխ. հոսեաց
11 Խn իբր ի [g չիք ի] սաստիկ իմն ի մրրկէ / Աօ չիք իմն
11 pqrs վաղահասուկ
11 Ա ի թզենեաց / վ թզենից
12 Ա չիք թագաւորութեամբ
12 e ի յիսուն և ի հինգ / gk ի յիսուն և եօթն [g է]
13 Ա ամի / Ա մարտի պատահէ
13 opqrs պատահեցաւ
13 Կ[2]de չիք ոմանց ասորւոց
14 Ա փախստեայ / l փախստայս
15 y անկեալ, փխ. անցեալ
15 Sխ եփրատայ կամրջին [վk կարմջին]
16 c զեփրատաւ
17 Աnod զլակոնացին
17 abde փիոնեայ / c փիոնայ / f փինոնեայ / gk փեոնեայ / l փէոնեա
17 g քսան և երկու / y կանգնոյ չափն
18 Աgk չիք նոր
18 ade աքիլլէս / bcf աքեղղէս / gk աքիդես / lnrs աքիլես
19 Ա զարհուրեալ աւազականս ի ձեռն անկան զէնընկէց լինելով
19 p զէնընկեց
20 Աgk ի մանկութեան
20 abcfto յարութիւն / de արութիւն
20 opqrs չիք արութիւնս—ի թագաւորութեանն (տ. 21)
21 c ի թագաւորութենէն / o չիք խրատու
21 Ավno զօրավարացն, pqrs օրինաց, փխ. զօրացն
22 Ա տայցէ

իւրոց նմա կնութեան, և սա դարձուցէ առ նա զաշխարհս Հայոց։ Զոր զգացեալ զօրավարացն Յունաց, աղդ առնեն կայսեր։ Իսկ կայսրն Թէոդոս հրամայեաց զնա ունել, եթէ ոչ իւրովք կամօք երթիցէ ի կոչ ինքնակալին։ Վասն որոյ հարկեալ երթայ կամօք իւրովք, յուսացեալ ի սուտ հանել զԱւգոստոսն։ Իսկ կայսրն և ոչ տեսութեան արժանի արար, այլ երկաթի կապանօք ետ տանել զնա ի Թուղխ կղզի Ովկիանու. որ թագաւորեաց ամս չորս։

Բայց յերկրորդ ամի Վարազդատայ եկաց եպիսկոպոսապետ Հայոց Զաւէն, ի նոյն ազգականութենէ Աղբիանու, ամս չորս։

## ԽԱ.

### Թագաւորութիւն Արշակայ եւ Վաղարշակայ։

Ապա փոխանակ Վարազդատայ թագաւորեցոյց Հայոց Թէոդոս մեծ զերկուս որդիսն Պապայ, զԱրշակ և զՎաղարշակ, այսպիսի ինչ խորհեցեալ, որպէս թէ ոչ միաբանեսցին երկոքին յապստամբութիւն։ Եւ անդէն պահելով զմայր մանկանցն, արձակէ զնոսա հանդերձ վերակացուօք յինքնէ, արամբք հաւատարմօք և զօրու։ Որք եկեալ կալան զաշխարհս մեր և տիրեցին ամս արիաբար մարտիւք ընդ Պարսս։ Եւ առին իւրեանց կանայս, Արշակ՝ զդուստր Բաբկան Սիւնեաց նահապետի, և Վաղարշակ՝ զդուստր Սահակայ ասպետի, որ ի նմին ամի վախճանեցաւ։

Բայց յերկրորդ ամին Արշակայ եկաց յեպիսկոպոսապետութիւն Հայոց Ասպուրակէս, ազգական Շահակայ և Զաւենայ, ամս հինգ։

Իսկ մեծն Թէոդոս եկեալ ի պատերազմ՝ ի Միղուլանոն հիւանդացեալ մեռաւ, թողեալ զթագաւորութիւնն որդւոց իւրոց, Արկադեայ զԲիւզանդիայն և Ոնորեայ զՀռոմայն. որք ոչ գովելիք և արժանաւորք հայրենականացն գոյն առաքինութեանց։

1 y ի կնութեան
2 k առա, փխ. աղդ
2 c զգացուցանեն, փխ. աղդ առնեն
3 cf կամովք / abdef ի կոչն
4 Ա ասկս որոյ
4 Ա երթալ իւրովք կամօք [f կամովք]
4 f չիք յուսացեալ
5 abcdenopqrs ի սուտս / k չիք ի (սուտ)
5 a զօգոստոս / f յօգոստոսն
5 abcdtw այլ, փխ. իսկ
6 Ա երկաթեղէն / ՏԽ չիք զնա
6 Վ[a]pqrs ի Թուղաս / ԽԿ¹Կ²lcdefno ի Թուլաս [gl Թուղ'աս]
6 Վ[l]prs ուղկիանու
8 ac երկրորդ
9 Ա աղբիանոսի / de երեք, փխ. չորս
11 f վաղարշակայ որդւոցն պապայ ի Թէոդոսէ
13 abcdetw խորհեալ / f խորհելով / k խոհեցեալ
14 Ա չիք որպէս / lnors երկոքինն
16 a զօրուն / ՏԽ որ
16 ՏԽ եկին կալան զաշխարհս և
17 y արարար
18 o բաբկէնի
18 e նահապետին սիւնեաց
19 c սահակ
20 Ագkqrs յեպիսկոպոսութիւն
21 ՏԽ ասպուրակէս ամս հինգ, ազգական շահակայ [gk արշակայ] և զաւենայ / f ասպուրակէզ
22 ԱՎ[g] ի միղուղանոն / Վ[l]npqrs ի միւղուղանոն / y ի միւղուղանօն / k ի միւղուղանան / վ միադուլանոն։ Թերեւս ուղղելի ի միզուլանոն։ Հմմտ. Арм. Арш. II, 110:
23 Ա թողլով
23 abcef զթագաւորութիւնն իւր
24 abdef զբիւզանդիոն / c զբիւզանդոն
24 Ա արժանիք
25 ՏԽ արժանաւորք ժառանգութեան հայրենականացն [op հայրենեացն]

## ԽԲ

**Յաղագս բաժանելոյ Հայոց ընդ երկուս ի ձեռն երկուց թագաւորացն Արշակունեաց, ի ծառայութիւն երկուց ազգաց՝ Պարսից եւ Յունաց։**

Իմացեալ Շապհոյ, թէ թերուղիղ է Արկադ՝ խօսի ընդ նմա խաղաղութիւն. քանզի էր պարտեալ հարեալ ի հօրէ նորա ի մեծէն Թէոդոսէ։ Ցանձն առնու և Արկադ առնել զհաշտութիւն, առաւել յիւրոց զօրագլխացն. զի թէպէտ և յԱստուծոյ էր պարգեւեալ զյաղթութիւն յաւս կենաց երանելւոյն Թէոդոսի, սակայն զօրագլուխքն վաստակեալ՝ ձանձրացեալ լինէին յաշխատութենէ հանապազորդ պատերազմացն։ Վասն որոյ հաւանեալ՝ կամաւ յանձն առին բաժանել զՄիջագետս և զՀայոց աշխարհս կրկին սահմանադրութեամբ։ Վասն որոյ թողեալ Արշակայ զբուն թագաւորութիւն հարց իւրոց զԱյրարատ, և զամենայն մասն բաժնին Պարսից՝ գնաց տիրել արեւմտեայ կողմանց աշխարհիս մերոյ, որ ի մասն ի բաժնին Յունաց. ոչ միայն մօրն աղագաւ, որ էր ի կայսերական քաղաքին, այլ լաւ համարեալ նուազ կողմանն տիրել՝ և ծառայել քրիստոնեայ թագաւորի, քան յոլովից իշխել՝ և մտանել ընդ լծով հեթանոսաց։ Գնացին զհետ նորա հանդերձ կանամբք և որդւովք և նախարարութիւնք որ ի բաժնին Շապհոյ, թողլով զիւրաքանչիւր արարս և զգիւղս և զդաստակերտս։

Ընդ որ զչարեալ Շապհոյ, գրէ առ Արշակ, թէ «Ընդէ՞ր զրգռեցեր զպատերազմ ի մէջ իմ և կայսեր, տանելով զնախարարութիւնս իմոյ բաժնիս»։ Եւ պատասխանի լսէ յԱրշակայ, թէ «Վասն զի ոչ համբերէին ընդ Պարսիկ առաջնորդաւ վարել՝ եկին զհետ իմ. և արդ եթէ հաւատաս ցիս զմասինդ քո իշխանութիւն, որպէս և կայսր զիւրոյս՝ պատրաստ եմ ի պաշտել զքեզ՝ որպէս զկայսր. ապա թէ ոչ է հաճոյ քեզ այս,

2 ՏԽc ընդ երկու
2 ԽՎ nopqrs ի ձեռս / ef չիք երկուց
3 o յունաց և պարսից
4 Ա եթէ
4 Ա խօսէր ընդ նմա զխաղաղութիւն
5 Վm ի խաղաղութեան
5 abcf նիհարեալ / p չիք հարեալ
5 abdef ի հօրէն
5 ՏԽd չիք ի (մեծէն)
6 pqrs առնուլ, փխ. առնել
7 ՏԽ զօրագլխաց / c չիք զի
7 Ա էր յաստուծոյ պարգեւեալ զյաղթութիւնն [af զյաղթութիւն]
8 ՏԽc երանելոյն / de վաստակեալք
9 d էին, փխ. լինէին
11 y սահմանադրութիւն
12 Ա թագաւորական
12 Ա այրարատ [f արարատ]
13 o բաժնի / qrs բաժին
13 p պարսից բաժին / y աշխարհին
14 abx ի մասին
14 Աx ի բաժնի / pqrs ի բաժին / l ի մասնի բաժնին
15 Աx քաղաքին / միւսն. քաղաքէն
15 Ա թագաւորել, փխ. տիրել
16 ՏԽ թագաւորի, և ոչ յոլովից իշխել
17 Ա զկնի, փխ. զհետ
18 Ա ի բաժնի մասին / pqrs ի բաժին / ԽՎm ի բաժնի
19 abdef զգեօղս / c զգեաւղս / gl զեւղս
20 Ա ընդ որս
20 tw զչարացեալ / Ա յղէ, փխ. գրէ
21 pqrs ի մէջ իմ և ի մէջ կայսեր
21 Ա զնախարարութիւն
22 abdef բաժնին
22 Խ պատասխանիս / no պատասխանին
22 bc արշակայ / Ա եթէ
23 c վարել / Ա զկնի
24 Ա յիս զմասինդ քո զիշխանութիւն
24 a զիւրոցս
25 o չիք ի (պաշտել) / q կայսր
25 abcef եթէ / Ա այդ

*և իւրեանց կամաւ դարձցին առ քեզ նախարարքս՝ ոչ արգելումս»։ Զայս լուեալ Շապհոյ՝ թագաւորեցոյց Հայոց ի վերայ բաժնի իւրոյ զԽոսրով ոմն ի նմին ազգէն Արշակունեաց. և առ նախարարս իւրոյ մասինն, որ եկեալ էին զհետ Արշակայ՝ գրեաց հրովարտակ, որ ունէր զայս.—*

**Թուղթ Շապհոյ առ նախարարսն։**

*«Դիւցազանց քաջ, Շապուհ արքայից արքայ. նախարարաց Հայոց, որոց կալուած իշխանութեան յիմ բաժնին հաստան. ողջոյն շատ շնորհեմ ձեզ։*

*«Թէպէտ և ձեր ոչ ազատաբար արարեալ, թողէք զիւրաքանչիւր իշխանութիւնս, և մեզ ոչ ինչ նուազ էր ի ձէնջ, սակայն ըստ տիրաբար խնամոց զթացաք ի ձեզ և յաշխարհդ ձեր. զմտաւ ածեալ, եթէ ոչ կարեն հօտք առանց հովուաց լինել, և հովիւք առանց բարիոք վերակացուի, վասն որոյ թագաւորեցուցաք ձեզ զԽոսրով ոմն ի զենէ ձերմէ, և յազգէ բնիկ ձերոյ տէրութեանդ։ Արդ՝ դարձեալ ձեր յիւրաքանչիւր արարս իշխեցէք, որպէս և ցայժմ։ Երդուեալ ի հուր և ի ջուր և ի փառս անմահից իմոց նախնեաց, զի առանց նենգութեան և պատրանաց արարաք զայդ, և անշրջելի պահեմք։ Իսկ այնք որք ոչ լուիցեն հրամանաց մերոց՝ զտունս նոցա հանդերձ գիւղօք և դաստակերտօք հրամայեցաք ունել յարքունիս։ Ողջ լերուք»։*

## ԽԳ.

**Յաղագս փոփոխման նախարարացն Հայոց յիւրաքանչիւր ժառանգութեանց ի պաշտօն երկաքանչիւր թագաւորացն։**

*Իբրև լուան նախարարքն Հայոց, այնք որք ունէին զիշխանութիւն ի գաւառս բաժնին Պարսից, թէ կացոյց Շապուհ՝ թագաւոր հաւատացեալ Արշակունի, և զմուրհակ ուխտին տեսին՝ թողեալ զԱրշակ դարձան*

1 ՏԽ չիք առ քեզ
1 pqrsy նախարարքն
2 n իւր / abcd իւրոյ բաժնին
3 o յազգէ / bcdefo ազգէ
3 g մասին / c բաժնին, փխ. մասինն
4 op ունէր օրինակ զայս
5 p շապհու
5 gk առ նախարարսն / fo առ նախարարս(ն) հայոց
7 d որոց ի կալուածս իշխանութեանս
7 Ա. բաժինս / pqrs բաժինն
7 Ա. հաստածս
9 d ձեզ / k ձիր, փխ. ձեր
9 def թողիք
10 Ա. իշխանութիւն
10 gk ի մէնջ / Ա. չիք ի ձէնջ
11 Ա. յաշխարհս
12 y առ հովուի / Ay բարւոք
12 k վերակացութիւն
14 o ձերոյ բնիկ
15 o մինչ, փխ. որպէս
15 Ag այժմ
16 Ա. նախնեացն / ors նենգութեանց
17 Ա. որ / Ա. մերոց հրամանաց
18 Ա. գեօղիւք [f գեղիւք] / gq գեւղօք / rs գեղօք / p գեօղօք
18 p չիք և դաստակերտօք
18 Ա. յարքունիս ունել հրամայեցաք
21 ՏԽ փոխման
22 Ա. չիք ի պաշտօն—թագաւորացն
22 tw երկոցունց, փխ. երկաքանչիւր
22 gk թագաւորութեանց
23 rs որև, փխ. իբրև / k լուաւ
23 Ա. նախարարք / de որ
23 f իշխանութիւն
24 Ա. եթէ

ի բնակութիւնս իւրեանց, բայց յերից պատանեաց մնացակցաց արքայի և ի մօտաւոր մերձաւորաց — Դարա, որդի Բարկայ տեառն Սիւնեաց, որ աներ էր Արշակայ, և Գազաւոն, որդի Սպանդարատայ, տեառն Շիրակայ և Արշարունեաց, և Պերոզ յազգէն Գարդմանացւոց. և ի նոսին յարեցեալք՝ Ատատ յազգէն Գնունեաց, Կենան յազգէն Ամատունեաց, Սուրայ յազգէն Մոկաց, Բրստոմ Առաւենեան, և այլք անյայտք ոմանք: Վասն որոյ զմատնդութիւնս նոցա կալաւ Խոսրով յարքունիս հրամանաւ Շապհոյ, և ոչ եթող զկալուածս որդւոյ ի հայր, և ոչ զեղբօր յեղբայր:

Բայց էին ոմանք և ի նախարարացն, որք ունէին զիշխանութիւնս իւրեանց ի բաժնին Յունաց առ Արշակայ, որպէս Սահակ ասպետ, որ էր լեալ աներ Վաղարշակայ, եղբօր Արշակայ, և խնդրեցին գալ առ Խոսրով. ընդ որում խեթիւ հայէր Արշակ, համապազ հրապուրեալ ի կնոջէն իւրմէ, որպէս թէ զարդ արքունական ունել նմա՝ ի փեսայէն իւրմէ մնացեալ: Այս յայնժամ եղև քսութիւն սուտ զնմանէ յազգականաց իւրոց ի Սպեր գաւառէ. վասն որոյ չարչարեաց զնա Արշակ արքայ: Եւ յայնմանէ խնդրէր Սահակ փախչել յԱրշակայ և անկանել առ Խոսրով. և խորհրդակից նմին իւր գործակցեալ լինէին Սուրէն Խոռխոռունի և Վահան Առաւեղեան, և Աշխադար յազգէն Դիմաքսենից: Բայց ի գնալն նորա ոչ ժամանեցին նոքա, խափանեալ ի զօրացն Արշակայ. Թաքուցեալ զօղեցին ընդ կեղծաւորութեանն առագաստի, սպասեալ զդիպող աւուր:

---

1 Կ[3]abdeno բաց յերից
1 Ա պատանեացն
1 Կ[1] արընդակցաց, Վ սանդակցաց, փխ. մնդակցաց
2 bc դարայ / Աpqrs որ էր աներ
3 abdef գազաւոնն
4 tw արշարունեաց / Կ[3]cde արշակունեաց / միւսն. աշարունեաց
4 opqrs գարդամանացւոց
4 gk յարուցեալք
5 c արտակ, փխ. ատատ
5 b գնունեաց, սուրայ յազգէն մոկաց, ոստոմ առաւենեան և կենառ յազգէն ամատունեաց, այլ
5 abce սուրա
6 Ա առաւաստաս [Կ[3] առաւաստոս], փխ. որստոմ
6 Ա այլ անյայտ ոմանք
6 c վասն որոյ առնու զմատնդութիւնս նոցա խոսրով
8 y կալուածս / Ա առ հայր
8 Sեef եղբօր յեղբայր / b եղբայր
9 k իշխանութիւնս
10 Ա առ արշակայ [f արշակ] և խնդրեցին գալ առ խոսրով. որպէս սահակ ասպետ, որ էր լեալ [dc չիք լեալ] աներ վաղարշակայ՝ եղբօր արշակայ. ընդ որում
11 o չիք էր
12 hg խեթիւ / o խիթի / միւսն. խեթի
13 k չիք թէ
13 ak զխարդ, փխ. զարդ
14 Ա սոացեալ, փխ. մնացեալ
14 b այնժամ / Ա զնմանէ սուտ
15 ç գաւառին
16 abdeftw չիք և յայնմանէ — յարշակայ
16 c փախչել սահակ
16 n անկանիլ / abdeftw անկեալ
17 abdefl խորհրդակիցն / k սուրէն
17 c խորխոռունի / f խորխորունի
18 Խopqrs աշդահար [k աշտահար] / Կ[3]tw աշխարադայ ոմն / abde աշխադարայ ոմն / cf աշխարադար ոմն
18 Կ[3]etw դիմակսենից
20 f ընդ կեղծաւորութեան
20 Ա առագաստաւ [c առագաստով]
20 Ա սպասելով / rs սպասել
20 h ի դիպող

## ԽԴ

### Երկ. ո՛րպէս մեծարեաց Խոսրով զՍահակ ասպետ. և նահատակութիւնք նորին ի յելուզակս ազգին Վանանդացւոց:

Բայց Խոսրով մեծապէս ուրախ եղև ընդ գալն Սահակայ ասպետի, և սպարապետ գնա ի վերայ զօրաց իւրոց կարգեաց. և գործոյց ի նա զկալուածս հայրենիս, և այլ աւանս հանդերձ ագարակօք պարգևեաց նմա յայնոցիկ ժառանգութենէ, որք ի բաժնոյն Պարսից առ Արշակայ մնացին:

Զայսու աւուրբք ոմանք յազգէն Վանանդացւոց ապստամբեցին ի Խոսրովայ. և ոչ յոք ապաւինեցան, այլ ամրացան ի մայրիս լերանց իւրեանց և յանձուկս Տայոց բարանց. յելուզակարար արշաւանօք յիշխանութիւն երկոցունց թագաւորացն Հայոց խռովէին զաշխարհս և անհանգիստ պահէին: Յորոց վերայ չոգաւ սպարապետն Խոսրովայ Սահակ ասպետ, և զբազումս ի նոցանէ սատակեաց, և զբազումս փախստական արար ի կողմանս Չորրորդ Հայոց: Զի ոչ յերկիրն Խաղտեաց անկան, ի Յոյնս ապաւինելով, և ոչ առ թագաւորն Արշակ անցին. այլ զաւազակս ոմանս, որ ի կողմանս Չորրորդ Հայոց էին, ի սահմանս Ասորւոց, դիմեցին ապաստան առնել: Քանզի Վանանդացիք զաւազակութեան գործ մեծ ցանկութեամբ գործէին, և որպէս ուղիղ իրք ախորժելի թուէին նոցա: Զորոց ձիգ զհետ մտեալ Սահակայ՝ վարէ յերկար մինչև ի սահմանս Մանանաղւոյ:

---

3 Ա ի [f չիք ի] յելուզակ [d յելուզակաց, f յելուզակէից] / o ի յելուզակս
3 f չիք ազգին
3 Ա վանանդայ / g վանանդակս / k վանանդացոյ
4 Ա իսկ, փխ. բայց
4 apqrs ընդ գնալն
5 c չիք գնա
5 a սպարապետ ի վերայ զօրաց իւրոց գնա կարգեաց
5 abcef չիք և (գործոյց)
5 Ա գործոյց գնա ի կալուածս
7 a այնոցիկ
7 ՏԹ ի ժառանգութենէ, որք [o որք ի ժառանգութենէ] ի բաժնոյն
7 abdef որք ի բաժնոյն պարսից որ առ արշակայ
9 bdef զայս / վ զայսու ժամանակու աւուրբք
9 ՏԹ ի յազգէն
9 Ա վանանդացեաց / k վանադացւոց
10 b ոչ ոք / lnpqrs յոչ ոք
10 ՏԹ միայն, փխ. ամրացան
10 Ա իւրեանց լերանցն
11 ՏԹ յանձուկս
11 f բարանցն
11 Ա յելուզակաբար / o էլուզակարար / վp յելուզաբար / qrs յեղուզաբար
11 a իշխանութիւն
12 cgk չիք և
13 Ա յորոց ի վերայ / y յորոյ
14 o չիք ի նոցանէ—զբազումս
14 Ա փախստեայ
16 Ա այլ իբր [f իբրև] զաւազակս
17 k չիք չորրորդ—ի սահմանս
18 o ապաստակ, փխ. ապաստան: Թերևս յաւագոյն (ըստ Ա-ի). "այլ իբր զաւազակս ոմանս, որ ի կողմանս չորրորդ հայոց էին՝ ի սահմանս ասորւոց դիմեցին, ապաստան առնել": Աո. Մ.
18 a վանանդեցիք / gk վանանդակացիք
19 Ա չիք և
20 Ա թուէր / gk թուի / Վlmoqrs թուին / p թուեցին
20 elw զորոյ
21 o երկար
21 bcefkl մինչ ի / a չիք մինչև

## ԽԵ

### Յաղագս գալոյն առ Խոսրով Սուրենայ, Վահանայ եւ Աշխադարայ հանդերձ գանձիւք Արշակայ։

Սուրենայ Խորխոռունւոյ և Վահանայ Առաւեղենի և Աշխադարայ Դիմաքսենի գտեալ ժամ պատեհ, զի էր հանեալ զգանձսն Արշակայ յամրոցէն Հանւոյ՝ տանել յաշխարհն Ծոփաց, զոր յափշտակեալ, և կամեցեալ անցանել առ Խոսրով՝ ոչ ժամանեցին։ Քանզի անապարեալ Սամուէլի Մամիկոնենի մահուն Արշակայ, յոլովաձեռն գնդաւ զհետ մտեալ՝ փախստեայս արկանէ յամուր այրս ի գաւառին Մանանաղւոյ. յոր մուտ ոչ գտանէր, բայց ի կողմանէ գոյգն ելք էին առ ի թուալ, և առաջի դրաց այրին սեպ էր ուղղորդ միապաղաղ. և ի վերուստ պարանձաւ քուսար, որ հայի յանդունդս խորաձորոյն. և որ ինչ գերծանի՝ յանհնարին ուղխս սաստկութեան անկանի, անդադար հոլովմամբ գլորեալ, ոչ ուրեք լինել ամնկոփ։ Վասն որոյ տարակուսեալ Սամուէլ վարանէր առ անհնարութեան տեղեացն։ Եւ ապա արարեալ Արշակայ՝ հրամայեաց արկղ գործել երկաթակապ, և քաջ արանց ի ներքս մտանել, և այնպէս շղթայատող կարիւք ի վերուստ ի վայր իջուցանել ի դուրս այրին։ Սակայն և ոչ այն ինչ յօգնեաց. քանզի յոյժ ի բացեայ պահէր ցիրգն։

Եւ մինչ դեռ նոքա յայնմ էին՝ լինէր իմն ըստ դիպուածոյ բախտի հասանել անդր ասպետին Սահակայ բազմագակ գնդաւն Խոսրովայ, որով հետամուտ յեղուզակացն էր։ Թողեալ զնոսա՝ դիմէ ի վերայ այնոցիկ

2 Տխ հանդերձ գանձիւքն արշակայ գան առ խոսրով սուրէն, վահան և աշխադար, փխ. յաղագս—արշակայ
2 Ա աշխարադայ։ Ուղղ. աշխադարայ։ Տե՛ս ցանկը։
3 f չիք հանդերձ
4 օ սուէն, փխ. սուրենայ
4 a խոխառխոռունոյ / b խոռխոռնեւոյ / eks խորխոռունւոյ / l խորխոռունոյ / f խորխորունւոյ / օ խորխոռունի
4 a վահայ / օ վահան
4 Տխb առաւեղինի
4 abdef աշխարադայ / c աշխարադա
5 a դիմաքենի / k դիմաքսեն / tw դիմակսենի
5 Ա զգանձն / y գանձն
6 abce յանոյ / dftw յանւոյ / Խopqrs հանւոյ / n հանուոց. շինած յանւոյ
8 a սամուէլ / կ²def սամուէլի / Տխ սամելի [n սամուելի, օ ումենի]
8 Աօ մամիկոնէի / k մահր
9 Ա հասեալ, փխ. մտեալ
9 gl փախստայս
9 p յամուրս արկանէր այրս ; Ա արկանէր յայրս ինչ ամուր, որ [c չիք որ] ի գաւառին
10 de բաց ի կողմանէ
11 c չիք դրաց
12 կ² պաղ, անձաւ
12 rs չիք որ / x հայէր
12 Ա խորաձորոցն
12 Ա գերծանիցի յահագին ուխս սաստկութեան
13 Ա գլեալ, ոչ ուրեք գտանել ամնկոփ [b ամնխոփ] / վ ամնկոփ
14 Տխ սամէլ [n սամուէլ]
15 Տխ առ անհնարաւորութիւն
16 de հրամայեալ / Ա երկաթապատ
16 c քաջանց, փխ. քաջ արանց
17 ko շղթատող / վ շղթայատեղ
17 Ա իջուցանել վերուստ [c ի վերուստ] ի վայր
18 a այն ոչ
18 Տխ ի զատ, փխ. ի բացեայ
19 Խվ²noq ցիրգն, վprs ցիրքն, փխ. ցիրգն
20 a յայն էին / d բատ դիպուածոյ
21 Ա սահակայ ասպետի
22 k հետամուտ
22 Ա յելուզակացն / օ ելուզակացն / glnprs եղուզակացն

որք ընդ այրին մարտնչէին, և հալածական արարեալ հանէ զՄուրէն, և զՎահան և զԱշխադար հանդերձ գանձիւքն, փոյթ ընդ փոյթ հասուցանէ առ Խոսրով։ Իսկ Խոսրովայ առեալ՝ ի գանձուցն հանէ և մասն Շապհոյ. և հրամանաւ նորա տայ նոցա գիւղս և դաստակերտս ընտիրս և յարմարս յայնոցիկ ժառանգութենէ, որք ի բաժնոյն Պարսից մնացին առ Արշակայ։ Եւ այս եղև սկիզբն պատերազմին Արշակայ և Խոսրովայ։

## ԽԶ

### Պատերազմաւ պարտեալ Արշակ ի Խոսրովայ՝ վախճանի հիւանդութեամբ։

Թէպէտ և ոչ եղեն ձեռնտու Շապուհ և Արկադ Խոսրովայ և Արշակայ, լինել զօրավիգն օգնականութեամն առ ի տալ ընդ միմեանս պատերազմ, սակայն և ոչ արգելին զնոսա։ Եւ սպառեալ պատգամաւորութեամնն, ժողովեալ Արշակայ զզօրս իւր՝ խաղայ ի վերայ Խոսրովայ։ Գնաց և Խոսրով ի բանակէն իւրմէ առ ծովուն Գեղամայ, զոր Մօրուն կոչեն, ընդ առաջ Արշակայ, զի մի ի սահմանս իւր իջցէ. և ոչ այնչափ տակեաց աճապարել՝ մինչև եգիտ զԱրշակ իջեալ յիւր սահմանս, ի գաւառին Վանանդայ։ Եւ պատահեն միմեանց ի դաշտին որ կոչի Երևել. և տան պատերազմ ընդ միմեանս սաստիկ յոյժ։ Հարկանի զօրն Արշակայ, մեռանի և սպարապետն նորա Դարա Սիւնի ի պատերազմին, և փախստական լինի Արշակ սակաւուք։ Եւ զհետ նորա մտեալ քաջին Սահակայ ասպետի, սպարապետին Խոսրովայ՝ վարէր սաստկապէս։ Ուրանոր ահագին նահատակութիւնս ցուցեալ Գազաւոնի, որդւոյ Սպանդարատայ, բազում անգամ դարձեալ յարձակմամբ՝ ցրուէր զհետամուտսն, և տայր պարապ ժամ գնալոյ Արշակայ։

1 Ա չիք և (զվահան)
2 abeftw զաշխարադայն / c զաշխարայադայն / d զաշխադարայն
2 Աgk գանձիւք
2 Ա հասանէ առ արքայ իսկ
3 ՏԽ խոսրով առեալ
3 gk չիք ի (գանձուցն)
3 Ա ի գանձուցն մասն [c մասն ինչ] հանէ շապհոյ [b ի շապհոյ] և հրամայեալ տալ նոցա [detw չիք նոցա] գեօղս [c գիւղս]
4 opqrs չիք նոցա / Խ ընտիր
4 Կ²tw յամուրս, de ամուրս, փխ. յարմարս
5 k այնոցիկ / Ա ի ժառանգութենէ
5 pqrs առ արշակ
6 Ա պատերազմի
6 k և արշակայ խոսրովայ
8 Ա պատերազմաւ արշակ պարտեալ ի խոսրովայ հիւանդացեալ մեռանի
7 pqrs արշակայ
9 r ձեռնտուու / tw ձեռնտուք
9 de լինիլ / a լինին
10 ՏԽ զօրավիգ / Վopqrs առ միմեանս
11 n ի սպառ / Վ³koprs սպառել
11 fg պատգամաւորութեան
12 abceftw և ժողովեալ
12 d զամենայն զօրս
12 opqrs և խաղայ [r խաղաց]
13 Ա գնայ / Ա առ եզր ծովուն
13 k գեղմայ / ՏԽ մուրան / c մաւրան
14 a չիք զի
14 Ա և ոչ ինչ այնչափ աճապարեաց ապստակել [Կ²cdeftw ստակել] մինչև / Վ աճապարեաց
15 ՏԽ սահմանն
16 a պատեն, փխ. պատահեն
16 Ա զոր կոչեն և տան ընդ միմեանս պատերազմ
19 c չիք սակաւուք—սահակայ (ս. 20)
19 Կ²abdeftw զհետ մտեալ նորա
20 Կ²deopqrstw ասպետին խոսրովայ
20 c վարէ
20 ԽՎmn որ այն օր, փխ. ուրանօր
21 Կ²b գազաւոնի / k գազաւորի
22 ՏԽ ցրուէ

Եւ դարձաւ Խոսրով ի տեղի իւր, և գնաց Արշակ յԵկեղեաց. և հիմնդացեալ անդ մաշարայական ախտիւք՝ ջերանի հիւծմամբ և մեռանի, թագաւորեալ ամենայն Հայոց ամս հինգ, և կիսոյն Հայոց ամս երկուս և կէս։ Եւ այնուհետև ոչ ևս կացուցին Յոյնք ի բաժնի իւրեանց թագաւոր, այլ առաջնորդէր նախարարաց կողմանցն այնոցիկ քաջն Գազաւոն. և աշխարհին իւրեանց մասինն կացուցին Յոյնք կոմէսս իշխանս։

ԽԸ

**Յաղագս երանելւոյն Մեսրոպայ:**

Տեսեալ թէ ի վերջ հասեալ է թագաւորութիւնն Հայոց, և զխռովութիւնն նիւթ իւրոյ համբերութեանն գտեալ Մեսրոպայ, որ էր ի Հացեկաց Տարօնոյ, սնեալ և ուսեալ առ մեծին Ներսիսի, և յետ ելից նորա յաշխարհէ՝ ի դրանն արքունի կարգեալ քարտուղար. սա սիրեաց զմիայնակեցութեան վարս. որպէս ասաց ոմն, թէ ի նաւահանգիստ փութայ նաւ խռովեալ, և անձն ժուժկալ խնդրէ զանապատ. նոյնպէս և նորա փախուցեալ յաշխարհական զբաղմանց, և ընկեցեալ յետս զմարմնական պատիւն՝ զհետ ընթանայր երկնաւորին։ Եւ երթեալ ի գաւառն Գողթան բնակէ, զմիայնակեցութեան վարս առեալ։ Եւ որ ի նմա զօղեալ ազանդն հեթանոսական, թագուցեալ յաւուրցն Տրդատայ մինչև ցայն ժամանակս, և ապա յայտնեցաւ ի վատթարել թագաւորութեանն Արշակունեաց, զայն երարձ օգնականութեամբ իշխանի գաւառին, որում անուն էր Շաբիթ։ Ուր նշանք աստուածայինք լինէին, որպէս

1 y յեկեղե՛ց / o յեկեղեայց / միւսն. յեկեղեց / tw յեկեղէց
2 Ա հիւանդանայ
2 Ա չիք անդ
2 c մաշարական / ԽՎ³nopqrs մաշարայական
2 d ջերմանի, y ջերմային, փխ. ջերանի
2 ՏԽabdefstw չիք և մեռանի
3 ՏԽ թագաւորէ
3 ԱԿ¹ կիսոյն / c չիք Հայոց
4 Ա չիք ևս / pqrs չիք յոյնք
4 o ի բաժինն
5 dctw առաջնորդ
5 bf նախարարացն
5 ՏԽ նախարարացն այնր [y այնմ] կողման քաջն
5 c քաջ
6 bd գազաւոնն
6 c կոմսէր, del կոմէոս, p կամէոս, r կողմէոս, փխ. կոմէսս
9 ՏԽc երանելոյն / e Մեսրոպայ
10 ors չիք ի (վերջ)
10 abctw ի վերջ է հասեալ / ef չիք է
10 fgpr թագաւորութիւն
10 efg զխռովութիւն
11 g համբերութեան
11 bdef Մեսրովբայ
11 a չիք որ էր
11 opqrs չիք ի (Հացեկաց)
12 d Հացիկ
12 bdef Ներսէսի / c Ներսեսի
13 Ա յաշխարհէս / ՏԽ ի դրան
13 qrs քարտողար
14 Տ զմիակեցութեան
14 ՏԽ զվարս / ՏԽ չիք թէ
16 g յետս ընկեցեալ
17 p մարմնական
17 c և զհետ ընթանայր
17 gk երթալ
18 Ա գողթան, զմիայնակեցութեան վարս առացեալ բնակէ
19 ՏԽ յաւուրսն [no յաւուրցն]
20 Ա յայն / y յապա
20 gp թագաւորութեան
21 f շապիտ / Կ¹Կ²acdtw շամբիթ

առ սրբոյն Գրիգորիւ. հալածական լեալ դէք մարմնաւոր տեսլեամբ անկանէին ի կողմանս Մարաց։ Եւ ոչ ինչ պակաս յայնցանէ արարեալ գտանի և ի Սիւնեաց աշխարհին, օգնականութեամբ Նորին իշխանին որ կոչէր Վաղինակ։

Եւ ի վարդապետել երանելւոյն Մեսրոպայ՝ ոչ փոքր կրէր վտանգս, քանզի ինքն էր ընթերցող և թարգմանիչ. և եթէ այլ ոք ընթեռնոյր, ուր նա ոչ հանդիպէր՝ զանխուլ ի ժողովրդոցն լինէր, յաղագս ոչ լինելոյ թարգմանիչ։ Վասն որոյ եդ ի մտի հնարել գտանել նշանագիրս Հայոց լեզուիս. և արկեալ զանձն ի ջանս՝ պէս պէս փորձիւք տաժանէր։

ԽԸ

**Գրած առ Խոսրով նախարարացն, որք էին առ Արշակայ։**

Տեսեալ նախարարացն Հայոց, եթէ ոչ կացուցին Յոյնք ի վերայ նոցա թագաւոր, և դժուարին վարկուցեալ զանառաջնորդն լինել՝ խորհեցան կամաւ հնազանդել թագաւորին Խոսրովու։ Նմին իրի գրեն առ նա թուղթ օրինակ զայս.—

**Թուղթ նախարարացն առ Խոսրով։**

«Ստրատելատ Գաղաւոն և ամենայն նախարարք Հայոց մասինն Յունաց. տեառն մերում Խոսրովայ արքայի կողմանն Այրարատոյ խնդալ։

«Ինքնին, տէր, գիտես զմիամտութիւն մեր առ յիշեցեալ թագաւորին մերում Արշակայ, զոր մինչև ցօր վախճանի նորա անշրջելի

1 gln դեքն
1 Ա մարմնաւոր տեսլեամբ դեքն անկանէին
2 r արկանէին, փխ. անկանէին
2 ՏԽ յայնցանէ պակաս
3 c չիք և
3 Վam չիք ի (սիւնեաց)
3 d յաշխարհին
3 abdetw ձեռնտուութեամբ, փխ. օգնականութեամբ / fopqrs չիք օգնականութեամբ
3 c Նոցին / abdefopqrstw չիք Նորին / opqrs չիք իշխանին
3 Ա իշխանին որում անունն էր Վաղինակ
5 y չիք և ի վարդապետել
5 ՏԽbc երանելոյն
5 bdef Մեսրովբայ
6 de չիք և (եթէ) / o թէ
6 Ա այլ ոք հանդիպէր [f ոչ հանդիպէր] որ ընթեռնոյր, ուր նա ոչ լինէր, զանխուլ
8 Ա հնարս, փխ. հնարել
9 abdef ի ջան
9 Ա հնարիւք, փխ. փորձիւք
9 c տաժանեալ / Կ²detw տաժանիւք
11 Խnpqrs չիք նախարարացն
11 Ա որ
11 a առ արշակայնց / cfglor առ արշակ
13 Ա դժուար
13 c զառաջնորդն / de լինիլ
14 abdeftw կամաւոր
14 Ա հնազանդ լինել [de լինիլ]
14 f խոսրովայ / abceftw ամին իրի
16 Ա չիք Թուղթ նախարարացն առ խոսրով
17 ՏԽb ստրատելատն
17 Աgky մասին
18 Ա մերոյ / ԱԽnopqrs կողման
18 fgpqrs արարատոյ
19 ՏԽ զմտերմութիւն, փխ. զմիամտութիւն
19 ՏԽ առ (o չիք առ) յիշել
20 Ա մերոյ / c չիք զոր
20 ՏԽ վախճանին / ՏԽabc չիք նորա
20 ՏԽ անշիջելի [goy անշրջելի] / a չիք անշրջելի

պահեցաք. և արդ խորհեալ եմք նոյնպէս ծառայել քեզ միամտութեամբ, եթէ հաստատեսցես առ մեզ դաշամբք գերխոս զայս. առաջին՝ չյիշել զյանցանս մեր, զոր պատերազմեցաք ընդ քեզ ի հարկէ և ոչ ի կամաց։ Երկրորդ՝ զի դարձուսցես ի մեզ զամենայն ժառանգութիւնս մեր որ ի մասինդ Պարսից, զոր հատէք յարքունիս։ Երրորդ՝ հնարել թափել զմեզ ի կայսերէ, զի մի վրդովեսցեն զընտանութիւնս մեր, որք ունիմք իշխանութիւն յայսմ բաժնի։ Եւ զայս պայման ուխտի գրեալ և խաչ հաստատեալ կնքեսցես. զորս տեսեալ՝ փութասցուք ի ծառայութիւն ձեր։ Ողջ լեր, տէր մեր»։

Գրէ և Խոսրով պատասխանի։

**Թուղթ Խոսրովու առ նախարարսն։**

«Քաջ արանց Խոսրով Հայոց արքայ. սպարապետիդ Գազաւոնի և ամենայն նախարարացդ մերոց ողջոյն շատ։

«Ուրախ լերուք, զի և մեք ողջ եմք, և ուրախացաք ընդ լուր ողջունի ձերոյ. և առաքեցաք ըստ խնդրոյ ձերոյ զայս պայման ուխտի։ Առաջին՝ չյիշել զյանցանս ձեր, զոր չունէաք առ յանցանս իսկ, այլ առ երախտաւորս՝ զմիամտելն առ թագաւորին Արշակունւոյ զոր պաշտէիքն. զի և առ մեզ զնոյն յուսամք լինել։ Երկրորդ՝ դարձուցանել ի ձեզ զժառանգութիւնս ձեր, զոր ունիմք յարքունիս. բայց յայնմանէ, զոր ումեք ումեք պարգևեցաք, զի ոչ շրջին պարգևք թագաւորաց առանց

1 c ծառայ / c չիք քեզ
2 c գերխս / ՏԽ զայսոսիկ
3 ab զյանցանան / c զյանցանքն / def զանցանան
3 Ա չիք մեր
4 abcdetw առ մեզ, փխ. ի մեզ
4 Խnpqrs ժառանգութիւն / o զժառանգութիւնս
5 Ա ի մասին
5 def հատիք
5 Ա հանել, փխ. հնարել
6 y վրդովեսցէ
7 acdeftw զիշխանութիւն / b զընտանութիւն, փխ. իշխանութիւն
7 c ի յայս բաժնի
7 ՏԽ գրել [n գրեալ]
8 Կ²bcefotw հարատեալ / ՎԽmpq հաստատել
8 Կ²bcdefktw զոր
9 a ողջ եր / o ողջ լերուք
10 f առ նախարարսն թուղթ խոսրովու. գրէ և խոսրով պատասխանի
10 ՏԽ չիք գրէ և խոսրով պատասխանի / ab նախարարսն [b առ նախարարսն յուս. կարմիր թանաքով] գրէ և / cdetw չիք թուղթ խոսրովու առ նախարարսն
12 ՏԽc սպարապետի [l սպարապետի]

13 ՏԽ նախարարաց
13 b հայոց, փխ. մերոց / Կ³acdef չիք մերոց
13 Ա ողջոյն [f ողջ] շատ. ուրախ լերուք / ՏԽ ողջոյն։ Շատ ուրախ լերուք
14 ԱԽnopqrs չիք և (մեք)
14 Ա զի մեք ողջ եմք, զի և մեք ուրախացաք
14 rs չիք ընդ լուր—առաքեցաք (տ. 15)
15 c առար, փխ. առաքեցաք
15 o չիք ըստ խնդրոյ ձերոյ
15 abcdetw ըստ խնդրոյդ / pqrs ի խնդրոյ
15 Աk ձեր
16 c զանցանս / f զանցանան / y անցանս
16 k զի, փխ զոր / c չունէիք
16 f առ անցանս
16 ՏԽ չիք առ (երախտաւորս)
17 c զի մտամտելն, փխ. զմիամտելն
18 abdef զոր, փխ. զի
18 c չիք զի և առ մեզ
18 e լինիլ / pqrs չիք ի (ձեզ)
19 Ա զժառանգութիւն
19 gk ունիք / abdeno բաց
19 Տl բայց ի յայնմանէ
20 p զոր ումեք պարգևեցաք
20 ՏԽ և, փխ. զի / a թագաւորի

վնասու, մանաւանդ զի ի դիւան հօրն մերոյ տեառն Շապհոյ արքայից արքայի եմուտ. այլ փոխանակ ընդ այնր յարքունուստ լնումք և զձերոյն պակասութիւն։ Երրորդ՝ թափեմք զձեզ ի գործակալացն Յունաց, թէպէտ պատերազմաւ ընդ կայսեր, թէպէտ խաղաղութեամբ։

«Եւ զքեզ, Գազաւոն, արիւն իմ և հարազատութիւն, ոչ ըստ վաղնջուց ազգականութեանն, այլ ըստ արդեանս, որ ի մօրէ քումմէ Արշամուշայ Արշակունւոյ, հանեալ զքեզ ի հայրենեաց քոց Կամսարականաց, և ի մայրենիս քո յիմս առեալ ազգ՝ Արշակունի անուամբ պատուեցից»։

Զայս տեսեալ Գազաւոնի՝ ընդ հուպ դարձուցանէ զրնաւ նախարարսն առ արքայն Խոսրով, և բարեբաստիկ եղեալ քաջափառութեամբ, հանդիպի ամենայն խնդրոցն և խոստմանցն։ Բայց Սամուելի Մամիկոնենի յինքն ըմբռնեալ զթուղթն Խոսրովաւ և զպատճէն թղթոյն նախարարացն՝ զատուցեալ ի նոցանէ գնաց առ կայսրն Արկադ։ Քանզի էր սպանեալ նորա զհայր իւր Վարդան յաղագս ուրացութեանն, և զմայր իւր Տաճատուրհի, և երկնչելով ի Պարսից և ի քեռեաց իւրոց Արծրունեաց՝ ոչ իշխէր դառնալ ի Յունաց։ Իսկ Արկադայ բարւի արարեալ նմա, հրամայէ զհաւասար թղթոցն հելլէն գրով ի դիւանի իւրում դնել, զի պահեսցին յիշատակք ազգաց ապստամբողաց. որ կայ մինչև ցայսօր։

## ԽԹ

### Միաբանել Հայոց Խոսրովայ, եւ ունել զաթոռ եպիսկոպոսապետութեանն մեծին Սահակայ։

Իբրև տիրեաց Խոսրով ամենայն նախարարացն Հայոց, որում ցանկայրն՝ յղէ առ Արկադ և խնդրէ ի նմանէ հաւատալ յինքն զմասն

1 k չիք ի (դիւան) / pqrs մերում
2 ՏԹ և յարքունուստ [p արքունուստ]
2 a դձերոյն
3 Տl պակասութիւնն
3 abdef երիր, փխ. երրորդ
5 q վասն, փխ. ըստ
6 Աgkp ազգականութեան
7 Թnopqrs հանել
8 bdefp իմս
11 ՏԹ չիք արքայն / Ա բարեբախտիկ
11 d քաջախառնութեամբ
12 Ա խնդրոյն / a խոստմանն
12 Ա սամուէլի / ՏԹ սամելի
12 Ա մամիկոնէի / o մամիկոնոյ
13 p պատճեն / qrs պատճէն
13 ՏԹ թղթոցն / tw թղթոյն / միւսն. թղթին
14 Ա ի նախարարացն, փխ. ի նոցանէ
14 c արկադէոս
15 Ա զհայրն / n զվարդան
15 f վասն, փխ. յաղագս
15 fpqrs զտաճատուհի / lo զտաճատուհրի / կ ²bcdefgkn տաճատուհի / միւսն. տաճատուրհի
16 ՏԹ չիք և (երկնչելով)
16 c ի քեռոց
17 Ա ոչ ի յունաց իշխէր դառնալ / Թ չիք ոչ իշխէր դառնալ ի յունաց
17 Ա իսկ արկադ նմա բարիս արարեալ
18 c զհաւաստակ / cef թղթոյն
18 adeflnopqrs հելլեն / e հելեն
18 Ա ի դիւան իւր
19 cde պահեսցեն / cp յիշատակ
19 g որ և կայ
21 ՏԹa միաբանեալ [n միաբանել] / cf միաբէս տիրել, փխ. միաբանել
21 y առնել, փխ. ունել
21 Աgkqrs եպիսկոպոսութեան
22 tw իսահակայ
23 ՏԹ բոլոր ամենայն
23 a յորոց / bcdeftw որոց / o յորում
24 d չիք և / ab *հաւատալ

Յունաց որ ի Հայս, զոր չէին կալեալ՝ հարկեսցեն նմա անսխալ, որպէս նորին գործակալաց։ Եւ կասկածեալ Արկադեայ ի միաբանութենէ նախարարացն Հայոց, թէ միաբանութեամբ հանիցեն ի նմանէ և տացեն ի Պարսս զբաժինն զայն՝ կատարէ զխնդիրսն Խոսրովայ։

Յետ այսր վախճանեալ եպիսկոպոսապետն Ասպուրակէս, ի տեղի նորա յաջորդէ Խոսրով զՍահակ որդի մեծին Ներսէսի, որդւոյ Աթանագինէի, որդւոյ Յուսկան, որդւոյ Վրթանիսի, որդւոյ սրբոյն Գրիգորի։ Սա ամենայն առաքինութեամբ հարցն նմանեալ, աղօթիցն մանաւանդ առաւելեաց։ Քանզի ստացաւ աշակերտս վաթսուն ըստ նմանութեան մայրաքաղաքացն սպուդէից, արք կրօնաւորք, խարազնազգեստք, երկաթապատք, բոկագնացք, որք յար ընդ նմա շրջէին. որովք մշտնջենաւոր պաշտամամբ կատարէր զկանոնն, որպէս զայնս որք յանապատն էին, և հոգայր զաշխարհս, որպէս զայնս որք յաշխարհի են։ Առ նա եկեալ Մեսրոպ յաղագս խնդրոյ նշանագրաց Հայոց՝ եգիտ զնա առաւել ևս փափագող այնմ. և յետ բազում ջանից և ոչ ինչ օգտելոյ, դարձեալ յաղօթս ապաւինեալ, յԱստուծոյ խնդրելով։ Եւ մեկնեալ ի միմեանց, գնաց Մեսրոպ ի դադարս իւր. և յանձն առեալ զխստամբերութիւն վարուց ճգնէին առաւել քան զառաւել։

## Ծ

**Կապումն Խոսրովայ, և փոխանորդել զգահն Վռամշապհոյ եղբօր նորին։**

Բայց Շապուհ էր ցասմամբ ընդ Խոսրովայ ի բարեկամանալն Արկադեայ անձամբ, և յանհրաման կարգել յեպիսկոպոսութիւն զմեծն

1 Ա զորս (չէն)
1 Ա հարկիցեն տալ նմա
1 df անսղալ
2 ՏԹ նորուն գործակալացն
2 Վm արկադայ
3 Ա հատանիցեն, փխ. հանիցեն
3 Ա չիք և տացեն
4 b զպարսս / ՏԹ զխնդիրս
4 pqrs խոսրովու
5 Աo այսորիկ / kl ասպուրակէ
6 c աջորդէ
6 c ներսեսի / bef ներսէսի
6 ab յաթանագինի / cdetw աթանագինի / f աթանագինէի
7 abdeftw յուսկանն
7 abde վրթանէսի / k վրթանի
8 ԹՎmpqrs առաքինութեանց
8 abcd աղօթից
9 o առաւելեալ
10 վ²klpqrs մայրաքաղաքայն / վ մայր քաղաքայն
10 gk չիք երկաթապատք
11 ՏԹ որ [n որք]
11 o շրջէին ընդ նմա
12 Վdefmpqrs պաշտամամբ / p պաշտամամբք
12 p զկանոնսն / k զկանոնն
12 ՏԹ զայն [kn զայնս]
12 Վmp որ / adetw յանապատն
12 c չիք յանապատն—որք (տ. 13)
13 Վbcgkmpqrs զայն
13 Վcmopq որ / Աo էին, փխ. են
14 ac մեսրոպայ / bdeftw մեսրովբայ
14 վ նշանագրոց / Ա չիք ևս
15 cf փափաքող / q դարձաւ
17 abdef մեսրովբ
18 tw քան զկար, փխ. քան զառաւել
20 acqr կատարումն, փխ. կապումն
20 cf փոխանորդէ
20 Աopqrs վռամշապուհ
20 Ա եղբայր նորա
21 rs չիք ցասմամբ
21 Ա չիք ի (բարեկամանալն)
22 c չիք և / y կարգեալ
22 abc յեպիսկոպոսապետութիւն / opqrs յեպիսկոպոսութեան

